# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

5

ՄԱՅԻՍ · 1966

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 45-րդ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов»-теоретический и политический журнал ЦК КП Армении

## Բովանդակություն

# Содержание





# ՊԱՐՏԻԱԿԱՆ-ԿԱԶՄԱԿԵՐՊԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ ԲԱՐՁՐԱՑՆԵԼ ՆՈՐ ԽՆԴԻՐՆԵՐԻ ՄԱԿԱՐԴԱԿԻՆ

ՍՄԿՊ XXIII համագումարը կոլեկտիվ կերպով մշակեց պարտիայի քաղաքական գիծը մոտակա տարիների համար: Նրա ուշադրության կենտրոնում էին քաղաքականության, էկոնոմիկայի, գաղափարական և պարտիական-կազմակերպական գործունեության կարևորագույն հարցերը, որոնք առաջադրել են կյանքը, կոմունիստական շինարարության բուն պրակտիկան:

Համագումարն առանձնակի ուշադրություն նվիրեց պարտիայի կազմակերպական աշխատանքի մակարդակի բարձրացմանը, պարտիական կազմակերպությունների գործունեության ոճի և ձևերի կատարելագործմանը: Դրա վառ վկայությունն է պարտիայի կանոնադրության մեջ մասնակի փոփոխություններ մտցնելը, որոնք անցած տարիների փորձի, կոմունիստների արած խելացի ու մտածված առաջարկությունների արդյունք են: Դրանք հիմնականում հանգում են այն բանին, որ էլ ավելի բարձրացվի պարտիայի անդամի վեհ կոչումը, ընդլայնվի ներպարտիական դեմոկրատիան, ըստ ամենայնի ամրապնդվի պարտիական կարգապահությունը, ապահովվեն պարտիական կազմակերպությունների նախաձեռնությունն ու ակտիվությունը, բարձրացվի յուրաքանչյուր կոմունիստի պատասխանատվությունը իր կազմակերպության և ամբողջ պարտիայի գործերի համար: Այս ամենը, անշուշտ, կնպաստեն ժողովրդական ամենալայն մասսաների հետ պարտիական կազմակերպությունների կապերի ընդլայնմանն ու ամրապնդմանը, կօգնեն պարտիային ավելի լավ դաստիարակելու կադրերին, ավելի հաջողությամբ լուծելու կոմունիստական շինարարության ամբողջ պրոցեսի ղեկավարման բարդ խնդիրները:

ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեն վճռականորեն վարել է պարտիական կյանքի լենինյան նորմերի ու ղեկավարման կոլեկտիվության սկզբունքների խստիվ պահպանման գիծ: Այդ տեսակետից սկզբունքային նշանակություն ունեցան Կենտկոմի 1964 թվականի հոկտեմբերյան և նոյեմբերյան պլենումները: Պարտիան ուղղեց այն սխալները, որոնք կապված էին տնտեսական ու քաղաքական կարևոր պրոբլեմների լուծման նկատմամբ սուբյեկտիվիստական մոտեցման, պարտիական, սովետական ու տնտեսական ապարատի չարդարացված վերակառուցումների հետ:

Պարտիայի XXII—XXIII համագումարների միջև ընկած ժամանակաշրջանում ամրապնդվեցին սովետական հասարակության քաղաքական հիմքերը, բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության դաշինքը, բազմազգ Սովետական Միության ժողովուրդների բարեկամությունը, բոլոր աշխատավորների հա-

մախմբվածությունը ՍՄԿՊ-ի շուրջը: Ընդլայնվեցին ՍՄԿՊ շարքերը, բարձրացավ պարտիայի քաղաքական ու կազմակերպական դերը սովետական հասարակության մեջ: Ձեռք բերված հաջողությունները կոմունիստական պարտիայի կազմակերպչական ու դաստիարակչական հսկայական գործունեության արդյունք են, պարտիայի լենինյան գծի հետևողական կենսագործման արդյունք: Այս ամենը էլ ավելի ուժեղացրեց և ամրապնդեց Սովետական Միության կոմունիստական պարտիայի կապերը ժողովրդի հետ: Այդ մասին է վկայում ՍՄԿՊ շարքերի աճը: Այժմ պարտիան իր շարքերում միավորում է 12 միլիոն 471 հազար անդամ ու թեկնածու: Միայն հաշվետու ժամանակաշրջանում նրա շարքերը աճել են 2 միլիոն 755 հազար անդամներով ու անդամության թեկնածուներով:

Կոմունիստների շարքերը խտանում են ի հաշիվ բանվորների, կոլտնտեսականների ու աշխատավոր ինտելիգենցիայի առաջավոր, ակտիվ և պարտիայի գործին նվիրված ներկայացուցիչների: Սովետական Միության կոմունիստական պարտիան միշտ էլ մտահոգվել է իր կազմի կարգավորմամբ, զարգացման տարբեր էտապներում ցուցաբերելով որոշակի մոտեցում իր շարքերի աճի նկատմամբ: Այն բանից, թե ովքեր են պարտիայի անդամները՝ կախված է ամբողջ պարտիայի մարտունակությունն ու նրա հեղինակությունը: Պարտիան միշտ էլ զբաղվում է իր շարքերը արժանավորագույններով համալրելու գործով:

Պարտիայի շարքերը յուրաքանչյուր ընդունվողին բարձր պահանջներ են ներկայացվում: Դրանք բխում են. այն հսկայական պատասխանատվությունից, որ պարտիան ունի սովետական ժողովրդի հանդեպ: Սակայն չի կարելի անցնել այն փաստերի կողքով, երբ մի քանի շրջկոմներ և սկզբնական պարտկազմակերպություններ, ընկնելով ՍՄԿՊ շարքերի քանակական աճի հետևից, երբեմն պարտիայի շարքերն են ընդունում չպատրաստված, ոչ հասուն, կոմունիստի բարձր կոչմանն անարժան մարդկանց:

ՍՄԿՊ Կանոնադրության մեջ մտցված մասնակի փոփոխությունները նպատակ ունեն կանխելու նման երևույթը, ավելի բարելավելու պարտիայի մեջ ընդունվողների որակական կազմը, բարձրացնելու պարտկազմակերպությունների պատասխանատվությունն այդ գործում: Համագումարը սահմանեց, որ երիտասարդները, մինչև 23 տարեկանը ներառյալ, պարտիայի մեջ ընդունվում են միայն ՀամԼԿԵՄ-ի միջոցով: Երաշխավորողները պետք է ունենան առնվազն հինգ տարվա պարտիական ստաժ. պարտիայի մեջ ընդունվելու վերաբերյալ սկզբնական պարտիական կազմակերպության որոշումը օրինական է համարվում, եթե նրա օգտին քվեարկել է ժողովին ներկա գտնված պարտիայի անդամների առնվազն երկու երրորդը:

Պարտիայի անդամի կոչումը բարձր պահելու, պարտիական կարգապահությունն ավելի ամրապնդելու, կանոնադրական պարտականություններն անթերի կատարելու համար կոմունիստների պատասխանատվությունը բարձրացնելու նպատակով պարտիայի համագումարը որոշեց ՍՄԿՊ կանոնադրության ներածական մասը լրացնել այն դրույթով, որ պարտիան ազատվում է այն անձանցից, որոնք խախտում են ՍՄԿՊ ծրագիրը, կանոնադրությունը և իրենց վարքագծով արատավորում են կոմունիստի բարձր կոչումը: Միաժամանակ սահմանվեց, որ պարտիայի շարքերից կոմունիստի վտարման վերաբերյալ սկզբնական պարտիական կազմակերպության որոշումը ուժ է ստանում պարտիայի շրջկոմի կամ քաղկոմի հաստատումից հետո: Վերացվեց պարտիայի անդամին թեկնածու փոխադրելը, որպես պարտիական տույժի միջոց: Պարտիայի շարքերի կարգավոր-



ման և կոմունիստի բարձր կոչումը վարկաբեկող անձերից ազատվելու կանոնադրական այս կարգը նոր, բարձր խնդիրներ է դնում սկզբնական պարտիական կազմակերպությունների, շրջկոմների և քաղկոմների առջև: Զգալիորեն բարձրանում է նրանց դերն ու պատասխանատվությունը ինչպես պարտիայի շարքերի համալրման, այնպես էլ նրա շարքերից վտարելու հարցում: Անհրաժեշտ է, որ պարտիայի կանոնադրությանը խստիվ համապատասխան՝ ՍՄԿՊ-ի շարքերն ընդունվեն առաջավոր և գիտակից բանվորներ, կոլտնտեսականներ, ինտելիգենտներ, որոնք ակտիվորեն մասնակցում են կոմունիստական շինարարությանը. ընդսմին պարտիան պահանջում է, որ նրա սոցիալական կազմում այսուհետև էլ բանվորները գրավեն առաջատար դիրք: Համագումարը պարտիական կազմակերպություններից պահանջեց ամենօրյա հոգատարություն ցուցաբերել պարտիայի շարքերի մաքրության նկատմամբ, հետևելով, որ յուրաքանչյուր կոմունիստ արժանապատվությամբ կրի և արդարացնի լենինյան պարտիայի անդամի կոչումը:

Պարտիայի հետագա ամրապնդման խնդիրը հրամայաբար պահանջում է բարձրացնել սկզբնական պարտիական կազմակերպությունների մարտունակությունը, որոնք վճռական դեր են խաղում պարտիայի քաղաքականության կենսագործման և կոմունիստների դաստիարակության ասպարեզում: Սկզբնական պարտիական կազմակերպությունները գործում են այնտեղ, ուր վճռվում են արդյունաբերության, գյուղատնտեսության, տրանսպորտի, շինարարության, սովետական, տնտեսական օրգանների, ուսումնական հաստատությունների, գիտական հիմնարկների առջև կանգնած խնդիրները: Այստեղից էլ բնական է, որ պարտիայի ամբողջ կյանքը, նրա խոշոր հաջողություններն ու ամենափոքր թերությունները, այն ամենը, ինչ ուրախացնում և վշտացնում է մեզ, իր արտացոլումն ու բեկումն է գտնում սկզբնական պարտիական կազմակերպությունների ամենօրյա գործունեության մեջ: Հայաստանի կոմունիստական պարտիան այժմ միավորում է 3.963 սկզբնական, 1413 արտադրամասային պարտիական կազմակերպություն և 2.442 պարտիական խումբ: Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում եղել և մնում է կոմունիստների ուժերի ճիշտ տեղաբաշխումը, որը պարտիայի կողմից կոմունիստական շինարարության բոլոր տեղամասերը հաջողությամբ ղեկավարելու, մասսաների մեջ պարտիայի ազդեցությունն ուժեղացնելու կարևոր պայմանն է:

Այժմ բոլոր պարտիական կազմակերպությունների գլխավոր խնդիրը պետք է լինի ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյա նոր պլանի հաջող կատարման համար մղվող պայքարը:

«Պարտիական կազմակերպությունները,— ասված է ՍՄԿՊ XXIII համագումարի բանաձևում,— կոչված են ապահովելու ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան ու սեպտեմբերյան պլենումների մշակած սոցիալիստական տնտեսավարության սկզբունքների, արտադրության պլանավորման ու տնտեսական խթանման նոր սկզբունքների հետևողական իրագործումը»: Համագումարի այս պահանջները իրականացնելու համար պարտիական կազմակերպությունները պետք է գործեն կազմակերպչական ու դաստիարակչական աշխատանքի իրենց առանձնահատուկ մեթոդներով, թույլ չտալով սովետական ու տնտեսական օրգանների փոխարինում և մանրախնդիր խնամակալում: Սկզբնական պարտիական կազմակերպություններն իրենց ուշադրության կենտրոնում պետք է պահեն մարդկանց հետ տարվող աշխատանքը, ճշտորեն հաշվի առնեն նրանց բնավորության յու-

րահատկությունները, կարիքները, պահանջները, ընդունակությունները և վերաբերմունքը գործի նկատմամբ:

Պարտիական օրգանները, սկզբնական պարտիական կազմակերպությունները պետք է հետևողականորեն կիրառեն ու զարգացնեն ներպարտիական դեմոկրատիան: Նրանք պարտավոր են ավելի մեծ ուշադրություն ու հարգանք ցուցաբերել կոմունիստների ու անպարտիականների կարծիքների ու առաջարկների նկատմամբ, պայմաններ ստեղծել լայն քննադատության ու ինքնաքննադատության համար, ժամանակին ուղղել պարտիայի կանոնադրական պահանջներից շեղվողներին, չհանդուրժել եղած թերությունները:

Սկզբնական պարտիական կազմակերպությունները, պարտիայի շրջկոմները, քաղկոմները պետք է մշտապես հետևեն, թե կադրերը, անկախ զբաղեցրած պաշտոնից, ինչպես են կատարում պարտիայի ու կառավարության դիրեկտիվներն ու որոշումները, ինչպես են ղեկավարում իրենց հանձնարարված բնագավառը: Պարտիայի ու կառավարության որոշումների կատարման սիստեմատիկ ստուգումը կադրերի գործնական հատկանիշների ճիշտ գնահատման և դաստիարակման ամենափորձված ու կարևոր միջոցն է: Այն նպաստում է պարտիայի ներսում կարգապահության ամրապնդմանը, յուրաքանչյուր կոմունիստի պատասխանատվության բարձրացմանը: Անհրաժեշտ է, ինչպես նշել է համագումարը, պահանջկոտ լինել պարտիայի բոլոր անդամների նկատմամբ, թույլ չտալ լիբերալիզմ, հաշտվողականություն այն կոմունիստների նկատմամբ, ովքեր խախտում են պարտիական ու պետական կարգապահությունը, ովքեր մոռանում են իրենց պարտիական պարտականությունները և կարծում, թե պարտիային պատկանելը, իրենց ինչ-որ արտոնություններ է տալիս:

Հայաստանի կոմունիստական պարտիայի XXIV համագումարը ևս լուրջ ուշադրություն նվիրելով պարտիական-կազմակերպական ու քաղաքական-դաստիարակչական աշխատանքներին, ամփոփելով այդ բնագավառում կուտակված փորձը, միաժամանակ բացահայտեց լուրջ սխալներ ու թերություններ: Ռեսպուբլիկայի մի շարք շրջանային կոմիտեներ անհրաժեշտ հետևություններ չեն արել ՍՄԿՊ Կենտկոմի հոկտեմբերյան ու նոյեմբերյան պլենումի որոշումներից, շարունակում են գործել հին ձևով, կենդանի կազմակերպական աշխատանքը հաճախ փոխարինում նիստերով ու խորհրդակցություններով:

Ներպարտիական աշխատանքների շրջանակների նեղացումը, գործունեության փոխարինումը շաղակրատությամբ, որպես կանոն հանգեցնում է վարչարարության, ղեկավարման կոլեգիալ սկզբունքի խախտման, դրանով իսկ կաշկանդելով սովետական, տնտեսական և մյուս օրգանների նախաձեռնությունն ու ինքնագործունեությունը: Առանձին շրջկոմների աշխատողներ հազվադեպ են լինում տեղերում, խորամուխ չեն լինում սկզբնական պարտիական կազմակերպությունների գործունեության մեջ, նրանց կոնկրետ օգնություն ցույց չեն տալիս կազմակերպական ու գաղափարական աշխատանքների բարելավման գործում: Մի շարք կազմակերպություններում թերագնահատվում է պարտիական ժողովների դերը՝ որպես կոմունիստների դաստիարակման դպրոցի: Ռեսպուբլիկայի որոշ պարտկազմակերպությունների ժողովներում հազվադեպ են քննարկվում կոմունիստների կողմից կանոնադրական պահանջները կատարելու, պարտիական կյանքի լենինյան նորմերը պահպանելու, կադրերի գաղափարական դաստիարակության, կոմերիտական ու արհմիութենական կազմակերպությունների գործունեության հարցերը:



Պարտիական կազմակերպական աշխատանքներում լուրջ ուշադրություն պետք է նվիրել սոցիալիստական դեմոկրատիայի ըստ ամենայնի զարգացմանը: Պարտիական կազմակերպությունները կոչված են ամեն ինչ անելու աշխատավորների դեպուտատների սովետների դերի բարձրացման համար, որպեսզի նրանք լիովին օգտագործեն իրենց իրավունքները տնտեսական ու կուլտուրական շինարարության խնդիրների կատարման գործում, լայն նախաձեռնություն ցուցաբերեն ֆինանսական, պլանային, հողային հարցերը լուծելու, տեղական արդյունաբերության ձեռնարկությունները, բնակչության կենցաղային ու սոցիալ-կուլտուրական սպասարկումը ղեկավարելու ուղղությամբ:

Արդի պայմաններում արհմիությունների՝ որպես կոմունիզմի դպրոցի, գործունեությունը նոր բովանդակություն է ստանում: Նրանց դերը մեծանում է աշխատավորների ստեղծագործական ակտիվությունը զարգացնելու և արտադրության կառավարման մեջ ներգրավելու, սոցիալիստական մրցությունն ու կոմունիստական աշխատանքի շարժումը զարգացնելու ասպարեզում: Արհմիությունների գործունեության բարելավման անհրաժեշտ պայմանը պարտիական կազմակերպությունների կողմից նրանց ցույց տրվող ամենօրյա օգնության ու ղեկավարման մակարդակի բարձրացումն է, արհմիութենական կադրերի ճիշտ ընտրությունն ու դաստիարակումը:

Պարտիական կազմակերպությունները պետք է բարելավեն կոմերիտմիության ղեկավարումը, համբերատարությամբ դաստիարակեն կոմերիտական կադրերին, նրանց հաղորդեն քաղաքական ու կազմակերպչական աշխատանքի իրենց փորձը: Համագումարը պահանջեց ամրապնդել պարտիական կորիզը կոմերիտական կազմակերպություններում, նրանց աշխատանքում ավելի լայնորեն օգտագործել երիտասարդ՝ կոմերիտական հասակի կոմունիստներին, որոնց համար այդ աշխատանքը պետք է լինի պարտիական կարևորագույն հանձնարարություն:

Կոմունիստական պարտիան միշտ հոգատար է եղել աչքի ընկած, գործունյա երիտասարդ կադրերի աճեցման ու առաջքաշման նկատմամբ: Սակայն մինչև համագումարը գոյություն ունեցող պարտիական օրգանների կազմի և դրանց ղեկավար կադրերի նորացման ու փոփոխման կանոնադրական նորմաները պրակտիկայում իրենց չարդարացրին: Դրանք հատկապես բացասաբար անդրադարձան սկզբնական պարտիական կազմակերպությունների ու նրանց քարտուղարների գործունեության վրա: Ղեկավար օրգաններում կոմունիստների ընտրության ժամանակ կադրերին ըստ գործնական և քաղաքական հատկանիշների մոտեցման սկզբունքները հաճախ փոխարինվեցին ձևական նկատառումներով, որի հետևանքով ընտրովի օրգաններից դուրս էին մնում լավ աշխատողները: Առաջացել էր սկզբնական պարտիական կազմակերպության քարտուղարների մեծ հոսունություն, որը, բնականաբար, իր բացասական կնիքն էր դնում ամբողջ կազմակերպության գործունեության վրա:

Հաշվի առնելով պարտիական շատ օրգանների ու կոմունիստների առաջարկները, ՍՄԿՊ XXIII համագումարը աննպատակահարմար գտավ պարտիայի կանոնադրության մեջ այն դրույթների պահպանումը, որոնք սահմանում էին պարտիական օրգանների կազմի և պարտիական կազմակերպությունների քարտուղարների նորացման նորմաներ ու փոփոխություններ: Այդ կապակցությամբ կանոնադրությունից 25-րդ պարագրաֆը հանվեց, իսկ 24-րդ պարագրաֆը լրացվեց ծրագրային այն սկզբունքային դրույթով, որ պարտիական օրգանների ընտ-

րությունների ժամանակ՝ սկսած սկզբնական կազմակերպություններից մինչև ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեն, պահպանվում է նրանց կազմի սիստեմատիկ նորացման և ղեկավարության հաջորդականության սկզբունքը: Կոմունիստներն իրենք կորոշեն, թե պարտիայի այս կամ այն անդամն իր քաղաքական ու գործնական հատկություններով արժանի՞ է արդյոք լինելու պարտիական ղեկավար օրգանի կազմում, թե ոչ:

Կանոնադրության՝ սկզբնական պարտիական կազմակերպություններին վերաբերող բաժինը համագումարը լրացրեց նոր դրույթներով: Այսպես. 57-րդ պարագրաֆը լրացվեց այն դրույթով, որ սովխոզներում պարտիական կոմիտեներ կարող են ստեղծվել 50 կոմունիստի առկայության դեպքում: Սկզբնական պարտկազմակերպություններում ժողովներ անցկացնելու ժամկետներն ավելի ճշտորված կարգով սահմանելու համար համագումարը որոշեց՝ ելնելով նրանց աշխատանքի պայմաններից, կառուցվածքից և թվական կազմից, մինչև 300 կոմունիստ և արտադրամասային կազմակերպություններ ունեցող սկզբնական պարտիական կազմակերպություններում պարտիական ընդհանուր ժողովները անցկացվում են ոչ սակավ, քան երկու ամիսը մեկ անգամ:

Համագումարը միաժամանակ կանոնադրության մեջ մասնակի փոփոխություններ մտցրեց պարտիայի բարձրագույն օրգաններին վերաբերող բաժնում: Համագումարը սահմանեց, որ բոլոր միութենական ռեսպուբլիկաների կոմպարտիաների համագումարները անցկացվում են ոչ ուշ, քան չորս տարին մեկ անգամ:

Կոմունիստական շինարարության ասպարեզում պարտիայի հարաճուն խնդիրների ու դերի բարձրացման պայմաններում անհրաժեշտություն է վերականգնել Լենինի կենդանության օրոք և ավելի ուշ, ընդհուպ մինչև 1941 թվականը պարտիական կոնֆերանսների հրավիրման գոյություն ունեցող պրակտիկան:

Համագումարների միջև ընկած ժամանակաշրջանում, անհրաժեշտ է լինում քաղաքական առավել պրոբլեմները քննարկելու ավելի լայն, ներկայացուցչական պարտիական համաժողովներում: Ելնելով կյանքի պահանջներից, կանոնադրության մեջ իրավունք է վերապահվում Կենտրոնական կոմիտեին անհրաժեշտության դեպքում պարտիայի քաղաքականության հասունացած հարցերը քննարկելու համար հրավիրել համամիութենական պարտիական կոնֆերանս, իսկ միութենական ռեսպուբլիկաների կոմպարտիաների կենտկոմները՝ ռեսպուբլիկական պարտիական կոնֆերանսներ:

Համագումարը կանոնադրության մեջ նախատեսել է, որ Կենտկոմը ընտրում է Քաղբյուրո, Քարտուղարություն, ինչպես և ՍՄԿՊ Կենտկոմի գլխավոր քարտուղար:

Այսօր պարտիայի, նրա բոլոր կազմակերպությունների գլխավոր խնդիրն է՝ կոմունիստների, բոլոր սովետական մարդկանց ուժերն ու էներգիան ուղղել ՍՄԿՊ XXIII համագումարի որոշումների անշեղ կենսագործմանը:

Պարտիայի քաղկոմները, շրջկոմները, սկզբնական կազմակերպությունները համագումարի որոշումների ոգով պետք է վերակառուցեն պարտիական-կազմակերպական աշխատանքի ոճն ու մեթոդները, վճռականորեն դեն նետեն այն ամենը, ինչ խանգարում է մեր առաջընթացին, հետևողականորեն կատարեն Սովետական Միության կոմունիստական պարտիայի ծրագիրն ու կանոնադրությունը:

---

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

Ա. ԱԴՈՅԱՆ

## ՊԱՐՏԻԱՅԻ ԿԱՄՔՈՎ, ԺՈՂՈՎՐԴԻ ՀԱՄԱՐ

*Վերջերս ավարտված ՍՄԿՊ XXIII համագումարը միահամուռ հաստատեց մեր մեծ հայրենիքի առաջիկա զարգացման նոր հնգամյա պլանի դիրեկտիվները, մի պլան, որն իր ռեալիստական հաշվարկումներով ու երկրի տնտեսատեխնիկական, կուլտուրական խոշոր առաջընթացի տվյալներով՝ ջերմ ոգևորությամբ համակեց սովետական ժողովուրդների սրտերը, ստեղծարար խոյանքների կոչեց բոլոր աշխատավորներին: Այդ պլանը, որի մշակմանն ու քննարկմանը նախապես մասնակցեցին պարտիական կազմակերպություններն ու երկրի ողջ հասարակայնությունը, վառ կերպով ցուցահանեց այն իսկությունը, որ պարտիայի՝ կոմունիզմի կառուցման վեհ ձգտումներն ու համամարդկային նպատակներն իրենց կենդանի մարմնավորումն են գտել հանուն ժողովրդի բարօրության մշակված կոնկրետ գործողությունների այդ պատմական փաստաթղթում:*

*Հիրավի, սովետական մարդիկ իրավունք ունեն հպարտանալու այն վիթխարի հասումներով, որոնք նվաճված են համառ, դժվարին աշխատանքով, պայքարով ու զրկանքներով: Վերցնենք միայն բնորոշ հինգ թվեր, որոնք խոսուն վկաներ են մեր վերընթաց ուղու: Երկրի տարեկան արտադրանքը.*

| | 1928 թ. | 1965 թ. |
|---|---|---|
| Էլեկտրաէներգիա (միլիարդ կվտ. ժամ) | 5,0 | 507 |
| պողպատ (միլիոն տոննա) | 4,3 | 91,0 |
| նավթ (միլիոն տոննա) | 11,6 | 243 |
| մետաղահատ հաստոցներ (հազար հատ) | 2,0 | 185 |
| տրակտորներ (հազար հատ) | 1,3 | 355 |

*Որտեղի՞ց որտեղ հասանք: Այս մեծ թռիչքի շնորհիվ ՍՍՌՄ-ը դարձել է աշխատավոր մարդկության անմար փարոսը, սոցիալիզմի անպարտելի ամրոցը: Անցած հնգամյակների կենսագործմամբ ՍՍՌՄ-ը հասավ նյութատեխնիկական և կուլտուր-գիտական այնպիսի մակարդակի, որը լիակատար և հաստատուն նախադրյալներ է ապահովում կոմունիստական հասարակության նյութատեխնիկական բազայի կառուցման համար: Երկրի անսպառ հարստու-*

թյունների օգտագործմամբ և ժողովրդի հերոսական ջանքերով, անընդհատ զարգացման հունով է ընթանում հայրենի էկոնոմիկան, մի զարգացում, որի հետագա ընթացքն իր մարմնավորումը գտավ պարտիայի կոլեկտիվի կամքի արտահայտիչը հանդիսացող վերջին համագումարի որոշման մեջ:

Ո՞րն է նոր հնգամյա պլանի՝ պարտիական վերջին համագումարի բանաձևած ելակետը: Այն, որ այդ պլանը կոչված է ապահովելու մեր հասարակության նշանակալի առաջընթացը կոմունիստական շինարարության ուղիով. նյութատեխնիկական բազայի հետագա զարգացումը, երկրի տնտեսական ու պաշտպանական հզորության ամրապնդումը: Գիտության ու տեխնիկայի նոր նվաճումների հետևողական կիրառմամբ՝ ապահովել հանրային արտադրության և աշխատանքի արտադրողականության բարձր տեմպեր և այդպիսով իսկ ռեալ հնարավորություններ ստեղծել առավել լրիվ բավարարելու ժողովրդի նյութական և կուլտուրական պահանջմունքները:

Ահա թե որն է ՍՄԿՊ XXIII համագումարի՝ հնգամյա պլանի մշակման ուղենիշ ելակետը: Մեկնելով այդ ծրագրային դրույթից, համագումարը հատկապես նշեց, որ կոմունիստական հասարակության ստեղծման բարդ և դժվարին ընթացքը բացառում է ամեն կարգի կամայականության, անպլանայնության, անտնտեսավարության, շռայլության, տնտեսության տարբեր ճյուղերի ու օղակների անհամամասնական երևույթների առկայությունը սոցիալիստական սիստեմում: Հիրավի, մեր երկիրը, որը սրանից ընդամենը չորս տասնամյակ առաջ ուներ երկու և կես միլիոնից ավելի մտավոր աշխատողներ, իսկ այժմ՝ քսանհինգ ու կես միլիոն մտավորականներ, լիակատար և բազմակողմանի հիմքեր ունի մեր կյանքի տարբեր բնագավառները, առաջին հերթին արտադրական բոլոր ձեռնարկությունները գիտականորեն վարելու:

Համագումարը հաստատորեն սահմանեց, որ նոր հնգամյակը մեկնում է սոցիալիստական հասարակության տնտեսական օբյեկտիվ օրենքների պահանջներից, մի պարագա, որը մեզ խոր հավատ է ներշնչում նրա ռեալականության նկատմամբ: Վեր է կասկածից, որ անցյալ յոթնամյա պլանի իրագործմամբ նվաճված խոշոր հասումներն այն ազդակները կհանդիսանան, որոնք հնարավորություն կընձեռեն առաջիկա տարիներին կոմունիզմի կառուցմանը ի սպաս դնելու մեր երկրի առկա բոլոր ռեզերվներն ու պլանային ժողովրդական տնտեսության առավելությունները:

Ինքնին հասկանալի է, որ այդ ամենը կոչված են ուժգնորեն խթանելու միլիոնավոր և տասնյակ միլիոնավոր աշխատավորական զանգվածների ստեղծագործական ներթափուն կորովը, որը սոցիալիստական սիստեմի անընդհատ զարգացման հաստատուն գրավականն է:



Հնգամյա պլանի կենսագործումը պարտիական, սովետական, արհմիութենական և տնտեսական օրգաններից պահանջում է. ա) անշեղորեն առաջնորդվել տնտեսության կառավարման դեմոկրատական սկզբունքների զարգացման վերաբերյալ՝ ՍՄԿՊ Կենտկոմի վերջին պլենումների որոշումներով. բ) երբեք չխախտել ժողովրդական տնտեսության կենտրոնացված պլանային ղեկավարման լենինյան դրույթները. գ) առաջիկայում ավելի զարգացնել ու կատարելագործել էկոնոմիկայի ղեկավարման եղանակների վերաբերյալ պարտիայի վերջին տարիներս մշակված մեթոդները:



Սովետական Միության ժողովրդական տնտեսության նոր հնգամյակի հզորությունը դրսևորվում է մի քանի տվյալների միջոցով: Ահա դրանք.

### Արդյունաբերական արտադրանքի կարևորագույն տեսակների արտադրությունը.

| | 1965 թ. | 1970 թ. |
|---|---|---|
| Էլեկտրաէներգիա (միլիարդ կիլովատ ժամ) | 507 | 830—850 |
| Նավթ (միլիոն տոննա) | 243 | 345—355 |
| Գազ (միլիարդ խոր. մետր) | 129,2 | 225—240 |
| Քարածուխ (միլիոն տոննա) | 578 | 665—675 |
| Չուգուն (միլիոն տոննա) | 66,2 | 94—97 |
| Պողպատ (միլիոն տոննա) | 91 | 124—129 |

Մեր հսկայական երկրի բարդ էկոնոմիկայի բոլոր ճյուղերի զարգացման տեմպերը վերջին հաշվով պայմանավորված են վերոհիշյալ կարողությունների հզորությամբ: Նոր հնգամյակի այդ հզորությունը ռեալ է ու նշանակալի, որի գործադրմամբ ավելի արագ թափով կմոտենանք նոր հասարակության կառուցման առավել բարձր փուլին:

Իսկ որո՞նք են նոր հնգամյակի գլխավոր ու հանգուցային խնդիրները: ՍՍՌՄ ազգային եկամտի 38—41 տոկոսով աճ, բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամտի 1,3 անգամ ավելացում, գյուղական և քաղաքային բնակչության տեխնիկական ու կուլտուրական մակարդակի նշանակալի բարձրացում, աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործում և միութենական հանրապետությունների տնտեսության համակողմանի զարգացում:

Այս խոշոր ու բարդ խնդիրների լուծման եղանակները և հնարներն ամենայն կոնկրետությամբ ու հստակությամբ սահմանված են համագումարի դիրեկտիվներում, որոնց հաջող իրագործումը պահանջում է ստեղծագործական ջանքերի հսկայական լարում, տնտեսավարության ոլորտում անցյալում տեղ գտած սխալների ու լուրջ թերությունների լիակատար հաղթահարում: Այսպես, օրինակ, նյութական խոշոր միջոցների կուտակման և ժողովրդական սպառման միաժամանակյա աճ կարելի է ապահովել միայն հասարակական արտադրության տնտեսական արդյունավետության բարձրացմամբ և գիտա-տեխնիկական առաջընթացի անարգել ծավալմամբ: Նոր հնգամյա պլանի ծրագրային այս կանխագծումը միաժամանակ ելնում է նրանից, որ առաջիկա մի քանի տարիներում գիտության վերջին պահանջների համաձայն արագ վերազինվելու է ողջ ժողովրդական տնտեսությունը: Այսպիսով, վերածվելով արտադրողական ուժի, սովետական գիտությունը գալիս է օգնելու ժողովրդին ավելի արագ տեմպերով, առավել մեծ արդյունավետությամբ և անհամեմատ նվազ միջոցների ծախսումով հասնել մեծ արդյունքների:

Նոր հնգամյա պլանը նախատեսում է տնտեսության կառավարման ու գիտական հաստատությունների գործունեության այնպիսի շաղկապում, որը կոչված է մոտակա տարիներին ապահովելու գիտության նորագույն նվաճումների անարգել ներդրումը տնտեսության բոլոր ճյուղերում: Եվ որքան արագ ու պլանավորված կիրառվեն գիտության նորագույն հետևությունները նոր կյանքի ոլորտներում, այնքան արագ կմոտենանք մեր նվիրական իղձերի կենսագործմանը: Այս անվիճելի ճշմարտությամբ է ներհյուսված հնգամյա պլանի ամուր հենքը:

Կոմունիստական հասարակության անընդհատ զարգացման ամենավճռական գործոնը՝ աշխատանքի արտադրողականության բարձրացումն է։ Սա է այն գլխավոր ցուցանիշը, որը հնարավորություն է ընձեռում ժողովրդի երջանկության կայուն հիմքերը դնելու։ Սահմանելով ու կանխագծելով այս հանգուցային պրոբլեմի լուծման եղանակներն ու մեթոդները՝ հնգամյա պլանը նախատեսում է աշխատանքի արտադրողականության տարեկան միջին տեմպ (մեկ աշխատավորի հաշվով) արդյունաբերության մեջ՝ 6 տոկոս, շինարարության՝ 6,6, գյուղատնտեսության մեջ՝ (հանրային սեկտոր) մոտ 7 տոկոս։

Գիտության և նորագույն տեխնիկայի սկզբունքներով վերազինված սովետական էկոնոմիկան այսուհետև հնարավորություն կունենա լուծելու նաև հանրային արտադրության արդյունքի որակի հարցը, որը պահանջում է արտադրաոլորտից համարձակորեն հանել բարոյապես մաշված ապրանքները և դրանք փոխարինել առավել արդիականով, որոնք ոչ միայն համապատասխանեն համաշխարհային արտադրության ներկա մակարդակին՝ այլև գերազանցեն դրան։

Այսպես է դրված արտադրանքի որակի բարելավման հարցը նոր հնգամյա պլանում։ Այս և մյուս հանգուցային խնդիրների հաջող լուծումը նախատեսում է երկրի հիմնական ֆոնդերի, հումքի, վառելիքի, էներգիայի, ֆինանսների առավել խնայողական օգտագործում, ապրանքի միավորի վրա գործադրված բոլոր ծախսերի մաքսիմում կրճատում։

Այժմ, երբ արդյունաբերության նյութական ծախսումների մեկ տոկոսով նվազումը մեկ ու կես միլիարդ ռուբլով ավելացնում է երկրի ազգային եկամուտը՝ նյութական և աշխատանքային ռեսուրսների խնայողությունը խոշորագույն նշանակություն ունեցող հարց է։

Նոր հնգամյակի հաջող կենսագործման էական պայմաններից և ձեռնարկության գործունեության չափանիշներից մեկը՝ արտադրական ֆոնդերի առավել հատուցումն է։ Այդ ֆոնդերի արդյունավետ օգտագործումն առաջիկա տարիներին հանդիսանալու է սոցիալիստական ընդլայնված վերարտադրության նորմալ հարատևության անսպառ աղբյուրը։



Ըստ հնգամյա պլանի դիրեկտիվների, առաջիկա հինգ տարիներում արդյունաբերական արտադրանքի ծավալը կավելանա 47—50 տոկոսով, այդ թվում արտադրամիջոցների («Ա» խումբ) արտադրանքը՝ 49—52, իսկ սպառման առարկաներինը՝ («Բ» խումբ)՝ 43—46 տոկոսով։ Նման համամասնությունների իրացումը հնարավորություն կընձեռի ապահովելու երկրի էկոնոմիկայի ու կուլտուրայի զարգացման բարձր տեմպեր, հետևաբար և ամրապնդելու ժողովրդի բարօրության հիմքերը։

1966—1970 թթ. ՍՍՌՄ արդյունաբերական արտադրանքը կաճի մեկ և կես անգամ, մի աճ, որը խարսխվելու է ժամանակակից գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների հետևողական ներդրման, տնտեսության կառավարման ու արտադրական պրոցեսների կատարելագործման ամենաառաջավոր մեթոդների կիրառման վրա։ Ապահովելով արդյունաբերության նորագույն բոլոր ճյուղերում տնտեսության շահագործման կատարյալ եղանակների արմատավորումը, հնգամյա պլանը ելնում է այն կուրսից, որ անհրաժեշտ է որպեսզի հետայսու արդյունաբերությունն ավելի մեծ չափերով բավարարի գյու-



ղատնտեսության կենսական պահանջները և ավելի խթանի ժողովրդական լայն սպառման առարկաների արտադրության աճը։

Այն հանգամանքը, որ հնգամյակում 70 տոկոսով աճելու է էլեկտրաէներգիայի արտադրությունը (850 միլիարդ կվտ ժամ 1970 թ. անցյալ տարվա 507 միլիարդ կվտ. ժամի փոխարեն), վկայում է, որ երկրի զարգացման պլանն իրոք տոգորված է մեր հայրենիքի լիակատար էլեկտրիֆիկացման լենինյան գաղափարով. հինգ տարվա ընթացքում կկառուցվեն և կգործադրվեն տասնյակ ու տասնյակ վիթխարի էլեկտրակայաններ, որոնք հանդիսանալու են համաշխարհային գիտության վերջին խոսքի ու տեխնիկական մտքի զարմանահրաշ կոթողներ. էլեկտրաէներգիայի արտադրության մեծագույն աճը հնարավորություն կընձեռի 60 տոկոսով ավելացնելու բնակչության կենցաղային կարիքների համար ծախսվող էներգիան և լիուլի ապահովելու Սովետական Միության արդյունաբերության, գյուղատնտեսության, տրանսպորտի, էներգիայի օրավուր աճող պահանջմունքները։

Նոր հնգամյա պլանի կանխագծումների համաձայն, նշանակալի չափով զարգանալու է արդյունաբերության սնուցող վառելիքային արդյունահանությունը. 1970 թվականին նավթի հանույթը մեր երկրում նախատեսվում է հասցնել 345—355 միլիոն տոննայի, իսկ գազի հանույթը՝ մինչև 225—240 միլիարդ խորանարդ մետրի։ Նավթի հանույթի տարեկան 20 միլիոն տոննա, իսկ գազի հանույթի տարեկան 20 միլիարդ խորանարդ մետր աճի պայմաններում, մեր արդյունաբերությունը հնարավորություն կունենա իրագործելու այն մեծագույն խնդիրները, որոնք դրվում են երկրի ժողովրդական տնտեսության առջև։ Նավթային հանույթի մի շարք նոր շրջանների յուրացումը մեծագույն չափով կնպաստի վառելիքի ռեսուրսների ավելացմանը. գազամուղ մագիստրալների մեկ և կես անգամ մեծացումը հսկայական չափով կնպաստի արդյունաբերության պլանների անխափան կատարմանը, ինչպես և բարձրորակ սպառման առարկաների արտադրության ապահովմանը։

Հնգամյա պլանում նախատեսվում է 1970 թվականին քարածխի արտադրությունը հասցնել 665—675 միլիոն տոննայի. հինգ տարում քարածխի հանույթը ավելանալու է 100 միլիոն տոննայով։ Այսպիսով, արդյունաբերության, տրանսպորտի և առհասարակ երկրի էկոնոմիկայի նորմալ զարգացման բազան լիովին ապահովվելու է վառելիքով։

Սովետական Միության նոր հնգամյակում խոշոր տեղ է գրավում հայրենի մետաղամշակության արագ զարգացումը։ Ընդգծելով մեր մի շարք առավելությունները մետաղամշակման բնագավառում, հնգամյա պլանը նախատեսում է նոր միջոցառումներ, որոնց կիրառմամբ մեծապես կբարձրանա երկրի մետալուրգիայի տեխնիկական մակարդակը։ Նախատեսվում է կառուցել նոր ձեռնարկություններ, որոնք պետք է ապահովեն մետաղամշակման նորագույն և առաջավոր մեթոդների կիրառումը՝ մի հանգամանք, որը հնարավորություն կտա ոչ միայն ավելացնելու մետաղների տեսակները, այլև անհամեմատ բարձրացնելու դրանց որակը։ Հնգամյակի վերջում ՍՍՌՄ-ում թթվածնի կիրառմամբ կարտադրվեն 60 միլիոն տոննա թուջ և 90 միլիոն տոննա պողպատ։

Առաջիկա հինգ տարիներում արագ տեմպերով կզարգանա գունավոր մետալուրգիան։ Նախատեսվում է ալյումինի արտադրությունն ավելացնել 1,9—2,1 անգամ, իսկ պղնձի և ցինկի արտադրությունը՝ 1,6—1,7 անգամ։

Բացի այդ, նշանակալի չափով աճելու են տարբեր գունավոր մետաղների հանույթը և արդյունաբերական մշակումը։

Ժողովրդական տնտեսության և բնակչության աճող պահանջմունքները բավարարելու համար հնգամյա պլանը նախատեսում է քիմիական արդյունաբերության զարգացման բարձր տեմպեր։ Կրկնապատկվում է քիմիական արտադրանքի թողարկումը. ընդ որում, ավելի արագ կզարգանա հանքային պարարտանյութերի, քիմիական արհեստական թելերի, պլաստիկական զանգվածների և մի շարք սինթետիկ նյութերի արտադրությունը։ Հնգամյակի վերջում հանքային պարարտանյութերի արտադրությունը կկազմի 62—65 միլիոն տոննա (տարեկան), պլաստմասսայի և սինթետիկ խեժի արտադրությունը՝ 2,1—2,3, իսկ քիմիական արհեստական թելերի արտադրությունը՝ 750—830 միլիոն տոննա։ Այսպիսի ռեալ աճը մեծապես կապահովի ինչպես գյուղատնտեսության նորմալ ընթացքը, նմանապես և ժողովրդական լայն սպառման ապրանքների արտադրության ընդարձակումը։ Քիմիական մի շարք խոշոր արտադրական ձեռնարկությունների կառուցումը հսկայական բազա կպատրաստի ժողովրդական տնտեսության արդյունաբերական բազմապիսի պահանջների բավարարման համար։

Հայտնի է, որ ժամանակակից արդյունաբերության և, առհասարակ, ամբողջ էկոնոմիկայի արագ զարգացման համար վճռական նշանակություն ունի մեքենաշինությունը։ Այս հնգամյակում մեքենաշինության և մետաղամշակման արտադրանքի ծավալը կավելանա մոտ 1,6—1,7 անգամ։ Սովետական մեքենաթողարկողները վաղուց ի վեր ամբողջ աշխարհին հայտնի են իրենց արտադրանքի լավագույն նմուշներով։ Մեր աշխատավորները կարող են պարծենալ, որ այսօր հայրենի մեքենաշինության մի շարք ճյուղեր կանգնած են համաշխարհային առաջավոր մեքենաշինության առաջին գծի վրա։ Սակայն այս ասպարեզում մեր անելիքները դեռ շատ են։ Սովետական մեքենաշինության բուռն զարգացման համար նոր հնգամյա պլանը նախատեսում է ոչ միայն խոշոր կապիտալ ներդրումներ, այլև նորագույն գիտության ու տեխնիկայի եղանակների կիրառման հետ կապված ահագին ծախսումներ, որոնց միջոցով ավելի կբարձրանա մեր մեքենաշինության մակարդակը։

Խնդիրը դրված է հետևյալ կերպ. սովետական գործարաններից թողարկված մեքենաներն իրենց տեխնիկական-տնտեսական ցուցանիշներով պետք է արտահայտեն հայրենի ու համաշխարհային գիտության և տեխնիկայի ժամանակակից մակարդակը։ Խոսքը վերաբերում է նրան, որ սովետական մեքենաշինությունը պետք է հանդիսանա այն վճռական ազդակը, որը կոչված է ոչ միայն ավելացնելու արտադրանքի քանակը, այլև էապես նպաստելու աշխատանքի արտադրողականության բարձրացմանը և դյուրացնելու սովետական քաղաքացիների աշխատանքը։

Նոր հնգամյա պլանում նախատեսվում է անտառանյութերի, թղթի և փայտամշակման արդյունաբերության նշանակալի զարգացում։ Հատկացվող կապիտալ խոշոր ներդրումներն այս բնագավառում հետապնդում են մի նպատակ՝ հումքի կոմպլեքսային և բարձրորակ մշակմամբ բավարարել երկրի հարաճուն պահանջմունքը թղթի, ստվարաթղթի, ցելյուլոզի և այլ արդյունքների նկատմամբ։

Սովետական ժողովրդի բարօրության անընդհատ բարգավաճումը պահանջում է ավելի մեծ թափով զարգացնել թեթև արդյունաբերությունը։ Հիրա-



վի, նոր հնգամյակում կկառուցվեն մի շարք խոշոր ձեռնարկություններ (ավելի քան 300) և կվերակառուցվեն այժմ գործող 100 մեծ ձեռնարկությունները։ Ըստ հնգամյակի նախատեսումների՝ թեթև արդյունաբերության տարեկան աճման տեմպերը կբարձրանան 2,1 անգամ։

Նախատեսվում է 1970 թվականին ժողովրդի պահանջմունքների բավարարման համար թողարկել՝ 9,5—9,8 միլիարդ քառակուսի մետր գործվածք, 1,65—1,75 միլիարդ տրիկոտաժե սպիտակեղեն և վերնազգեստ, 610—630 միլիոն զույգ կաշվե կոշիկ, 5,9—6,2 միլիոն տոննա միս (պետական ռեսուրսների հումքից), 8,5—9 միլիոն տոննա ձկնեղեն ու ծովակենդանիների մթերքներ, 16—17 միլիոն տոննա անարատ կաթնամթերք, 1160 հազար տոննա յուղ, 9,8—10 միլիոն տոննա շաքար-շաքարավազ և այլն։

Միաժամանակ խնդիր է դրվում ավելի բարձրացնել թեթև արդյունաբերության արտադրանքի բոլոր տեսակների որակը. այդ բարերար ազդեցություն կունենա սպառողների կենսամակարդակի վրա։ Սննդամթերքների արտադրության 1,4 անգամ ավելացումը իրոք կնպաստի աշխատավորների հասարակական սննդի առավել լայն մասշտաբներով կազմակերպմանը։



Պարտիայի գերագույն նպատակը՝ աշխատավորության կենսամակարդակի բարձրացումը և նրա կուլտուրական ու հոգևոր պահանջմունքների լիակատար բավարարումն է։ Այս տեսակետից ուշագրավ են այն միջոցառումները, որոնք արտահայտում են գյուղատնտեսության զարգացման ասպարեզում պարտիայի կանխագծումները։

Հնգամյա նոր պլանի գլխավոր խնդիրներից մեկը, դա հողագործական և անասնապահական մթերքների արտադրության նշանակալի աճի ապահովումն է, որը պետք է ավելի մեծ չափով բավարարի արդյունաբերության՝ գյուղատնտեսական հումքի և աշխատավորության սննդամթերքների ամենօրյա պահանջմունքները։ Այս նպատակով սահմանվում է, որ նախորդ հնգամյակի համեմատությամբ, սկսած հնգամյակում գյուղատնտեսական մթերքների արտադրության տարեկան միջին ծավալը մեծացնել 25 տոկոսով։

Հացահատիկի և անասնապահական մթերքների արտադրության ավելացման վրա պետք է բևեռվի պարտիական, սովետական, պլանային և գյուղատնտեսական օրգանների գլխավոր ուշադրությունը։ Նախորդ հնգամյակի համեմատությամբ, նոր հնգամյակում հացահատիկի տարեկան միջին արտադրանքը պետք է ավելանա 30 տոկոսով։ Դա նշանակում է, որ երկիրը ի վիճակի կլինի 1970 թ. 167 միլիոն տոննա հացահատիկի բերք ստանալ։

Ըստ հնգամյա պլանի՝ գյուղատնտեսական մթերքների մյուս տեսակների տարեկան միջին արտադրանքը կազմելու է. շաքարի ճակնդեղինը՝ 80 միլիոն տոննա, բամբակինը՝ 6 միլիոն, կարտոֆիլինը՝ 100 միլիոն, մսինը՝ 11 միլիոն, կաթինը՝ 78 միլիոն տոննա, ձուն՝ 34 միլիարդ հատ։ Մթերքների այս քանակությունը, համեմատած նախորդ տարիների հետ, նշանակալի աճ է ցուցաբերում։

Աշխատավորության և արդյունաբերության պահանջմունքները բավարարելու նկատառումով հնգամյա պլանով նախատեսվում է ապահովել անհամեմատ հզոր տեխնիկական բազա՝ գյուղատնտեսության համար։ Հինգ տարում

կոլտնտեսությունները և սովխոզները կստանան 1.790 հազար տրակտոր, 1.100 հազար բեռնատար ավտոմոբիլ, 550 հազար հացահատիկի կոմբայն և մեծ թվով այլ մեքենաներ։ Այսպիսով, գյուղատնտեսության մեջ գործադրվող աշխատանքը ստանալու է ավելի մեծ մեքենազինվածություն, որը չի կարող դրականորեն չազդել աշխատանքի արտադրողականության բարձրացման վրա։ Միայն այն հանգամանքը, որ հնգամյակի վերջում գյուղը կստանա 60—65 միլիարդ կիլովատ ժամ էլեկտրաէներգիա, ցույց է տալիս, որ գյուղի ինդուստրիալ զարգացումը զգալիորեն բարձրացնելու է նաև գյուղատնտեսության առաջընթացի մակարդակը։

Հնգամյա պլանի կանխագծումների համաձայն, կոլտնտեսականները հանրային արտադրությունից (հինգ տարվա ընթացքում) 35—40 տոկոսով ավելի եկամուտ կստանան։ Աշխատանքի նորագույն կազմակերպմամբ և վճարման ավելի պրոգրեսիվ ձևերի կիրառմամբ կոլտնտեսականների վճարման սիստեմն առավել կմոտենա սովխոզներում կիրառվող հատուցման սիստեմին։ Կոլտնտեսականների անձնական շահագրգռվածության, ինչպես և կենսամակարդակի բարձրացման համար էական նշանակություն ունի նրանց ամենամսյա երաշխավորված աշխատավճարի կիրառումը։ Կոլտնտեսականների թոշակավորումը նմանապես նոր պայմաններ է ստեղծելու այն բանի համար, որպեսզի գյուղի աշխատավորներն իրենց կենսամակարդակով հետզհետե մոտենան քաղաքի աշխատավորների մակարդակին։ Այս երևույթը նոր հնգամյակի բնորոշ կողմերից մեկը կհանդիսանա։

Գյուղատնտեսության զարգացման բնագավառում նոր հնգամյա պլանի նախատեսած բոլոր միջոցառումները հետապնդում են մի բան, որպեսզի առաջիկա տարիներին գյուղատնտեսությունն ունենա բարձր և կայուն արտադրական մակարդակ։ Այդ խնդրի լուծումը պահանջում է նոր հնգամյակում սովխոզներում և կոլտնտեսություններում 40—45 տոկոսով բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը։ Ահա թե ինչու պլանը նախատեսում է հսկայական միջոցների՝ 41 միլիարդ ռուբլու ներդրում գյուղատնտեսության մեջ։ Այդ գումարը երկու անգամ ավելի է, քան անցյալ հնգամյակներում։ Բացի պետական կապիտալ ներդրումներից, նախնական հաշվարկումների համաձայն այս հնգամյակում կոլտնտեսություններն իրենց արտադրական բազան ընդլայնելու նպատակով կներդնեն 30 միլիարդ ռուբլի։ Խոսք չկա, որ հատկացված հսկայական միջոցների ռացիոնալ օգտագործումը մեծապես կնպաստի այն խոշորագույն խնդիրների լուծմանը, որոնք իրենց արտացոլումն են գտել նոր հնգամյա պլանի գյուղատնտեսության բաժնում։

◆◆◆

Նոր հնգամյա պլանի դիրեկտիվների համաձայն, 1966—1970 թթ. ժողովրդական տնտեսության մեջ ներդրվող 310 միլիարդ ռուբլին 47 տոկոսով ավելի է, քան վերջին հնգամյակում։ Այս վիթխարի ներդրումները, վերջին հաշվով, ստեղծելու են աշխատավորության հարաճուն պահանջմունքների բավարարման, հայրենիքի պաշտպանունակության առավել ամրապնդման իրոք բարենպաստ բազա։ Պարտիայի մեծ հոգատարությունը սովետական աշխատավորների կենսամակարդակի բարձրացման նկատմամբ իր ցայտուն արտահայտությունն է գտել նոր հնգամյա պլանում։



Պլանում նախատեսվող ժողովրդի բարեկեցության բարձրացումը կատարվելու է աշխատանքի արտադրողականության նշանակալի աճի, նյութական արժեքների արտադրության ծավալի մեծացման և ազգային եկամտի աճի տեմպերի արագացման հիման վրա։ Այս նպատակով նախատեսվում է առաջիկա հինգ տարիներում բանվորների ու ծառայողների աշխատավարձը միջին հաշվով բարձրացնել առնվազն 20 տոկոսով, իսկ կոլտնտեսականների եկամուտը (հանրային տնտեսությունից)՝ 35—40 տոկոսով։

Սրա հետ մեկտեղ հանրային ֆոնդերի հաշվին բնակչությանը հատկացվող դրամական վճարումներն ու արտոնությունները կավելանան առնվազն 40 տոկոսով։ Բացի այդ, աշխատավորների բարօրությանն զգալի չափով կնպաստի այն, որ հնգամյակի տարիներում 1,3 անգամ կընդլայնվի բնակարանային շինարարության ծավալը։ Քաղաքներում, բանավաններում և սովխոզներում կառուցվելու են 400 միլիոն քառակուսի մետր բնակելի տներ։ Նոր հնգամյակում, նախորդ հնգամյակի համեմատությամբ 1,7 անգամ աճելու են ժողովրդի նյութական պահանջմունքների բավարարմանը հատկացվող միջոցները։ Բնակչության ռեալ եկամուտների աճման տեմպերը, մանրածախ ապրանքների շրջանառության ծավալի ընդարձակումը, հանրային սննդի ձեռնարկությունների շրջանառության աճը, կենցաղային սպասարկման ձեռնարկությունների ընդարձակումը՝ այս ամենը բարձրացնելու են մարդկանց կենսամակարդակը։

Իսկ եթե հաշվի առնենք բանվորին ու ծառայողին հասնող հանրային ֆոնդից հատկացվող վճարներն ու արտոնությունները, ապա ամսվա միջին աշխատավարձը (մեկ աշխատավորի հաշվով) կկազմի 155 ռուբլի։ Հանրային ֆոնդից բանվորներին, ծառայողներին և կոլտնտեսականներին տրվող հատկացումները հնգամյակի ընթացքում կավելանան մոտավորապես 40 տոկոսով։

Ըստ նոր հնգամյակի՝ նվազագույն աշխատավարձը սահմանվելու է 60 ռ., որն ավելի շոշափելի կլինի, եթե հաշվի առնենք, որ պլանով նախատեսվում է վերացնել ցածր աշխատավարձ ստացող բանվորների ու ծառայողների հարկերը։ Միաժամանակ բարձրանալու են միջակ վարձատրվող բանվոր-ծառայողների ռոճիկները։ Խոշոր գումարներ են տրվելու լավագույն աշխատավորներին խրախուսման ֆոնդերից և այդպիսով գնալով ավելանալու է պարգև-հավելավճարը վաստակի մեջ։

Աշխատավորների բարօրությանը նշանակալիորեն նպաստելու են այն միջոցառումները, որ հետզհետե հանրային ֆոնդից ավելի մեծ գումարներ են հատկացվելու աշխատավորների՝ թոշակավորվող խավերին, մանուկների դաստիարակությանը և խնամքին, ժողովրդական առողջապահության և կուլտուր-կենցաղային սպասարկմանը։ Հնգամյակի վերջում այդ նպատակով ծախսվելու է 60 միլիարդ ռուբլի։ Առաջիկա տարիներին գրեթե 2 և կես, իսկ գյուղական վայրերում ավելի քան 3 անգամ աճելու է աշխատավորության կենցաղային սպասարկման ցանցը։ Այս նպատակով պետությունը բաց է թողնելու հսկայական միջոցներ՝ աշխատավորների կենցաղային առօրյա հոգսերը դյուրացնելու նպատակով։

Հաշվի առնելով արտադրաուժերի նպատակահարմար բաշխման սկզբունքները, նոր հնգամյա պլանը առաջընթացի բարձր տեմպեր է ապահովում միութենական ռեսպուբլիկաների, ինչպես և Հայաստանի տնտեսության և կուլտուրայի զարգացման համար, մի զարգացում, որի համամասնությունները քննարկվեցին ու հաստատվեցին ՀԿՊ վերջին համագումարում։







ժողովրդական առողջապահության, երկրի կուլտուրական շինարարության վրա պետությունը ծախսելու է մեծ գումարներ։ Խնդիր է դրվում այս հնգամյակում հիմնականում ավարտել անցումն ընդհանուր փակատար միջնակարգ կրթության։ Այս միջոցառումը նշանավորելու է նոր վերելք կուլտուրական հեղափոխության մարզում։ Ամեն կերպ զարգացնելով ու ծավալելով բարձրագույն և պրոֆտեխնիկական կրթությունը, երկիրը հնգամյակի վերջում բուհերում կունենա 5 միլիոն ուսանող։

Գնահատելով նոր հնգամյա պլանի խոշորագույն նշանակությունը, ՍՄԿԿ XXIII համագումարն իր բանաձևում ընդգծեց, որ հնգամյակի կենսագործումը կունենա միջազգային մեծ նշանակություն։ Կրկնապատկելով սոցիալիստական մեր հայրենիքի ուժն ու բարեկեցությունը, հնգամյակը ավելի քան կմեծացնի սոցիալիզմի ձգողական ուժը, կնպաստի միջազգային կոմունիստական շարժման և արդի ռևոլյուցիոն բոլոր ուժերի զորեղացմանը, նրանց միասնության ամրապնդմանը։

Նոր հնգամյա պլանի իրագործումը պահանջում է համառ և շրջահայաց գործունեություն պարտիայի բոլոր կազմակերպություններից, որոնք կոչված են գործարար կերպով վերլուծելու այն, ինչ արդեն արված է և ինչ պետք է արվի արտադրության արդյունավետության բարձրացման համար։ Համագումարը կոչ արեց բոլոր պարտիական կազմակերպություններին՝ վճռական պայքար մղել մեծամտության, ինքնահանգստացման և անտարբերության բոլոր դրսևորումների դեմ, անհանդուրժողական վերաբերմունք ցույց տալ գերատեսչական սահմանափակվածության ու տեղայնության նկատմամբ, համարձակորեն ծավալել թերությունների քննադատությունը, արմատախիլ անել բյուրոկրատիզմը՝ որտեղ և ինչ գործում էլ այն դրսևորվի։

ՍՄԿԿ XXIII համագումարն իր որոշմամբ պարտավորեցրեց պարտիական, սովետական ու տնտեսական կազմակերպություններին հետևողականորեն կիրառել պարտիայի մշակած տնտեսական քաղաքականության սկզբունքները, որոնցով նախատեսվում է կենտրոնացված ճյուղային կառավարումը զուգակցել միութենական ռեսպուբլիկաների իրավունքների ընդլայնման հետ, ուժեղացնել տնտեսության ղեկավարման գործում տնտեսական մեթոդների դերը, արմատապես բարելավել պլանավորումը, ընդլայնել ձեռնարկությունների կոլեկտիվների տնտեսական ինքնուրույնությունն ու նախաձեռնությունը, բարձրացնել նրանց նյութական շահագրգռվածությունն իրենց գործունեության արդյունքներով։ Պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմի կենսագործումը մոտակա տարիների կարևորագույն խնդիրներից է։

Վեր է կասկածից, որ նոր հնգամյակը կավարտվի փայլուն հաջողություններով, որը մեզ ավելի կմոտեցնի մեր նվիրական նպատակին՝ կոմունիզմին։



Հ. ԹՈՒՄԱՆՅԱՆ

# ՍՍՌՄ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՏԵՄՊԵՐԸ ԵՎ ՀԱՄԱՄԱՍՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ «Ա» ԵՎ «Բ» ԽՄԲԵՐԻ ՄԻՋԵՎ

Սոցիալիստական էկոնոմիկան իր զարգացման տեմպերով անվիճելի առավելություններ ունի կապիտալիստականի հանդեպ։ Այդ առավել ցայտուն է դրսևորվում արդյունաբերության ասպարեզում։ Ահա թե ինչ է ցույց տալիս ՍՍՌՄ-ի և կապիտալիստական առավել զարգացած երկրի՝ ԱՄՆ-ի արդյունաբերության զարգացման տեմպերի համեմատությունը։

Տարեկան միջին տեմպերը տոկոսներով

| | ՍՍՌՄ | ԱՄՆ |
|---|---|---|
| 46 տարիներին (1918—1963 թթ.) | 10 | 3,4 |
| 12 տարիներին (1918—1929 թթ.) | 6,9 | 3,1 |
| 11 տարիներին (1930—1940 թթ.) | 16,5 | 1,2 |
| 19 տարիներին (1945—1963 թթ.) | 10,4 | 2,2 |
| 10 տարիներին (1954—1963 թթ.) | 10,5 | 3,1 |

Բերված թվերն ապացուցում են, որ ՍՍՌՄ արդյունաբերության տարեկան աճի միջին տեմպերը ամերիկյանին գերազանցում են մոտ 3 անգամ։ Դրա հետ մեկտեղ, ի տարբերություն կապիտալիստական արդյունաբերության, որի զարգացումը ցիկլային բնույթ ունի, սոցիալիստական արդյունաբերությանը հատուկ է զարգացման անընդհատությունը։

Ահա թե ինչու, ինչպես երկարատև զարգացման ընթացքում, այնպես էլ ներկայումս, պահպանվում է ՍՍՌՄ արդյունաբերության զարգացման տեմպերի գերազանցությունը կապիտալիստական երկրների նկատմամբ, դա կապիտալիզմի հետ տնտեսական մրցության մեջ մեր հաղթանակի կարևոր պայմանն է։

ՍՍՌՄ արդյունաբերության զարգացման տեմպերի գերազանցությունը, ԱՄՆ-ի և կապիտալիստական մյուս երկրների համեմատությամբ, պահպանվելու է նաև այսուհետև։ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1966—1970 թվականների հնգամյա պլանի վերաբերյալ պարտիայի XXIII համագու-

մարի դիրեկտիվներով սահմանված է արդյունաբերության 47—50 տոկոսով աճ. իսկ տարեկան միջին աճը կազմելու է 8,4 տոկոս։

Սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման համեմատ մեծանում է մեկ տոկոսի բացարձակ արժեքը։ Այսպես, եթե 1952 թվականին մեր արդյունաբերության արտադրանքի աճման մեկ տոկոսը կազմում էր 0,5 միլիարդ ռուբլի, ապա 1965 թվականին այն քառապատկվեց, հասնելով 2 միլիարդ ռուբլու։

Անհիմն է մի շարք տնտեսագետների այն տեսակետը, թե իբր բարձր տեմպերը պայմանավորված են արտադրության մակարդակով և հակադարձ համեմատական են դրան։ Արտադրության մակարդակը, անշուշտ, տեմպերի վրա ներազդող գործոն է, բայց ոչ վճռական։

Արդյունաբերության զարգացման տեմպերը, ամենից առաջ, պայմանավորված են նրանով, թե ինչպես են օգտագործվում արտադրական ռեսուրսները, որքան միջոցներ են տրամադրվում արտադրության ընդարձակմանը և ինչպիսի արդյունավետությամբ են գործադրվում դրանք։ Իհարկե, թույլ զարգացած արդյունաբերություն ունեցող երկրի ամենափոքր առաջադիմությունն իսկ բարձր աճ կտա։ Սակայն, դրանից բնավ էլ չի բխում, թե երբ արտադրությունը հասնում է բարձր մակարդակի, որպես օրինաչափություն, պետք է իջնեն զարգացման տեմպերը։ Այդպես դատել կնշանակի մաթեմատիկական օրինաչափությունը մեքենայորեն փոխադրել էկոնոմիկայի ոլորտը (փոքր թվերի ամեն մի չնչին մեծացում տալիս է մեծ տոկոս, քան մեծ թվերինը)։ Բայց արդյունաբերության զարգացման տեմպերի հարցը ոչ թե մաթեմատիկական, այլ սոցիալ-տնտեսական կատեգորիա է։ Եթե դրանք իրոք իջնեին արդյունաբերության մասշտաբների աճման համեմատ, ապա մոտ ապագայում արդյունաբերության աճի տեմպը անխուսափելիորեն պետք է հավասարվի զերոյի։ Ուրիշ խոսքով, կբացառվեր ո՛չ միայն բարձր տեմպերի, այլև, առհասարակ, զարգացման որևէ հնարավորություն։

Ամեն մի ողջամիտ մարդու համար հասկանալի է, որ էկոնոմիկայի զարգացման տեմպերը չի կարելի հասցնել զերոյի, ինչպես նաև բնակչության աճի տեմպերին։ Այդ դեպքում հնարավոր չի լինի ավելացնել երկրի արդյունաբերական պոտենցիալը. հավասարապես կդժվարանա նաև հասարակության ընթացիկ պահանջմունքների բավարարումը։ Մինչդեռ սոցիալիզմի ժամանակ բարձր տեմպերի պահպանումը պայմանավորված է գիտատեխնիկական և արտադրական կուտակվածք ստեղծելու անհրաժեշտությամբ, որի միջոցով հասարակության աճող պահանջմունքները բավարարվելու են ո՛չ միայն այսօր, այլև ապագայում։

Արտադրողական ուժերի զարգացումը յուրաքանչյուր նոր էտապում պահանջում է, որ հասարակությունն իր տրամադրության տակ ունեցած միջոցների որոշ մասը հատկացնի էկոնոմիկայի այն ճյուղերին, որոնք թեպետև անմիջականորեն չեն կարող արդյունք տալ, բայց նախապայմաններ կստեղծեն արտադրության հետագա զարգացման համար։

1966—1970 թվականների հնգամյա պլանով ՍՍՌՄ արդյունաբերության զարգացման տեմպերը սահմանվում են տեխնիկական առաջադիմության պահանջին, ազգային եկամտի կուտակվող մասից կապիտալ ներդրումներին հատկացվող միջոցների ծավալին, աշխատանքի արտադրողականության բարձրացման համապատասխան։



Ժողովրդական տնտեսության, այդ թվում և արդյունաբերության զարգացման տեմպերն ու համամասնությունները սերտորեն կապված են իրար հետ և ներգործում են միմյանց վրա։ Եթե արդյունաբերության «Ա» և «Բ» խմբերը մշտապես միևնույն տեմպերով զարգանային, ապա խոսք չէր կարող լինել դրանց միջև գոյություն ունեցող հարաբերակցությունները փոխելու մասին, անկախ երկրի առջև կանգնած տնտեսական ու քաղաքական խնդիրներից։ Հապա ի՞նչ պայմանների ներգործությամբ են փոխվում արդյունաբերության զարգացման տեմպերը. նախ՝ նայած թե արդյունաբերության կամ նրա տարբեր ճյուղերում ինչպե՞ս են օգտագործվում նյութական, աշխատանքային և ֆինանսական ռեսուրսները։ Երկրորդ, այդպիսի ռեսուրսների ստեղծման համար ի՞նչ ծավալի կապիտալ ներդրումներ են կատարվում արդյունաբերության մեջ ամբողջությամբ վերցրած և, ինչպե՞ս են բաշխվում դրանք՝ «Ա» և «Բ» խմբերի ու ճյուղերի միջև։ Նշված գործոնների ազդեցությամբ, երբ «Ա» և «Բ» խմբերը զարգանում են տարբեր տեմպերով, դրանց համապատասխան փոխվում են եղած համամասնությունները և առաջանում են նորերը։

Արդյունաբերության «Ա» խմբի թողարկած արտադրության միջոցների զգալի մասը ծառայում է «Բ» խմբին՝ տեքստիլ, կոշկեղենի, սննդի և ժողովրդական սպառման առարկաներ թողարկող մյուս ճյուղերին։ Եթե «Ա» խումբը արտադրության միջոցներ՝ մեքենաներ, սարքավորումներ, վառելիք, էլեկտրաէներգիա չտրամադրի «Բ» խմբի ճյուղերին, վերջիններս չեն կարող զարգանալ, հնարավոր չի լինի բավարարել սննդի, կոշկեղենի, հագուստի, բնակարանի և բնակչության այլ պահանջմունքները։

Արդյունաբերության «Ա» խմբի առանձնահատկություններից մեկն էլ այն է, որ արտադրամիջոցներ է մատակարարում ո՛չ միայն իրեն ու «Բ» խմբին, այլև գյուղատնտեսությանը, տրանսպորտին, շինարարությանը և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերին։ Այսպիսով, արտադրության միջոցներ արտադրող արդյունաբերության ճյուղերը («Ա» խումբ) ամբողջ ժողովրդական տնտեսության տեխնիկական վերազինման բազա են։ Ուստի, արդյունաբերության «Ա» և «Բ» խմբերի միջև գոյություն ունեցող փոխադարձ կապերի ու պայմանավորվածության մեջ «Ա» խումբը հանդես է գալիս որպես տեխնիկական առաջադիմությունը մարմնավորող։ Դրան համապատասխան էլ արդյունաբերության «Ա» խմբի առաջանցիկ զարգացումը դառնում է տնտեսական օրենք։ Վ. Ի. Լենինն այդ առթիվ գրել է. Արտադրության միջոցների ամենաարագ աճման այդ օրենքի ամբողջ իմաստն ու ամբողջ նշանակությունն էլ հենց միայն այն է, որ ձեռքի աշխատանքը մեքենայական աշխատանքով փոխարինելը,— առհասարակ տեխնիկայի պրոգրեսը մեքենայական ինդուստրիայի ժամանակ, պահանջում է ուժգնապես զարգացնել քարածխի ու երկաթի հանույթը, այդ իսկապես «արտադրության միջոցների համար արտադրամիջոցների» արտադրությունը... Որքան ավելի է զարգանում տեխնիկան, այնքան ավելի է արտամղվում մարդու ձեռքի աշխատանքը, մի շարք ավելի ու ավելի բարդ մեքենաներով փոխարինվելով (Երկեր, հատ. 1, էջ 114—115)։ Հասարակական զարգացման ընթացքը լիովին հաստատեց 70 տարի առաջ Լենինի արտահայտած միտքը։

Տեխնիկական հեղաշրջումները և, մասնավորապես, ներկայումս կատարվող գիտատեխնիկական ռևոլյուցիան նորանոր հնարավորություններ է ընձեռում ձեռքի աշխատանքը մեքենաներով փոխարինելու, աշխատանքի պրոցես-

ները մեքենայացնելու ու ավտոմատացնելու և դրա հիման վրա հնացած սարքավորումները նոր, ավելի արտադրողական սարքավորումներով փոխարինելու։ Արդյունաբերությունը պլանավորելիս «Ա» խմբի զարգացման համար պետք է նկատի ունենալ ավելի բարձր տեմպեր, քան «Բ»-ի։ Սակայն, այդ օրենքը չի որոշում և չի էլ կարող որոշել, թե «Ա» խմբի զարգացման տեմպերը ինչ չափով պետք է բարձր լինեն «Բ»-ի զարգացման տեմպերից ու այդ հիման վրա՝ ինչ փոփոխություն պետք է կրեն երկու խմբերի միջև գոյություն ունեցող համամասնությունները։

Ժողովրդական տնտեսության բոլոր, ինչպես և արդյունաբերության «Ա» և «Բ» խմբերի միջև եղած համամասնությունները սահմանելիս սովետական պետությունը, նրա պլանավորող մարմինները ելնում են հասարակության տվյալ ժամանակի պահանջներից և դրանք բավարարելու համար առկա նյութական ու աշխատանքային ռեսուրսներից։ Հասկանալի է, որ արդյունաբերության «Ա» և «Բ» խմբերի միջև չկան և չեն կարող լինել կայուն ու անփոփոխ հարաբերություններ և որ «Բ» խմբից «Ա»-ի առաջանցիկ զարգացման չափը միշտ նույնը չէ։ Արտադրության միջոցների առավել աճման տնտեսական օրենքի գործողությունները սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման տվյալ էտապի խնդիրներին համապատասխան կարող են տարբեր չափերով դրսևորվել։ Միաժամանակ չի կարելի անտեսել սուբյեկտիվ գործոնի դերը, որից մեծ չափով կախված է այն, թե միևնույն օբյեկտիվ պայմանների առկայությամբ ինչ ուղիներ ու միջոցներ են ընտրվում այդ պայմաններն օգտագործելու համար։

Միևնույն օբյեկտիվ պայմաններում տնտեսական զարգացման տեմպերն ու դրանցով պայմանավորված համամասնությունները կարող են տարբեր լինել, նայած թե ինչպիսի ուղիներ են ընտրված առկա հնարավորություններն իրականություն դարձնելու համար։ Ուստի, ժողովրդական տնտեսության և նրա առանձին ճյուղերի զարգացման տեմպերը որոշելիս օբյեկտիվ պայմանների բազմակողմանի վերլուծության հետ մեկտեղ պետք է առաջադրել այնպիսի խնդիրներ, որոնց լուծման համար արդեն կան անհրաժեշտ նախադրյալներ։ «ՍՄԿՊ-ն, որպես գիտական կոմունիզմի պարտիա, առաջ է քաշում և լուծում է կոմունիստական շինարարության խնդիրները նյութական ու հոգևոր նախադրյալների նախապատրաստման ու հասունացման համեմատ, ղեկավարվելով այն բանով, որ չի կարելի թռչել զարգացման անհրաժեշտ աստիճանների վրայով, ինչպես նաև չի կարելի կանգ առնել ձեռք բերածի վրա, կասեցնել առաջընթաց շարժումը» (ՍՄԿՊ ծրագիր, էջ 77—78, Երևան, 1961 թ.)։

Սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակից անմիջապես հետո, քաղաքացիական կռիվների տարիներին, մեր ժողովրդական տնտեսության մեջ փաստորեն չկային կուտակումներ, ուստի, չէր կարող խոսք լինել ծանր արդյունաբերության առաջանցիկ զարգացման մասին։

Երբ ժողովրդական տնտեսության վերականգնման ավարտից հետո որոշվեց իրականացնել տեխնիկական վերակառուցում, բոլորովին այլ կերպ դրվեց արդյունաբերության «Ա» և «Բ» խմբերի զարգացման տեմպերի ու նրանց համամասնությունների հարցը։ 1928 թվականին ազգային եկամտի կուտակումները հասնում էին 20 տոկոսի, որի անընդմեջ բարձրացման շնորհիվ ՍՍՌՄ-ը առաջին հնգամյակում զարգացման տեմպերով աշխարհում գրավում էր առաջին տեղը։ Ագրարային երկիրը ինդուստրիալ դարձնելու նպատակով



էկոնոմիկայի զարգացումը խարսխվեց արտադրության միջոցների արտադրության գերազանց աճի վրա։ Այդ պայմաններում արդյունաբերության «Ա» խումբը գերազանցապես արտադրում էր իր համար և ավելի քիչ՝ «Բ» խմբի և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի համար։

ՍՍՌՄ-ում արդյունաբերության «Ա» և «Բ» խմբերի աճման տեմպերի միջև տարբերությունները մեծ էին նախապատերազմյան հնգամյակներում, հատկապես առաջին հնգամյակում. այդ է ցույց տալիս ստորև բերվող աղյուսակը.

ՍՍՌՄ արդյունաբերության «Ա» և «Բ» խմբերի աճման տեմպերը նախապատերազմյան հնգամյակներում *(տոկոսներով)*

| | 1932՝ թ. 1928թ. համեմատությամբ | 1937 թ.՝ 1932 թ. համեմատությամբ | 1940 թ՝ 1937 թ. համեմատությամբ |
|---|---|---|---|
| Արտադրության միջոցների արտադրություն— «Ա» խումբ . . . | 273 | 238 | 153 |
| Սպառման առարկաների արտադրություն— «Բ» խումբ . . . . . | 156 | 199 | 133 |
| «Ա» խմբի աճման տեմպերի հարաբերությունը «Բ» խմբին . . . . . | 1,75 | 1,20 | 1,15 |

Բերված տվյալներից երևում է, որ սոցիալիզմի հիմքը դնելիս (մասնավորապես առաջին հնգամյակում) արդյունաբերության «Ա» և «Բ» խմբերի աճման տեմպերի միջև եղել են մեծ տարբերություններ։ Արտադրության միջոցների արտադրության գերազանց աճն այդ շրջանում թելադրվում էր ՍՍՌՄ-ի ներքին ու արտաքին պայմաններով։ Հարկավոր էր իրականացնել սոցիալիստական շինարարության ծրագիրը, արմատապես փոխել ժողովրդական տնտեսության կառուցվածքը՝ հօգուտ ծանր ինդուստրիայի, հաղթահարել երկրի տեխնիկա-տնտեսական հետամնացությունը և ամրացնել նրա պաշտպանունակությունը։ Արդյունաբերության «Ա» խմբի բարձր տեմպերի շնորհիվ փոխվեցին երկու խմբերի հարաբերակցությունները՝ հօգուտ «Ա» խմբի։ Արդյունաբերական արտադրանքի մեջ ավելացավ արտադրամիջոցների բաժինը և 1928 թվականի 39,5 տոկոսից 1940 թվականին հասավ 61,2-ի։ Նախապատերազմյան հնգամյակներում մեր երկիրն ինդուստրացվեց, որի շնորհիվ հնարավոր դարձավ հետպատերազմյան շրջանում արդյունաբերության երկու խմբերի աճման տեմպերը մոտեցնել։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանով նախատեսված էր ավելի մոտեցնել արդյունաբերության «Ա» և «Բ» խմբերի զարգացման տեմպերը («Ա» խմբի արտադրանքն ավելացնել 85—88, իսկ «Բ» խմբինը՝ 62—65 տոկոսով)։ Յոթնամյա պլանով նախատեսված 80 տոկոսի փոխարեն արդյունաբերական արտադրանքն աճեց 184 տոկոսով։ Սակայն, ինչպես նշված է ՍՄԿՊ XXIII համագումարի դիրեկտիվներում, թերակատարվեց ժողովրդական սպառման առարկաների արտադրության յոթնամյա պլանը։ Դրա հետևանքով խախտվել են արդյունաբերության «Ա» և «Բ» խմբերի միջև սահմանված համամասնությունները։

1966—1970 թվականների հնգամյա պլանում նոր ձևով է դրվում արդյունաբերության «Ա» և «Բ» խմբերի աճման տեմպերի հարցը։ Յոթնամյա պլա-

նի կատարումն ու գերակատարումը հնարավորություն ընձեռեցին այնպիսի ուղիով զարգացնելու ժողովրդական տնտեսությունը, որ միաժամանակ լուծվի ժողովրդի բարեկեցության բարձրացման հարցը և բարձր տեխնիկայի բազայի վրա մեծանա երկրի արտադրական պոտենցիալը։ Հնգամյա պլանի դիրեկտիվներում նախատեսված է 1966—1970 թվականներին արդյունաբերության «Ա» և «Բ» խմբերի աճման տեմպերը խիստ մոտեցնել։ Այսպես, եթե հնգամյակում ամբողջ արդյունաբերական արտադրանքը ավելանալու է 47—50 տոկոսով, ապա «Ա» խմբինը՝ 49—52, իսկ «Բ» խմբինը՝ 43—46 տոկոսով։ Արդյունաբերության երկու խմբերի աճման տեմպերի այդպիսի մոտեցումը, չբացառելով «Ա» խմբի գերազանց աճի անհրաժեշտությունը, միաժամանակ լայն ասպարեզ է բացում ժողովրդական սպառման առարկաների արտադրության ավելացման համար, որը կնպաստի ժողովրդի բարեկեցության բարձրացմանը։

Սոցիալիստական շինարարության պրակտիկան ՍՍՌՄ-ում և սոցիալիստական լագերի մյուս երկրներում ակնառու ցույց է տալիս, որ արտադրության միջոցների արտադրության առաջանցիկ զարգացումը նյութական նախադրյալներ է ստեղծում սպառման առարկաների արտադրության զարգացման համար։ Ժողովրդական սպառման առարկաների արտադրության վերելքն անհնար է առանց անհրաժեշտ քանակությամբ հումքի, մեքենաների, վառելիքի, էլեկտրաէներգիայի, առանց տեխնիկական առաջադիմության ու աշխատանքի արտադրողականության բարձրացման, առանց թեթև և սննդի արդյունաբերության մեջ գործող արտադրական ֆոնդերի փոխհատուցման և ընդլայնման։

Արտադրության միջոցների արտադրության գերազանց աճի տնտեսական օրենքը չի կարելի չափազանցնել և մտածել, թե այն կարող է կլանել «Բ» խմբի բաժինը։ Բանն այն է, որ ինդուստրիալ տեսակետից զարգացած սոցիալիստական երկրում հումքի և նյութերի արտադրության ավելացումը, մեքենաշինության զարգացումը անխուսափելի են դարձնում անձնական սպառման առարկաների արտադրության ավելացումը։ Այդպիսի երկրում ծանր արդյունաբերության արտադրանքի ավելի ու ավելի մեծ մասը գնում է արդյունաբերության «Բ» խմբին և գյուղատնտեսությանը։ Այս հանգամանքների բերումով էլ արդյունաբերության «Ա» խմբի տեսակարար կշիռը ժողովրդական տնտեսության որոշակի կառուցվածքի պայմաններում կայունանում է. բացառվում է ամեն մի երկյուղ, թե այն կարող է լիովին դուրս մղել «Բ» խմբին։

«Ա» խմբի տեսակարար կշռի կայունացման այդ տենդենցը արդեն կա և առավել շեշտված ձևով է դրսևորվում նոր՝ 1966—1970 թթ. հնգամյա պլանում։ 1966—1970 թվականներին արդյունաբերության երկու խմբերի աճման տեմպերը խիստ մոտենալու են իրար, ուստի, 1970 թվականին «Ա» խմբի տեսակարար կշիռը արդյունաբերության համախառն արտադրանքի մեջ կարող է միայն աննշան չափով բարձրանալ։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1966—1970 թվականների հնգամյա պլանով արդյունաբերության երկու խմբերի աճման նախատեսված տեմպերը հնարավորություն կտան առավել չափով բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, մեծացնելու ազգային եկամուտը, ավելացնելու ժողովրդական սպառման առարկաների արտադրությունը (այն հաշվով, որ նա մի քանի անգամ գերազանցի բնակչության աճի տեմպերը)։



Խոսելով արդյունաբերության երկու խմբերի զարգացման տեմպերի ու համամասնությունների մասին, չպետք է մոռանալ, որ նշված խմբերից յուրաքանչյուրը կազմվում է բազմաթիվ ճյուղերից և ենթաճյուղերից, որոնք առանձին-առանձին բավարարում են հասարակության կոնկրետ պահանջմունքները։ Այսպես, արդյունաբերության «Ա» խումբը ընդգրկում է լեռնահանքային, մետաղաձուլական, մետաղամշակման և մեքենաշինական, վառելիքի, քիմիական, էլեկտրական, շինանյութերի և արդյունաբերության բազմաթիվ այլ ճյուղեր, որոնցից յուրաքանչյուրը բաղկացած է տասնյակ ենթաճյուղերից։ Օրինակ, մետաղամշակման և մեքենաշինական արդյունաբերությունը միավորում է 100-ի հասնող ենթաճյուղեր, քիմիականը՝ ավելի քան 30, մետաղաձուլությունը՝ 20 և այլն։

Արդյունաբերության «Բ» խումբը միավորում է թեթև և սննդի արդյունաբերությունը։ Սրանցից յուրաքանչյուրը բաղկացած է բազմաթիվ ենթաճյուղերից, որոնցից ամեն մեկի թողարկած արտադրանքը բավարարում է հասարակության անձնական այս կամ այն կոնկրետ պահանջմունքը։ Նկատի առնելով նշված հանգամանքները, արդյունաբերության «Ա» և «Բ» խմբերի ներսում պետք է այնպիսի ճյուղային կառուցվածք ստեղծել, որը լիովին համապատասխանի հասարակության պահանջմունքներին, բավարարի դրանք։ Այսպիսով, խնդիրը միայն այն չէ, թե արդյունաբերության «Ա» և «Բ» խմբերը ինչպիսի տեսակարար կշիռ ունեն ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքում, այլև այն, թե ինչպիսին է այդ խմբերի ներսում գոյություն ունեցող ճյուղային կառուցվածքը և թե ինչ չափով է այն համապատասխանում հասարակության պահանջմունքներին։

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի հաջող կառուցումն ու ժողովրդի կենսամակարդակի բարձրացումը մեծապես պայմանավորված են նրանով, թե արտադրության միջոցների արտադրության որ ճյուղերն են առավել չափով աճում, արդյոք դրանք հանդիսանո՞ւմ են տեխնիկական առաջադիմության մարմնացումը։ Կամ՝ ժողովրդական սպառման առարկաներ թողարկող արդյունաբերությունը ինչպիսի ճյուղային կառուցվածք ունի, բավարարո՞ւմ է անձնական բոլոր պահանջմունքները։

Գիտության ու տեխնիկայի զարգացմանը համընթաց արտադրության այն ճյուղը, որն այսօր ճանաչվում է առաջադիմական, վաղը կարող է դադարել այդպիսին լինելուց։ Այդ կապակցությամբ էլ արդյունաբերության ճյուղային կառուցվածքը պլանավորելիս անհրաժեշտ է հաշվի առնել գիտության ու տեխնիկայի զարգացման հեռանկարները և զարգացման առավել բարձր տեմպեր նախատեսել առաջադիմական ճյուղերի համար։ Այսպես, օրինակ, ժողովրդական տնտեսության վառելիքի պահանջները կարելի է բավարարել վառելիքի տարբեր տեսակներով՝ կոշտ, հեղուկ վառելիքով և գազով։ Վառելիքային արդյունաբերության ճյուղային կառուցվածքը կհամապատասխանեցվի այն բանին, թե վառելիքի որ տեսակին է տրվում առաջնությունը. եթե գերակշռում են առաջադիմական ճյուղերը՝ նավթը և գազը, ավելի փոքր ծախսեր կարվեն վառելիքի արտադրության վրա։ Ընդհակառակը, եթե վառելիքի ճյուղային կառուցվածքում գերակշռում է ածուխը, ապա վառելիքի արտադրությունը թանկ կնստի։

ՍՍՌՄ-ի ժողովրդական տնտեսությունը երկար տարիներ խարսխված էր հիմնականում ածխի, թերթաքարերի վրա, լարված էր երկրի էներգետիկ տըն-

տեսությունը, գնալով աճում էին պայմանական միավոր վառելիքի արտադրության վրա կատարվող ծախսերը։ Դրա համար էլ պարտիան որոշեց երկրի վառելիքային հաշվեկշռում բարձրացնել նավթի ու գազի տեսակարար կշիռը։ Անցած յոթնամյակի տարիներին նավթի ու գազի տեսակարար կշիռը երկրի վառելիքի հաշվեկշռում 1958 թվականի 32 տոկոսից 1965 թվականին հասավ 52 տոկոսի, որի շնորհիվ ժողովրդական տնտեսությունը տասնյակ միլիոններ տնտեսեց։ Գազի ու նավթի առաջանցիկ զարգացմամբ յոթնամյակում լայն հնարավորություններ ստեղծվեցին քիմիական արդյունաբերության նոր, առաջադիմական ճյուղերի զարգացման համար, որոնք, իրենց հերթին, փոխելով ծանր արդյունաբերության ճյուղային կառուցվածքը, հնարավոր դարձրին թեթև արդյունաբերության արագաթափ զարգացումը։

Արտադրության տեմպերը բարձրացնելու և ռացիոնալ կառուցվածք ստեղծելու գործում կարևոր նշանակություն ունեն հումքի, նյութերի և վառելիքի առավել առաջադիմական նորմաների ներդրումը և, դրա շնորհիվ, նյութական ռեսուրսների տնտեսումը։

ՍՍՌՄ արդյունաբերության արտադրանքի ինքնարժեքի մեջ նյութական ծախսերը կազմում են 73,4 տոկոսը, այսինքն՝ մոտ երեք քառորդը։ Այդ նշանակում է, որ նյութական ռեսուրսների մեկ տոկոսի տնտեսումը արտադրանքի ինքնարժեքը կիջեցնի 7,3 տոկոսով։ Մեր ողջ արդյունաբերության նյութական ծախսերի մեկ տոկոսի կրճատումը միլիարդներ կտնտեսի։ Արդյունաբերության մեջ հումքի, նյութերի, վառելիքի ու էլեկտրաէներգիայի պրոգրեսիվ նորմաների կիրառումը, դրա հիման վրա նյութական ռեսուրսների տնտեսումը ո՛չ միայն կբարելավի արդյունաբերության ճյուղային կառուցվածքը, այլև լայն հնարավորություն կընձեռի ժողովրդական տնտեսության կարևոր հարցերը լուծելու։

Արտադրանքի միավորի վրա նյութերի ծախսման նորմաների կրճատումը համազոր է առանց կապիտալ ներդրումների արդյունաբերության հումքային բազայի ընդարձակման։ Դրա հետ միասին նորմաների կրճատումը կնշանակի արտադրանքի նույն ծավալի արտադրության համար օգտագործել ավելի քիչ նյութեր, որոնց մշակման ու վերամշակման համար կպահանջվի ավելի փոքր կենդանի աշխատանք։ Նյութերի, վառելիքի և էլեկտրաէներգիայի խնայողության գործում բացառիկ կարևոր է արտադրության մեջ նորագույն տեխնիկայի և առաջադիմական տեխնոլոգիայի կիրառումը։ Այսպես, տեխնիկական ու տեխնոլոգիական նոր սխեմաների կիրառման շնորհիվ հնարավոր եղավ էլեկտրաէներգիայի արտադրության վրա ծախսվող վառելիքը կիսով չափ կրճատել (1 կվտ ժամ էլեկտրաէներգիայի արտադրության վրա 500 գրամ-վառելիքի փոխարեն ծախսել 250 գրամ)։ Դրանով փոխվում են վառելիքի արդյունաբերության ու էլեկտրաէներգիա արտադրող ճյուղերի հարաբերակցությունները։

Կիրառելով առաջադիմական տեխնիկա, կատարելագործելով արտադրության տեխնոլոգիան և դրա հիման վրա ռացիոնալացնելով արդյունաբերության ճյուղային կառուցվածքը, 1966—1970 թթ. կմեծանա ՍՍՌՄ արտադրական պոտենցիալը, կբարձրանա ժողովրդի կենսամակարդակը։

Գ. ՄԿՐՏՉՅԱՆ

# ՆՊԱՏԱԿ ԿԱՏԵԳՈՐԻԱՅԻ ՄԱՐՔՍ-ԼԵՆԻՆՅԱՆ ԸՄԲՌՆՈՒՄԸ

Մինչմարքսյան փիլիսոփայական մտքի պատմության մեջ նպատակ, միջոց և գործողություն կատեգորիաների մասին շատերն են խոսել։ Նպատակի մասին, հատկապես, խոսել են թելեոլոգները։ Իսկ Հեգելը, մասնավորապես, «Փիլիսոփայության ներածություն», «Տրամաբանություն», «Ոգու ֆենոմենոլոգիա» և մի շարք այլ աշխատություններում օբյեկտիվ իդեալիզմի դիրքերից վերլուծել է նպատակ, միջոց և գործողություն կատեգորիաները։ Ընդ որում, այդ կապակցությամբ նա մի շարք հանճարեղ կռահումներ է արել։ Սակայն, նպատակ, միջոց և գործողություն կատեգորիաների գիտական լուսաբանումը տվել են մարքսիզմ-լենինիզմի կլասիկները։ Մարքսն այդ կատեգորիաների մասին խոսել է գլխավորապես Կապիտալում, Էնգելսը՝ Բնության դիալեկտիկայում, իսկ Լենինը՝ Փիլիսոփայական տետրեր, Ի՞նչ անել, Սոցիալ-դեմոկրատիայի երկու տակտիկան դեմոկրատական ռևոլյուցիայի մեջ և այլ աշխատություններում։

Հետհոկտեմբերյան շրջանում մեր փիլիսոփայական գրականության մեջ նպատակի, միջոցի և գործողության հարցերը մասամբ են լուսաբանվել. տարիներ շարունակ դրանք չեն արժանացել սովետական փիլիսոփաների պատշաճ ուշադրությանը և բազմակողմանի չեն վերլուծվել։ Այդ ուղղությամբ որոշակի աշխատանք է տարվում միայն վերջին տարիներս։

***

Նպատակը գիտակցված որոշակի պահանջ է, ըղձանք, ցանկություն, գոյություն չունեցողից և գոյություն ունեցողը գիտակցաբար մեր պահանջմունքներին համապատասխանեցնելու ձգտում, ցանկություն։ Մարդու գիտակցության մեջ աշխարհի բազմազան երևույթների ակտիվ արտացոլումը պարունակում է նպատակի հնարավորություն, որն իրականություն է դառնում որոշակի պայմաններում։ Անբավականությունը, դժգոհությունը դառնում են մարդու պրակտիկ պահանջմունքների արտահայտման ձև, որի հիմքն առկա իրականության անհամապատասխանությունն է այդ պահանջմունքներին։ «...Աշխարհը չի բավարարում մարդուն, և մարդը իր գործողությամբ որոշում է փոխել այն»

(Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 38, էջ 261)։ Դժգոհությունը ծնվում է ներկայից և հենվում ներկայի իմացության վրա, իսկ ներկայի իմացությունը հնարավոր է անցյալը գիտենալու դեպքում։ Ուրեմն, նպատակ հասկացությունը բովանդակում է ծավալվող ներկայի իմացումը անցյալը գիտենալու հիման վրա։ Իսկ առանց անցյալի փորձը ընդհանրացնելու և ներկան գնահատելու, ապագայի գաղափարը, նրա մտային պատկերը և ձգտումը դեպի այդ ապագան, անիմաստ կլինեն։ Այսպիսով, նպատակը իմացության տեսակետից ներկայի իմացությունից բխող ապագայի կանխատեսումն է՝ որոշակի պահանջմունքի համեմատ անցյալը գիտենալու հիման վրա։ Այսինքն՝ այն մի մտահանգում է, որի նախապայմանները անցյալն ու ներկան են, իսկ եզրակացությունը՝ ապագան։

Անօրգանական աշխարհում չկան նպատակ, նպատակահարմարություն։ Դրանք հատուկ են միմիայն օրգանական աշխարհին։ Ըստ դիալեկտիկական մատերիալիզմի կան նպատակահարմարության՝ որակապես տարբեր այնպիսի ձևեր, ինչպիսիք են՝ օրգանական-բիոլոգիական նպատակահարմարությունը (բիոլոգիական ու ֆիզիոլոգիական պրոցեսները, բույսերի և կենդանիների նպատակահարմար գործողությունն ու կազմությունը) և հասարակական նպատակահարմարությունը (հասարակության կառուցվածքն ու մարդկանց նպատակասլաց գործունեությունը)։ Այս ձևերի համար ընդհանուրն այն է, որ երկուսի հիմքում ընկած են օբյեկտիվ պատճառական կապերը, որոնց առանձնահատկություններով էլ որոշվում են նրանց տարբերությունները, իսկ նպատակահարմարության ծագման նախապատճառն ընկած է մատերիայի զարգացման անսպառ ձևերի փոխներգործության հիմքում։

Նպատակի գաղափարը երևան է եկել որպես մարդկային մտքի պատմական զարգացման արդյունք։ Նախամարդն այն ձեռք է բերել աստիճանաբար, բնության ու իր նմանների հետ որոշակի հարաբերությունների մեջ մտնելով։ Այդ պրոցեսում նախամարդու մոտ առաջանում է գիտակցությունը, որպես արտաքին աշխարհի արտացոլում։ Նա սկսում է գիտակցել արտաքին աշխարհի օրինաչափությունները, պատճառական կապերը։ Գիտակցության առաջացումն էլ հենց նպատակի ու նպատակասլաց գործունեության ծագումն է, սեփական գործունեության արդյունքը գիտակցելը, արտաքին աշխարհի անհրաժեշտությանը գիտակցական, նպատակահարմար վերաբերմունք ցույց տալը։ Գիտակցությունն ու նպատակը սկսում են լուսավորել նախամարդու գործունեության ճանապարհը։

Հասարակական նպատակահարմարությունը, կապված լինելով օրգանական աշխարհի հետ և հանդիսանալով նրա օրինաչափ զարգացման արդյունքը, պատճառականության բարձրագույն ձևն է, մարդու և արտաքին իրականության միջև եղած փոխներգործության դրսևորումը։ Սուբյեկտի կենսադրսևորման այդ ձևը որակապես տարբերվում է բուսական ու կենդանական աշխարհում գոյություն ունեցող օրգանական-բիոլոգիական նպատակահարմարությունից։ Այդ տարբերության էությունն այն է, որ նպատակահարմարությունը հասարակության մեջ կապված է նպատակի ու նպատակասլաց գործունեության հետ։ Հասարակական նպատակահարմարությունն արդեն ներառնում է նպատակը, քանի որ այն դեպի նպատակի իրականացումն ընթացող գործունեություն է։ Ուրեմն, նպատակահարմարությունը դրսևորվում է գործունեության ու արդյունքի մեջ և որոշակի նպատակ է ցույց տալիս։



Եթե կենդանական ու բուսական աշխարհում նպատակահարմարությունը հանդես է գալիս միայն օբյեկտիվորեն, օրգանիզմների անգիտակից գործողությամբ, ապա հասարակական կյանքում այն իր էությամբ, բովանդակությամբ արմատապես փոխվում է և գիտակցական բնույթ ստանում։ Նպատակահարմարությունն այստեղ դրսևորվում է և՛ օբյեկտիվորեն, և՛ սուբյեկտիվորեն։ Նպատակահարմարություն են ցույց տալիս նպատակը, գործունեությունն ու արդյունքը։ Ահա թե ինչու հասարակական կյանքին հատուկ նպատակահարմարությունը արմատապես տարբերվում է նույնիսկ բարձրագաս կենդանիներին հատուկ հարաբերական նպատակահարմարությունից։ Էնգելսը մատնանշում էր, որ բնության մեջ «ոչ մի տեղ չկա գիտակցված, ցանկալի նպատակ» (Ֆ. Էնգելս, «Լ. Ֆոյերբախը և գերմանական կլասիկ փիլիսոփայության վախճանը», Երևան, 1961, էջ 78—79), բացի կույր ու անգիտակից գործող ուժերից։ Միայն մարդիկ են, որ հասարակության մեջ «գործում են կշռադատությամբ կամ կրքի ազդեցության տակ, որոնք իրենց առջև դնում են որոշակի նպատակներ։ Այստեղ ոչինչ չի կատարվում առանց գիտակցված մտադրության, առանց ցանկալի նպատակի» (Նույն տեղը, էջ 79)։

Նպատակի առաջացման հիման վրա մարդկային հասարակության ու բնության միջև երևան է գալիս մի նոր, ավելի բարձր ձևի փոխներգործություն, այսինքն՝ բնազդային, տարերային փոխներգործությունն ու գործողությունը դառնում են գիտակցված։ Բոլոր կենդանիներն արտաքին միջավայրի վրա ազդում են անգիտակցորեն, գոյության պահպանման բնազդային գործողությամբ։ Մարդիկ այս հարցում արմատապես տարբերվում են կենդանուց։ Նրանք ո՛չ միայն կարող են գիտակցել արտաքին բնությունը, նրա երևույթները, տարերային ուժերն ու պրոցեսները, այլև գիտակցական գործունեությամբ ստեղծել համապատասխան պայմաններ և բնությունը ծառայեցնել իրենց նպատակներին։

Մարդը կենդանուց «տարբերվում է ոչ միայն նրանով, որ փոխում է բնության տվածի ձևը. բնության տվածի մեջ նա միաժամանակ իրականացնում է իր գիտակցական նպատակը...» (Կ. Մարքս, «Կապիտալ», հ. 1, էջ 189)։ Նա ոչ միայն գիտակցում է արտաքին աշխարհից ստացած ներգործություններն ու դրանց ազդեցության տակ առաջացած պահանջները, այլև վերջիններիս տեսանկյունից գնահատում իրականությունը, որոշում նրա զարգացման հնարավորությունները և առաջադրում համապատասխան նպատակներ։

Նպատակը կարելի է քննարկել երկու տեսանկյունից՝ գոյաբանական և իմացաբանական։ Գոյաբանական տեսանկյունից այն իր բովանդակությամբ օբյեկտիվ է, այսինքն՝ նրա ծագման աղբյուրն օբյեկտիվ իրականությունն է։ Երբ խոսում ենք նպատակի մասին, առաջին հայացքից թվում է, թե այն ինքնին, իրականությունից անկախ գոյություն ունեցող մի բան է։ Ինչպես Մարքսն էր ասում, երբ «նյութի կյանքն իր իդեալական արտացոլումն է գտել, կարող է թվալ, թե մեր առջև ապրիորական կոնստրուկցիա է» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտ. երկ., հ. 1, էջ 553)։ Բայց «Իրականում մարդու նպատակները օբյեկտիվ աշխարհի ծնունդն են,— գրել է Լենինը,— և ենթադրում են այն,— այն գտնում են որպես տրված, առկա բան։ Բայց մարդուն թվում է, թե իր նպատակները աշխարհից դուրս են վերցված, աշխարհից անկախ են («ազատություն»)» (հ. 38, էջ 230)։ Նպատակների ձևերը բազմազան են ու բազմա-

պիսի, բայց, չնայած դրան, բոլորի համար ընդհանուրն այն է, որ նրանք իրենց բովանդակությամբ օբյեկտիվ են։

Երբ նպատակը իմացաբանական տեսանկյունից ենք դիտում, տեսնում ենք, որ այն սուբյեկտիվ է։ Նպատակը գործունեության արդյունքի նախապատկերն է, պահանջմունքի առարկայի կամ երևույթի իդեական կերպարը մարդու գիտակցության մեջ։ Այլ կերպ ասած, նպատակը՝ իմացաբանական տեսանկյունից, մարդու կոնկրետ պահանջմունքներին համապատասխանող այն առարկայի մտային պատկերն է, որը դեռ բյուրեղանալու, մարմնավորվելու է որպես մարդու գործունեության արդյունք։ Մարդու մեջ ծագած պահանջմունքի գիտակցումը հանգեցնում է պահանջմունքը բավարարելու առարկան, երևույթը իդեապես ստեղծելուն, այսինքն՝ նպատակի մշակմանը։ Նպատակը՝ իմացաբանական տեսակետից, միշտ էլ հանդես է գալիս որպես ապագա իրականության իդեական պատկեր։ Մարդը գործունեության արդյունքին հասնելուց առաջ իդեապես արդեն կառուցում է այն իր գլխում. «Աշխատանքի պրոցեսի վերջում ստացվում է այն հետևանքը,— գրել է Մարքսը,— որն արդեն կար աշխատողի պատկերացման մեջ այդ պրոցեսն սկսելիս, այսինքն՝ իդեալապես» (Կապիտալ, հ. 1, էջ 189)։

Նպատակի ծագման պատճառը իրականության ազդեցությամբ ձևավորված պահանջմունքներն են, իսկ աղբյուրը՝ այդ իրականությունն ու նրա մեջ եղած օբյեկտիվ հնարավորությունները։ Իմացաբանական տեսակետից նպատակն իր մեջ բովանդակում է ո՛չ միայն պահանջմունքի գիտակցումն ու դրան համապատասխանող առարկայի կամ երևույթի իդեական պլանը, այլև այն օբյեկտիվ հնարավորությունների հաշվառումը, որոնց օգնությամբ իրագործվում է նպատակը և բավարարվում պահանջմունքը։ Ուրեմն, իմացաբանորեն նպատակը մարդու մոտ ծագած պահանջմունքի բավարարման ձըգտման ու այն իրականացնելու հնարավորությունների իմացման միասնությունն է։ Այդ հնարավորությունների ճշգրիտ իմացումից ու հաշվառումից է կախված նպատակադրման ռեալ լինելը։

Նպատակի սուբյեկտիվ կողմը ոչ թե ժխտում, այլ հաստատում է նրա բովանդակության օբյեկտիվությունը։ Նպատակը՝ սուբյեկտիվ կողմից, իրականության վրա հենվող ապագայի վերաբերյալ մի այնպիսի ծրագիր է, որի տարրերը թեև առկա են կամ գտնվում են լինելիության պրոցեսում, բայց դեռ մի ամբողջականություն չեն կազմում։ Այսպես, օրինակ, տունը կառուցելուց առաջ անհրաժեշտ բոլոր նյութերը կան։ Տան պլանը սուբյեկտիվ նպատակ է։ Կառուցման գործողությունը (անջատ-անջատ նյութերի միացումը) սուբյեկտիվ նպատակի իրականացման պրոցեսն է։ Այսպիսով, նպատակի սուբյեկտիվ և օբյեկտիվ կողմերը ո՛չ միայն կապված են իրար հետ, այլև անխզելի միասնություն են կազմում։ Բխելով իրականությունից և հանդես գալով որպես այդ իրականությունը ցանկալի ձևով վերափոխելու գիտակցական պլան, նպատակն իր երկու կողմերով էլ կախված է նախընթաց պրակտիկայից, այդ էտապում ձեռք բերած փորձից։

Նպատակադրումը կարող է լինել ինչպես էմպիրիկ, այնպես էլ ռացիոնալ իմացության արդյունք։ Միայն էմպիրիկ իմացությամբ առաջադրվող նպատակը սահմանափակ է։ Էմպիրիկ իմացությունը, ինչպես հայտնի է, երևույթների սևեռումից այն կողմ չի անցնում, ուրեմն և չի բացահայտում դրանց ներքին ընդհանուր կապակցությունները։ Նման իմացության վրա



հիմնված նպատակադրումն իրականության դիալեկտիկական էությունից չի բխում։ Այն ելակետ ընդունելով եզակին, աչքաթող է անում հատկականը և համընդհանուրը։ Ի վիճակի չլինելով ընդգրկել գոյություն ունեցող բազմազանությունը և բացահայտել դրա հիմքում ընկած օրենքները, կառչում է անմիջականից, վերցնում նրա մի կողմը միայն։ Եվ, որովհետև նպատակադըրման այդ եղանակը հնարավորություն չի տալիս խորանալու երևույթների էության մեջ, բարձրանալու եզակիի, զգայականի աստիճանից, ապա այն մարդուն միայն մակերեսային, աղքատ գիտելիքներ է տալիս և հրապուրելով գործունեության անմիջական արդյունքով, զրկում նրան հեռավոր հետևանքները տեսնելուց։

Նման գիտելիքների վրա հենվող կանխատեսումը գիտական, ստույգ կանխատեսում չէ, և, բնական է, նրա օգնությամբ առաջադրված նպատակներն էլ չեն կարող դուրս գալ անմիջականի սահմաններից։ Էմպիրիկ իմացությունը, անկասկած, որոշակի դեր ունի նպատակի առաջադրման ու իրականացման պրոցեսում։ Հայտնի է, որ հենց դրանից է սկսվել նախնադարյան մարդու ամեն մի գիտակցական գործունեություն։ Առանց էմպիրիկ փաստերի չկա կանխատեսում, չկա նպատակ։ Վերացական մտածողությունը իրականության հետ կապվում է հենց էմպիրիկ փաստերի միջոցով։

Առօրյա կյանքում, գործողության նեղ շրջանակներում էմպիրիկ իմացությունը կարող է որոշակի կիրառություն ունենալ, բայց երբ խոսում ենք նպատակի՝ որպես կատեգորիայի մասին, նկատի ունենք ո՛չ միայն նրա առօրյա կիրառությունը, այլ նրա համընդհանուր իմաստը՝ լայն առումով, տրամաբանական բովանդակությունը։ Իսկ այդ կարող է հենվել միայն ու միայն նախորդ փորձում, պրակտիկայում ձեռք բերված նվաճումներով հագեցած գիտական իմացության վրա։ Իսկ գիտականը զգայության ռեալ փաստերի վրա հենվող և այդ փաստերն ընդհանրացնող ռացիոնալ իմացությունն է։ Միայն այսպիսի իմացությունը կարող է մարդուն տալ ապագայի ճշգրիտ պատկերը, հնարավորություն տալ գիտակցելու նրա գործունեության հեռավոր հետևանքները։

Ռեալ նպատակադրումը իր պահանջներն ունի. նախ՝ պետք է հենվել ռեալ փաստերի, անցյալի փորձի ընդհանրացման և ներկայի բազմակողմանի իմացության վրա։ Անհրաժեշտ է վերլուծել այդ փաստերը, բացահայտել դրանց միջև եղած հակասություններն ու պայքարը, և, ըմբռնելով երևույթների ներքին դինամիկան, ինքնաբուխ շարժումը, բացահայտել այդ շարժման, զարգացման ընթացքի ներքին օրինաչափությունը, հակադիր կողմերի զարգացման ու բախման արդյունքները և այլն։ Այս պահանջները կարող է բավարարել միայն գիտական իմացությունը, որն անմիջականի, զգայականի շըրջանակներում չի մնում, այլ, թափանցելով երևույթների էության մեջ, բացահայտում է նրանց ներքին կապակցությունները, ընդհանուր օրինաչափությունները, կանխորոշում նրանց փոխներգործության մոտակա ու հեռավոր հետևանքները և մարդուն հնարավորություն է տալիս առաջադրելու ռեալ նպատակներ։ Մարդը միայն այդպիսի իմացության օգնությամբ կարող է դուրս գալ եզակիի սահմաններից, լիովին ընդգրկել օբյեկտիվ աշխարհը՝ իր բազմաթիվ ու բազմազան օրինաչափություններով։

Դիալեկտիկական-մատերիալիստական իմացության շնորհիվ միայն պարզվեցին անցյալի, ներկայի և ապագայի միջև եղած համակողմանի օբյեկ-

տիվ կապն ու պայմանավորվածությունը։ Դիալեկտիկական իմացությունն իրականությունը բազմակողմանի գնահատելու, նրա զարգացման տենդենցները չափելու նոր մասշտաբ է, ապագան գիտականորեն կանխատեսելու, ճշմարիտ նպատակներ առաջադրելու և իրականացնելու նոր միջոց։ Գիտականորեն առաջադրված նպատակն իր մեջ արդեն ունի ապագայի պատկերը, դրա գիտակցումն ու գիտակցորեն իրականացնելու հնարավորությունը։ Գիտական իմացությունը ռեալ նպատակադրման առաջնահերթ պայմանն է։ Բայց դրանով չի ավարտվում գիտական իմացության նշանակությունը։ Այն մեծ դեր է խաղում նաև նպատակի ու նրա կենսագործման հնարավորությունների ընտրության գործում։ Մարդը ազատ է ընտրելու նպատակներն ու հնարավորությունները միայն այն դեպքում, եթե, մի կողմից՝ ճիշտ է գիտակցում իր պահանջմունքները, մյուս կողմից՝ այդ պահանջմունքները բավարարող օբյեկտիվ հնարավորությունները։

Վերոհիշյալից երևում է, որ գիտական իմացությունն ու նպատակը ակտիվ, էմոցիոնալ միջոց են ապագան ճշմարտացի կանխատեսելու, նպատակները և դրանց հասնելու հնարավորությունները որոշելու և ըստ այդմ էլ՝ աշխարհը վերափոխելու գործում։ Կանխատեսումն ու նպատակադրումը միայն մարդուն են հատուկ։ Ճիշտ է, գիտակցությունը, որպես կանոն, ետ է մնում կեցությունից, սակայն, այդ դեռ չի նշանակում, թե այն կուրորեն հետևում է կեցությանը։ Ապագայի կանխատեսումը հենց խոսում է այն մասին, որ գիտակցությունը կարող է նաև առաջ անցնել կեցությունից։ Կանխատեսել ապագան՝ նշանակում է մտքով առաջ անցնել ներկայից, դուրս գալ նրա սահմաններից ու տեսնել այն ապագա իրականությունը, որը, դեռ որպես հնարավորություն, գտնվում է ներկայի մեջ։ Այդ փաստը վկայում է մարդու գիտակցության ստեղծագործական բնույթի մասին, այն մասին, որ նպատակադրման պրոցեսում իրականությունը մարդու ուղեղում արտացոլվում, գիտակցվում և մտովի ստեղծագործվում է։

Հաղթահարելով նախորդ մատերիալիզմի և իդեալիզմի սահմանափակությունն ու միակողմանիությունը, մարքսիզմի կլասիկները գիտականորեն բացահայտեցին մարդկանց գիտակցության ու նպատակների ակտիվ ստեղծագործական բնույթի ճշմարիտ իմաստը։ Բազմիցս ընդգծելով ճշմարիտ գաղափարների, հայացքների ու նպատակների ակտիվ դերը իրականությունը վերափոխելու գործում, նրանք ցույց տվեցին, որ գոյություն ունեցողը իրականում վերափոխելուց առաջ, մարդն այն իդեապես վերափոխում է իր գլխում։ «Բնության արտացոլումը մարդու մտքի մեջ,— գրել է Լենինը,— պետք է հասկանալ ո՛չ թե «մեռյալ», ո՛չ թե «աբստրակտ», ո՛չ թե առանց շարժման, ո՛չ թե առանց հակասությունների, այլ շարժման, հակասությունների առաջացման և դրանց լուծման հավերժական պրոցեսում» (Երկեր, հ. 38, էջ 237)։ Նպատակադրման պրոցեսում արտաքին աշխարհն իդեապես վերափոխվում և համապատասխանեցվում է մարդու պահանջմունքներին։ Հենց այդ էր մատնանշում Մարքսը, երբ գրում էր, որ «իդեալականը ոչ այլ ինչ է, քան մարդկային գլխի մեջ փոխադրված և այնտեղ փոխակերպված նյութականը» (Կապիտալ, հ. 1, էջ 20)։

Արտաքին աշխարհի արտացոլումն ու մտովի ստեղծագործումը՝ պրակտիկ գործունեության հիման վրա, այդ աշխարհը վերափոխելու նախապատրաստման պրոցես է, պահանջմունքի առարկայի, երևույթի իդեական պատ-



կերն ստեղծելու և այն իրականացնելու համար պահանջվող գործունեության պլանավորման պրոցես։ Գիտակցության ստեղծագործական բնույթը պետք է դիտել երկու կողմից։ Կարելի է կանխատեսել իրականության զարգացման հեռանկարները, բայց բոլորովին չխառնվել այդ զարգացման պրոցեսին։ Այսինքն՝ նպատակ չդնել որևէ չափով ազդել զարգացման ընթացքի վրա։ Նման կանխատեսումը նույնպես, որոշ իմաստով, մտածողության ստեղծագործական ակտ է, որի մեջ իդեապես բացահայտվում է ապագա իրականության պատկերը։ Սակայն, այդ պասսիվ կանխատեսում է։ Ակտիվ կանխատեսման ժամանակ մարդն ստեղծագործում է կանխատեսած ապագան։ Այսինքն՝ նա իրականությունը ո՛չ միայն արտացոլում է, այլ միաժամանակ մտովի համապատասխանեցնում իր պահանջմունքներին և, իր գործունեությունը միացնելով իրականության զարգացմանը, կանխատեսում է դրանց արդյունքն ու առաջադրում համապատասխան նպատակ։ «Մարդու գիտակցությունը ոչ միայն արտացոլում է օբյեկտիվ աշխարհը, այլև կերտում այն» (Լենին, Երկեր, հ. 38, էջ 260)։ Գիտակցության ակտիվ, ստեղծագործական բնույթն ավելի որոշակի հանդես է գալիս նպատակի մեջ։ Նպատակը օբյեկտիվ աշխարհի առարկաների ու երևույթների արտացոլումը հանդիսացող զգայությունների, ընկալումների, պատկերացումների ու հասկացությունների սինթեզն է և ստացված արդյունքի կանխատեսումը։ Նպատակադրման պրոցեսը իրականությունն արտացոլելու յուրատեսակ ձև է, գոյություն ունեցողը՝ իդեապես ստեղծագործելու և կոնկրետացնելու պրոցես։

Մարդն անընդհատ ձգտում է վերափոխել աշխարհը։ Նա իր պահանջմունքներով ու ցանկություններով, երազանքներով ու ձգտումներով, իր ամբողջ էությամբ, դրսևորվում է նպատակների մեջ։ Նպատակն ինքնին խտացված պահանջ է, կամք, ցանկություն, եռանդ, ձգտում։ Առանց նպատակի անհնար կլիներ պատկերացնել հասարակական կյանքը, նրա զարգացումը։ Հասարակությունն իր բոլոր կողմերով զարգանում է անընդհատ նպատակներ առաջադրելու և իրագործելու միջոցով։ «Նպատակի ռեֆլեքսը կենսական վիթխարի նշանակություն ունի,— գրել է Պավլովը,— նա մեզնից յուրաքանչյուրի կենսական էներգիայի հիմնական ձևն է... Ողջ կյանքը, նրա բոլոր բարեփոխումները, նրա ամբողջ կուլտուրան դառնում են նպատակի ռեֆլեքս, արվում են միայն մարդկանց կողմից, մարդիկ, որոնք ձգտում են կյանքում իրենց առաջ դրած այս կամ այն նպատակին... Ընդհակառակը, կյանքը դադարում է... հենց որ չքանում է նպատակը... Մարդկային կյանքի նպատակներն անսահման են ու անսպառ...» (И. П. Павлов. Полн. собр. трудов, т. 3, стр. 245)։

Նպատակն ակտիվ է, գործելու ծրագիր է այն մասին, թե ապագան ներկա դարձնելու համար ի՞նչ պայմաններ պետք է ստեղծվեն, թե ո՞րն է մարդու դերն ապագան իրականացնելու գործում և ի՞նչ միջոցներ է նա գործադրելու այդ նպատակին հասնելու համար։ Մարքսի բառերով ասած՝ նպատակը որպես օրենք որոշում է մարդու գործունեության եղանակն ու բնույթը, ցույց տալիս նրա անելիքները, լուսավորում նրա ճանապարհը։ Կոնկրետացնելով արտաքին աշխարհի հետ ունեցած մարդու հարաբերությունը, նպատակը դառնում է այդ հարաբերության չափն ու մասշտաբը։ Որպես օրենք, որպես մարդկային հասարակության համընդհանուր հարաբերություն այն դառնում է հասարակական կյանքի օրինաչափ զարգացման պրոցեսի բարձրագույն ինքնակարգավորող ուժը։

Հասարակական կյանքում բոլոր նպատակները միատեսակ ծավալ ու բովանդակություն, միատեսակ արժեք ու նշանակություն չունեն: Որոշ նպատակներ մյուսների համեմատությամբ ավելի ընդհանուր են կամ գլխավոր և կազմում են բազմաթիվ առանձին մասնավոր, երկրորդական նպատակների միասնություն: Նպատակներն ըստ տեսակների հիմնականում լինում են վերջնական ու անմիջական, գլխավոր ու երկրորդական, ընդհանուր և մասնավոր: Վերջնական նպատակն արտահայտում է որոշակի տևական ժամանակաշրջանի, որոշակի պատմական դարաշրջանի պայմաններում մարդկանց, սոցիալական խմբերի, դասակարգերի ու պարտիաների և մասսաների առջև դրված հիմնական ու կարևոր պահանջները: Այն իդեապես արտացոլում է այդ պահանջներին հասնելու հնարավորությունները և գործունեության արդյունքը:

Վերջնական նպատակին հասնելու բոլոր հնարավորություններն ու պայմաններն անմիջականորեն գոյություն ունենալ չեն կարող: Դրանց մի մասը դեռ աբստրակտ, պոտենցիալ հնարավորություն է, որը, սակայն, իրականություն է դառնում մարդկանց նպատակասլաց գործունեությամբ: Դրա համար էլ վերջնական նպատակը միանգամից չի իրականացվում, այլ նախապատրաստվում է աստիճանաբար, բազմաթիվ անմիջական ու մոտակա, միջակա ու հերթական նպատակներ առաջադրելու և իրականացնելու օգնությամբ: Այդ նպատակները հանդես են գալիս որպես աստիճանաբար վերջնական նպատակին անցնելու հաջորդական օղակներ:

Վերջնական նպատակը տալիս է հասարակության զարգացման ընդհանուր օրինաչափությունն ու ուղղությունը, իբրև հաջորդող նպատակային գործունեության վերջնական արդյունքը. դրա պարզ պատկերացումը մարդկանց հնարավորություն է տալիս իրենց անմիջական նպատակներն առաջադրելիս խուսափելու սխալներից և բոլոր նպատակներն ուղղելու վերջնականի իրականացմանը: Վերջնականի իրականացման ուղու վրա անհրաժեշտորեն ծագում են այնպիսի հանգուցային կարևոր նշանակություն ունեցող նպատակներ, որոնց իրագործմամբ է միայն հնարավոր դառնում առաջ շարժվել ու մոտենալ վերջնականին: Դրանք գլխավոր նպատակներն են, որոնք արտահայտում են մարդկանց էական, արմատական շահերն ու պահանջները: Գլխավոր նպատակները Լենինը համարում էր շղթայի այն հիմնական օղակները, որոնց կառչելով կարելի է ձեռքում պահել ամբողջ շղթան: Գլխավոր և երկրորդական նպատակների միջև եղած տարբերության բացահայտումը նույնպես կարևոր նշանակություն ունի: Այդ տարբերությունը չիմանալու դեպքում մարդը կարող է մոռանալ իր արմատական շահերը և տարվել միայն ոչ-էական շահեր արտահայտող երկրորդական նպատակներով: Վերջնական և գլխավոր նպատակներն ընդհանուր են, դրանք իրականանում են առանձին, մասնավոր նպատակների իրականացման հիման վրա: Այսինքն՝ ընդհանուր նպատակն իրականացվում է իր մասերի մեջ և հանդես գալիս որպես դրանց ամբողջական արդյունք:

Նպատակներն իրենց բնույթով կարող են լինել անհատական, կոլեկտիվ-խմբային, դասակարգային և ընդհանուր-հասարակական: Մարդկանց պահանջմունքներն ու շահերն անմիջականորեն կապված են նրանց սոցիալ-տնտեսական պայմանների հետ: Եթե միևնույն հասարակարգում մարդիկ չունեն նույնանման պայմաններ, ապա նրանց մեջ կառաջանան տարբեր պահանջմունքներ ու նպատակներ: Սոցիալ-տնտեսական պայմանները մարդկանց առջև



որոշակի պահանջներ են դնում: Յուրաքանչյուր անհատ դրանք բավարարելու համար (իր շահերի տեսանկյունից) համապատասխան նպատակներ է առաջադրում: Այդ հողի վրա էլ ծագում են կոլեկտիվ-խմբային, դասակարգային և ընդհանուր հասարակական նպատակները: Յուրաքանչյուր դասակարգի անդամների համար ընդհանուրն այն է, որ նրանք այս կամ այն չափով միատեսակ տնտեսական պայմաններ ունեն և դրանցով որոշվող՝ նույնանման շահեր ու պահանջներ: Անկախ այն բանից, թե նրանք գիտակցո՞ւմ են այդ պայմանները և դրանցից ծագող պահանջներն ու նպատակները, թե ոչ, կազմում են դասակարգ: Նախքան նպատակներով միավորվելը, մարդիկ միավորվում են իրենց նյութական դրությամբ ու կենսական պահանջներով: Այսպիսով, դասակարգի ընդհանուր նպատակները ծագում են նրա տնտեսական պայմաններից ու պահանջմունքներից: Նույնը ընդհանուր հասարակական նպատակներին է վերաբերում: Եթե տվյալ հասարակության բոլոր անդամները միատեսակ սոցիալ-քաղաքական պայմաններ ունեն, ապա պետք է ունենան նաև միասնական նպատակներ: Հասարակության օրինաչափ զարգացման տեսանկյունից քննարկելիս պարզվում է, որ անհատների նպատակներն ուղղակի կամ անուղղակի, վերջին հաշվով, շաղկապվում ու միահյուսվում են միմյանց:

Հանդես գալով որպես իրարից կտրված մասնավոր նպատակներ, դրանք ներքուստ, այս կամ այն կերպ ներկայացնում են այն ընդհանուր նպատակը, որ հասարակությունը կարող է առաջադրել իր նյութական ու հոգևոր կյանքի զարգացման տվյալ աստիճանում: Մարդիկ իրենց առջև որոշակի նպատակներ են դնում և իրագործում, սակայն այդ նպատակների խաչաձևումից վերջում իրականացվում է հասարակական ընդհանուր նպատակը, այսինքն՝ մարդկանց անթիվ հակադիր շահերի, կամքերի ու նպատակների բախման մեջ իրականացվում է պատմական անհրաժեշտությունը:

Այդ ցույց է տալիս, որ նպատակն ունի հասարակական բնույթ: Այն հասարակական է և՛ գոյաբանական, և՛ իմացաբանական առումով: Գոյաբանական առումով նպատակը հասարակական է այն իմաստով, որ նրա բովանդակությունը կազմող բոլոր տարրերը (նյութական միջոցներն ու առարկաները, նախընթաց հասարակական պրակտիկան ու փորձը) հասարակական են: Իմացաբանական առումով նպատակը հասարակական է, քանի որ հենց ինքը՝ գիտակցությունը, որի օգնությամբ այն առաջադրվում է, հասարակական արդյունք է: Ընդհանուր հասարակական նպատակները, որպես պատմական անհրաժեշտություն, իրականացվում են կա՛մ տարերայնորեն, կա՛մ գիտակցորեն: Եթե անտագոնիստական հասարակարգերում ընդհանուր հասարակական նպատակներն իրագործվում են անգիտակցորեն, հակադիր շահերի ու նպատակների խաչաձևման հիման վրա, ապա սոցիալիստական հասարակարգում՝ նախօրոք առաջադրված միասնական ռեալ ծրագրերի ու պլանների համաձայն, մասսաների նպատակասլաց գործունեությամբ:

Անհատական և հասարակական նպատակների հարաբերությունը տարբեր հասարակարգերում տարբեր է: Այդ տարբերության հիմքում ընկած են նյութական շահերը: Հակադիր նյութական շահեր ունեցող բոլոր հասարակարգերին բնորոշ է անհատական և հասարակական նպատակների հակադրումը:

Մարքսիզմը նպատակ ասելով, առաջին հերթին, հասկանում է մասսաների նպատակը, հասարակական այն ընդհանուր նպատակը, որն արտահայ-

տում է բոլոր աշխատավորների շահերը: Սակայն, այդ դեռ չի նշանակում, թե նա անտեսում է միլիոնավոր անհատների անմիջական մասնավոր նպատակները: Ընդհանուր և մասնավոր նպատակների միջև բարդ դիալեկտիկական կապ կա: Առանց մասնավոր նպատակների չկա ընդհանուր նպատակ: Ընդհանուր նպատակը լինելով բոլոր մասնավոր նպատակների դիալեկտիկական միասնությունը, իրականանում է այդ միասնության մեջ: Իրենց առջև դրված անմիջական մասնավոր նպատակների իրականացման միջոցով մարդիկ աստիճանաբար նախադրյալներ են ստեղծում ընդհանուր նպատակի իրականացման համար:

Մարքսիզմ-լենինիզմը գտնում է, որ հասարակական և անհատական նպատակների հակադրության հիմքը հասարակական կյանքում եղած նյութական հակասություններն են, որոնք դրսևորվում են մարդկանց բարոյական ըմբռնումներում: Պետք է իրականության մեջ վերացնել այդ հակադրությունը, մտածողության մեջ այն վերացնելու համար: Մարքսն ու Էնգելսը գրել են. «Կոմունիստները չեն առաջ քաշում ու հակադրում ո՛չ էգոիզմը անձնվիրությանը, ո՛չ անձնվիրությունը՝ էգոիզմին և տեսականորեն այդ հակադրությունը չեն ընկալում... նրանք, ընդհակառակը, բացահայտում են նրա գոյության պայմանները, որոնց չքացմամբ ինքնին չքանում է նա» (К. Маркс, Ф. Энгельс, Изд. II, 1955, т. 3, стр. 236):

Սոցիալիստական հասարակարգում անհատական և հասարակական նպատակների փոխհարաբերության պատկերն արմատապես փոխվում է: Այստեղ վերանում է նրանց հակադրության հիմքը՝ արտադրության միջոցների մասնավոր սեփականությունը, հակադիր նյութական շահեր ու պահանջներ ունեցող դասակարգերը: Դրա հիման վրա էլ ստեղծվում է անհատական և հասարակական նպատակների ներդաշնակություն, առաջադրվում են բոլորի համար ընդհանուր հասարակական նպատակներ, և բոլոր անհատական նպատակները գիտակցորեն զուգակցվում են հասարակության բարօրությանը ծառայող ընդհանուր նպատակներին:

Ինչպես ասվեց վերևում, նպատակներն իրենց բնույթով հասարակական են, սակայն բոլոր նպատակները չեն, որ կարող են դրսևորվել հասարակականորեն: Այն նպատակները, որոնք չեն արտահայտում հասարակական պրոգրեսը՝ հասարակական արժեք չունեն և պատմականորեն չեն կարող արդարացվել: Նպատակի արդարացի կամ անարդարացի բնույթը որոշելիս մարդիկ միշտ նկատի են ունեցել իրենց անձնական շահերը: Բայց, քանի որ այդ շահերը ամեն մի անհատի մոտ, վերջին հաշվով, դասակարգային են եղել, հասկանալի է, որ նպատակի բնույթը միշտ էլ որոշվել է դասակարգային շահերով:

Նպատակն արդարացի է ու ճշմարիտ, եթե այն առաջադիմական է, անհրաժեշտ, ճիշտ է վերարտադրում իրականության զարգացման ընթացքը և ամբողջապես ելնում է այդ ընթացքը տնօրինող առաջավոր դասակարգի շահերից ու պահանջներից: Ամենաառաջավոր և ամենահեղափոխական դասակարգի՝ պրոլետարիատի, ինչպես դասակարգային շահերն ու պահանջները, այնպես էլ դրանցից բխող նպատակներն ամբողջովին համընկնում են պատմության զարգացման օբյեկտիվ ընթացքին: Պրոլետարիատը իր առաջադրած նպատակներով արտահայտում է բոլոր աշխատավորների շահերը, ձգտում անընդհատ վերափոխել իրականությունը և մինչև վերջ հետևողականորեն ոչնչացնել իր դարն ապրած ամեն ինչ:

# Պարտիական կյանք

## ՍՏՈՒԳԵԼ ԳՈՐԾԻ ԿԱՏԱՐՈՒՄԸ

ՍՄԿՊ XXIII համագումարը, որն իրավամբ հանդիսացավ ժամանակակից քաղաքական կյանքի գլխավոր, կարևորագույն իրադարձությունը, հոյակապ խնդիրներ առաջադրեց տնտեսական և կուլտուրական շինարարության բնագավառում: Համագումարի պատմական որոշումների կենսագործման կապակցությամբ մեծապես աճում են պարտիայի ու նրա տեղական կազմակերպությունների դերն ու նշանակությունը, մեծանում նրանց անելիքները:

Համագումարի որոշումների կենսագործման ուղղությամբ առանձնապես մեծ անելիքներ ունեն սկզբնական պարտկազմակերպությունները, որոնք կոչված են ավելի մոտիկից զբաղվելու ձեռնարկությունների ադմինիստրացիայի գործունեության վերահսկողության, կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության, պարտիայի դիրեկտիվների կատարման հարցերով:

Կադրերի ընտրությունն ու առաջխաղացումը,— ասել է ընկ. Լ. Ի. Բրեժնևը Համագումարին՝ Կենտկոմի տված հաշվետու զեկուցման մեջ,— անբաժանելի են ամենօրյա վերահսկողությունից այն բանի նկատմամբ, թե աշխատողները ինչպես են կատարում պարտիայի ու կառավարության դիրեկտիվները, թե նրանք ինչպես են ապահովում իրենց հանձնարարված բնագավառի ղեկավարումը: Կատարման լավ կազմակերպված ստուգումը կադրերի ճիշտ դաստիարակման կարևորագույն միջոցն է: Այն պետք է անցկացվի սիստեմատիկորեն, օգնի վերացնելու սխալները, գտնելու առաջադրված խնդիրների լավագույն, առավել ճիշտ լուծումները:

Պարտիական կազմակերպության վերահսկողության հաջող իրականացումը պայմանավորված է տվյալ պարտկազմակերպության ղեկավարության հմտությամբ ու ձեռներեցությամբ, այն բանով, թե պարտբյուրոն (որպես գործող օրգան) կամ քարտուղարը տեղյա՞կ են ձեռնարկության գործերի իրական վիճակին, գիտե՞ն ձեռնարկության «նեղ տեղերը», չլուծված հարցերը: Այս ամենը պարտկազմակերպության ղեկավարությանը հայտնի կլինի, երբ լավ կազմակերպվի պարտիական ինֆորմացիան, քարտուղարը չկտրվի մասսաներից, խորանա յուրաքանչյուր աշխատողի գործունեության մեջ, վեր հանի թերությունները ու գործիմացորեն ձեռնամուխ լինի դրանց վերացմանը:

Պարտիական վերահսկողության ապահովման գործում մեծ անելիքներ ունեն վերահսկողությունն իրականացնող հանձնաժողովները, որոնք պարտիական կազմակերպությունների, նրանց բյուրոների անմիջական ղեկավարու-

թյամբ ու օգնությամբ կոչված են ժամանակին վեր հանելու և արմատախիլ անելու աշխատանքում եղած թերությունները, պայքարելու պետական կարգապահության խախտումների դեմ։

Այսպես՝ Շահումյանի շրջանի սկզբնական պարտիական կազմակերպությունները վերահսկողության միջոցով նպաստում են պարտիական ու պետական կարգապահության ամրապնդմանը, պետական առաջադրանքների կատարմանը, բարձրացնում պարտիայի, ժողովրդի ու հայրենիքի հանդեպ քաղաքացիական պարտքի զգացումը։ Այդ մասին են վկայում արտադրական այն ցուցանիշները, որ ձեռք են բերել նրանք պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ։ Բավական է նշել, որ շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները արտադրանքի թողարկման յոթնամյա պլանը կատարել են ժամկետից երեք ամիս շուտ՝ երկրին տալով մոտ 20 միլիոն ռուբլու արտապլանային արտադրանք, իսկ 1965 թ. պետական առաջադրանքները՝ դեկտեմբերի 13-ին, երկրին տալով 2 միլիոն 950 հազար ռուբլու արտապլանային արտադրանք։

Լուրջ հաջողությունների հասան նաև շրջանի գյուղատնտեսության աշխատողները, որոնք ո՛չ միայն կատարեցին, այլև գերակատարեցին 1965 թվականի գյուղատնտեսական մթերքների արտադրության և պետությանը վաճառելու՝ սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները։ 1965 թվականի անասնապահական մթերքների արտադրության բարձր ցուցանիշների համար շրջանն արժանացավ ՀԿՊ Կենտկոմի և ՀՍՍՌ Մինիստրների սովետի II մրցանակի և 2000 ռուբլի դրամական պարգևի։ Պետական առաջադրանքների կատարման գործում բեկում է նկատվում նաև շրջանի շինարարական, տրանսպորտային և մյուս կազմակերպությունների աշխատանքում։

Առաջնորդվելով ՍՄԿՊ կանոնադրությամբ, Կենտկոմի հոկտեմբերյան (1964), մարտյան և սեպտեմբերյան (1965) պլենումների որոշումներով, շրջանի շատ սկզբնական պարտիական կազմակերպություններ ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկելու ուսանելի օրինակ են տալիս։

Երևանի էլեկտրոնային հաշվիչ մեքենաների փորձնական գործարանի երիտասարդ կոլեկտիվը արտադրության բնագավառում զգալի հաջողությունների է հասել շնորհիվ այն բանի, որ պարտիական կազմակերպությունը կարողանում է ճիշտ կենսագործել ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկելու իր ֆունկցիան։ Այստեղ ստեղծվել են թողարկվող արտադրանքի որակի բարելավմանը, նոր տեխնիկայի ներդրմանը և արտադրական պրոցեսների մեքենայացմանն ու ավտոմատացմանը, հումքի ու էներգիայի խնայողությանը վերահսկող հանձնաժողովներ։ Գործարանի պարտբյուրոն (քարտուղար Ա. Հարությունյան) սիստեմատիկաբար օգնում ու հաշիվ է պահանջում հիշյալ հանձնաժողովներից. այդ, անկասկած, տալիս է դրական արդյունք։

Բերենք մի օրինակ. դեռևս 1965 թվականի սկզբին գործարանի կոլեկտիվը ձեռնամուխ եղավ «Նաիրի» հաշվիչ մեքենայի իրացմանը։ Սակայն, երբ թողարկվեցին առաջին մեքենաները, դրանց որակի մասին պատվիրատուներից ստացվեցին լուրջ դիտողություններ։ Այդ անհանգստացրեց պարտիական կազմակերպությանը։ Պարտբյուրոյի հանձնարարությամբ արտադրանքի որակը վերահսկող հանձնաժողովը մանրամասն ուսումնասիրեց գործը և զեկուցագիր ներկայացրեց։ Պարզվեց, որ մեքենաների որոշ մասերի կոփվածքները անորակ են, մոնտաժումը անփույթ է արվել։



Պարտիական կազմակերպության որոշմամբ արտադրության այդ տե-
ղամասում մշտական աշխատանքի է ուղարկվում կոմունիստ Գ. Ոսկանյանը.
պարտանդամ, տեխնոլոգ Ռ. Ավագյանը հանձն է առնում մեկ ամսով օգնել
այդ տեղամասին։ Ձեռնարկված միջոցները կարճ ժամանակում տվեցին դրա-
կան արդյունք, ամեն բան կարգի ընկավ։ Այժմ գործարանն արտադրում է
բարձրորակ հաշվիչ մեքենաներ։ Այստեղ ամեն մի կոմունիստ պատասխա-
նատու է հանձնարարված գործի համար և իր բարեխիղճ աշխատանքով օրի-
նակ է ծառայում անպարտիականներին։
Պարտբյուրոն և նրա քարտուղարը խորամուխ են լինում արտադրության
տեխնոլոգիական պրոցեսների մեջ, ուսումնասիրում մարդկանց տրամադրու-
թյուններն ու նրանց հուզող հարցերը, դրանք քննարկում պարտիական ժո-
ղովներում։ 1965 թվականին նախապատրաստվել և պարտժողովի քննարկ-
մանն են դրվել «Պարտիական ու պետական կարգապահության վիճակը գոր-
ծարանում և կոմունիստների խնդիրները», «ՍՄԿՊ կանոնադրական պահանջ-
ների կատարման վիճակը պարտիական կազմակերպությունում և կոմունիստ-
ների խնդիրները», «Ապահովենք կոմունիզմ կառուցող մարդու բարոյական
կոդեքսի պահանջների կատարումը» և արտադրական այլ հարցեր, որոնք, ան-
կասկած, նպաստել են կոմունիստների և բոլոր աշխատողների անձնական
պատասխանատվության բարձրացմանը։
Պարտկազմակերպության քաղդաստիարակչական բազմակողմանի աշխա-
տանքը անհետևանք չի անցնում։ Հաշվիչ մեքենաների գործարանի կոլեկտիվը
աչքի է ընկնում ո՛չ միայն բարձրորակ մեքենաներով, այլև խիստ կազմա-
կերպվածությամբ։ Մարդիկ սիրում են հարազատ գործարանը, աշխատում
նվիրված, աչքի լույսի պես են պահպանում սոցիալիստական սեփականու-
թյունը, հետևում հասարակական կարգ ու կանոնին։
Ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկելու լավ օրինակ է տալիս
նաև սարքաշինական գործարանի սկզբնական պարտիական կազմակերպու-
թյունը (պարտբյուրոյի քարտուղար Ու. Պողոսյան)։ 1965 թվականի հոկտեմ-
բեր, նոյեմբեր ամիսներին այս գործարանում ընկած էր ֆինանսական կար-
գապահությունը. ժամանակին չէր վճարվում աշխատավարձը, որից իրավա-
ցիորեն դժգոհում էին բանվորները։ Առաքման բաժինը չէր կարողանում պատ-
վիրատուներին ժամանակին ուղարկել արտադրված սարքերը, պահեստում
կուտակվել էին գործարանի համար ոչ պիտանի նյութեր։ Նման վիճակը խիստ
անհանգստացրեց ֆինանսական կարգապահությանը, նյութերի խնայողու-
թյանն ու հաշվառմանը վերահսկող պարտիական հանձնաժողովի անդամնե-
րին։ Հանձնաժողովը մանրակրկիտ ստուգեց նշված տեղամասերը։ Պարտբյու-
րոյի ընդլայնված նիստում քննարկվեց ֆինանսական կարգապահության վի-
ճակը գործարանում։ Կոնկրետ միջոցներ ձեռնարկվեցին առաքման բաժնի
հաշվապահության, ինչպես և աշխատանքի ու աշխատավարձի բաժնի գոր-
ծունեության բարելավման ուղղությամբ. դրությունը փոխվեց. այժմ գործա-
րանի պահեստը մաքրվել է տարիների ընթացքում կուտակված ոչ պիտանի
նյութերից, արտադրված սարքերը ժամանակին ուղարկվում են պատվիրա-
տուներին և աշխատավարձն էլ վճարվում է առանց ուշացումների։
Խրախուսելի աշխատանք է կատարել նույն գործարանի պարտիական
կազմակերպության՝ ադմինիստրացիայի գործունեությանը, նոր տեխնիկա-
յի ներդրմանն ու արմատավորմանը վերահսկող հանձնաժողովը։ Մի ժամա-

նակ գործարանում ԼՊՈ—017 սարքը և մի քանի այլ սարքեր թողարկվում էին առանց պետական փորձարկումների: Պատվիրատուները բողոքներ էին գրում նկատված թերությունների մասին: Պարտբյուրոն քննարկեց այդ հարցը և գործարանի ադմինիստրացիայից պահանջեց՝ ժամանակավորապես դադարեցնել հիշյալ սարքերի թողարկումը, մինչև պետական փորձարկող կոմիտեից հատուկ հրահանգավորում ստանալը: Տրեստը հավանություն տվեց սկզբնական պարտկազմակերպության այդ սկզբունքային դիրքին: Բերված օրինակը ցույց է տալիս, որ շատ օգտակար են պարտկազմակերպության խելացի, բանիմաց միջամտությունը դիրեկցիայի գործերին, նրա սխալները շտկելը: Գործարանի պարտիական կազմակերպության բյուրոն լավ է ըմբռնել Վ. Ի. Լենինի այն ցուցումը, որ առանձին ղեկավարների գործունեությունը պետք է զուգակցվի ներքևից եկող վերահսկողությանը: Սկզբնական պարտիական կազմակերպություններում հետևողական վերահսկողությունը հնարավորություն է ընձեռում ժամանակին կանխելու թերություններն ու սխալները և ճիշտ կազմակերպելու աշխատանքը:

Ն. Զարբախի Վ. Ի. Լենինի անվան կոլտնտեսության սկզբնական պարտիական կազմակերպությունը և նրա բյուրոն (քարտուղար Գ. Պետրոսյան) հաշվի են առնում, որ կոլտնտեսության վարչության գործունեության վերահսկողությունն անխզելիորեն կապված է ներկոլտնտեսային դեմոկրատիայի պահպանման ու հետագա զարգացման հետ: Ելնելով դրանից, պարտիական կազմակերպությունը վերահսկողությունն իրականացնում է՝ հենվելով կոմունիստների ու կոլտնտեսային ակտիվի վրա: Պարտկազմակերպությունը, զբաղվելով արտադրության մեջ կոմունիստների ավանգարդային դերի բարձրացման գործով, հասել է այն բանին, որ այժմ հանրային արտադրությանն ակտիվ մասնակցում են ո՛չ միայն բոլոր կոմունիստները, այլև նրանց ընտանիքների աշխատունակ անդամները:

Վերահսկողության պրակտիկ ձևերից մեկն էլ այն է, որ կոլտնտեսության սկզբնական պարտկազմակերպությունը իր ժողովներում, պարտբյուրոյի նիստերում հաճախ անդրադառնում է ինչպես կոլտնտեսականների քաղաքական դաստիարակության, այնպես էլ արտադրության խնդիրներին, քննարկում արտելի առանձին օղակների աշխատանքը:

Պարտիական պատշաճ վերահսկողությունն օգնեց կոլտնտեսությանը՝ գերակատարելու անցած տնտեսական տարվա գյուղատնտեսական մթերքների արտադրության և պետությանը վաճառելու պլանները ու սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները: Կոլտնտեսությունը անցյալ տարի պլանից դուրս երկրին տվեց. խաղող՝ 3080, միրգ՝ 800, բանջարեղեն՝ 2150, կաթ՝ 412, միս՝ 153 ցենտներ: Կոլտնտեսության դրամական եկամուտները այժմ հասել են 574 հազար 629 ռուբլու, 1964 թվականի 427 հազար 727 ռուբլու փոխարեն: Զգալի չափով բարձրացել է մեկ աշխօրի հասանելիքը: Եթե 1964 թվականին այն կազմում էր 4 ռ. 23 կոպեկ, ապա 1965 թվականին հասավ 5 ռ. 74 կոպեկի: Սակայն Ն. Զարբախի կոլտնտեսականները կարող են աշխատել ավելի արդյունավետ և հասնել առավել մեծ հաջողությունների:

Պարտիայի XXIII համագումարը հոյակապ խնդիրներ առաջադրեց կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման ասպարեզում: Ուստի և ավելի են բարձրանում պարտիական կազմակերպությունների դերն ու պատասխանատվությունը պետական պլանների կատարման և աշխատավորների կո-



մունիստական դաստիարակության ոլորտում: Պահանջվում է ավելի լայն ծավալել ներպարտիական դեմոկրատիան, ուժեղացնել պարտիական մասսաների ակտիվությունը:

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյա պլանի իրականացման գործում պարտիական կազմակերպությունների աշխատանքում բացառիկ կարևորություն ունի պարտիայի ու կառավարության դիրեկտիվների կատարման վերահսկողության ուժեղացումը: Այժմ, ավելի քան երբևէ, սկզբնական պարտիական կազմակերպությունները պետք է հմտաբար ու անշեղ կենսագործեն կանոնադրությամբ իրենց տրված վերահսկողության իրավունքը:

Բայց, ցավոք, շրջանում դեռևս կան ձեռնարկություններ, որտեղ անբավարար է պարտիական-կազմակերպական և պարտիական-քաղաքական աշխատանքը: Պատշաճ ուշադրություն չի նվիրվում ձեռնարկության ադմինիստրացիայի գործունեության վերահսկողությանը, որի հետևանքով լուրջ թերություններ են առաջացել ձեռնարկության աշխատանքում: Այդ տեսակետից վիճակը վատ է, հատկապես, կոնյակի, գարեջրի գործարանների, ՀՍՍՌ շինարարության մինիստրության համաշինարարական I տրեստի առանձին վարչությունների սկզբնական պարտիական կազմակերպություններում: Այսպես, օրինակ, Երևանի կոնյակի փործարանի սկզբնական պարտկազմակերպությունը (պարտբյուրոյի քարտուղար Ա. Հարությունյան), ճիշտ չհասկանալով պարտիական վերահսկողության նշանակությունը, բավարարվել է միայն հանձնաժողովներ ստեղծելով: Այստեղ ստեղծվել է սոցիալիստական սեփականության պահպանությանը վերահսկող հանձնաժողով (գործարանում հաճախակի են տեղի ունենում սոցիալիստական սեփականության հափշտակման դեպքեր): Սակայն, վատն այն է, որ պարտիական կազմակերպությունը, հույսը լիովին դնելով այդ հանձնաժողովի վրա, մոռացության է տվել ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկելու իր պարտականությունը: Ըստ երևույթին, այստեղ չեն հասկացել, որ հանձնաժողովներն այն վերահսկող օղակներն են, որոնց միջոցով պարտկազմակերպությունը հնարավորություն է ունենում ժամանակին նկատելու թերությունները, ադմինիստրացիայի միջոցով վերացնելու դրանք: Չպետք է մոռանալ, որ հանձնաժողովներն օգնում են պարտիական կազմակերպություններին ավելի խոր ու մոտիկից վերահսկելու ադմինիստրացիայի գործունեությունը, տեղյակ լինելու ամեն մի իրադարձության:

Կոնյակի գործարանի պարտիական կազմակերպության բյուրոն իր նիստերում ու ժողովներում քիչ է անդրադարձել սոցիալիստական սեփականության պահպանության հարցերին, անբավարար է կազմակերպել ադմինիստրացիայի գործունեության վերահսկողությունը, ինչպես հարկն է չի բարձրացրել պարտիական վերահսկողությունն իրականացնող հանձնաժողովների դերն ու մարտունակությունը. այդ ամենի հետևանքը եղել է այն, որ նույնիսկ առանձին կոմունիստներ սոցիալիստական սեփականության նկատմամբ թույլ են տվել ոտնձգություններ:

Անհրաժեշտ է առաջիկայում ավելի ուժեղացնել կոնյակի գործարանի պարտկազմակերպության կոմունիստների գաղափարական դաստիարակությունը, բարձրացնել կարգապահությունը, պարտիական խիստ պատասխանատվության ենթարկել բոլոր նրանց, ովքեր կոմունիստին անվայել արարքներ են թույլ տալիս, բարձրացնել կոմունիստների պատասխանատվությունը կոլեկտիվի առջև դրված խնդիրների լուծման գործում:

*Պարտիական վերահսկողության հանձնաժողովներից ամեն մեկը պետք է պատասխանատու լինի արտադրության որոշակի բնագավառի համար: Պարտիական վերահսկողությունն իրականացնող հանձնաժողովների աշխատանքների բարելավման ու նրանց մարտունակության բարձրացման գործում մեծ նշանակություն ունի նաև դրանց կազմի ընտրությունը: Հաշվի առնելով այդ, շրջանի սկզբնական պարտիական կազմակերպությունները հանձնաժողովների կազմում հիմնականում ընտրել են այնպիսի կոմունիստների, որոնք իրենց գիտելիքներով, աշխատանքի փորձով ու կազմակերպական կարողություններով ունակ են կատարելու առաջադրված խնդիրները:*

*Ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկող պարտիական հանձնաժողովներին օգնություն է ցույց տալիս պարտիայի շրջկոմը: Հանձնաժողովների ղեկավարները սիստեմատիկաբար մասնակցում են շրջկոմում կազմակերպված սեմինար պարապմունքներին, հրահանգչական խորհրդակցություններին, ուր ստանում են մեթոդական օգնություն, ծանոթանում լավագույն հանձնաժողովների աշխատանքի դրական փորձին:*

*Երևանի «Տնայնագործ» կոմբինատում անբավարար էին նյութական բարիքների հաշվառումն ու հաշվետվությունը, հսկողությունը նյութական պատասխանատու անձանց գործունեության նկատմամբ, որի հետևանքով տեղի էին ունեցել նյութական բարիքների խոշոր շռայլումներ: Շրջկոմի բյուրոյում քննարկվեցին կոմբինատում տեղի ունեցած նյութական արժեքների, պակասորդների, չարաշահումների պատճառները. պարզվեց, որ կոմբինատի ղեկավարությունն առանձին դեպքերում նյութական պատասխանատու պաշտոններում է նշանակել անվստահելի անձանց: Կոմբինատի նախկին դիրեկտոր Մ. Թերզյանը արտադրամասի վարիչ էր նշանակել զանազան հափշտակումների և չարաշահումների համար 3 անգամ դատապարտված Ս. Մելքոնյանին: Նրա ղեկավարած արտադրամասում ժողովրդական վերահսկողության ռեսպուբլիկական կոմիտեն 1964 թ. հայտաբերել էր մեծ չարաշահումներ:*

*Այս բոլորը վկայում է, որ կոմբինատում ցածր է աշխատանքային կարգապահությունը և, որ ամենագլխավորն է, պարտիական կազմակերպությունը ինչպես հարկն է չի վերահսկել, իսկ նրա նախկին քարտուղար Գ. Մարկոսյանը՝ գույքագրման հանձնաժողովի նախագահը, կեղծիքների միջոցով հովանավորել է պետական ունեցվածքը հափշտակողին:*

*Պարտիայի շրջանային կոմիտեի բյուրոն, ելնելով ստեղծված վիճակից, կոմբինատի դիրեկտոր Մ. Թերզյանին, գլխավոր հաշվապահ Ա. Գրիգորյանին ազատեց աշխատանքից, իսկ Գ. Մարկոսյանին՝ պարտիական կազմակերպության քարտուղարի պարտականություններից, նրան ենթարկելով պարտիական տույժի:*

*Պարտիայի ու կառավարության որոշումների կատարման ստուգման, մեր էկոնոմիկայի վերելքի, կարգապահության ամրապնդման համար մղվող պայքարում մեծ անելիքներ ունեն նաև ժողովրդական վերահսկողության շրջանային կոմիտեն և տեղերում նրան աջակցող ժողովրդական հանձնաժողովները: Շրջկոմի և պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ ամենօրյա օգնություն և ղեկավարություն ցույց տալ վերահսկողության հանձնաժողովներին, պաշտպանել ու զարգացնել նրանց նախաձեռնությունը:*

*Պարտիական աշխատանքում և, հատկապես, պարտիական վերահսկողությունն ապահովելու գործում գլխավորը մարդկանց հետ կատարվող աշխատանքն է, կադրերի ճիշտ ընտրությունը: Հետևապես հարկավոր է ճիշտ տեղաբաշխել կադրերը, նրանց դաստիարակել բարձր գաղափարայնության, ազնվության, պարտիական ու պետական կարգապահության ամրապնդման, հանձնարարված գործի նկատմամբ բարձր պատասխանատվության ոգով:*



*Խոսելով պարտիական կազմակերպության վերահսկողության ֆունկցիայի իրականացման մասին, չպետք է մոռանալ, որ այստեղ ևս կարևոր նշանակություն ունի ձեռնարկության պետի, արտադրության ղեկավարի անձնական օրինակը, նրա վերաբերմունքը շարքային աշխատողների նկատմամբ: Այնտեղ, որտեղ ձեռնարկության ղեկավարը անձամբ մասնակցում է պարտիական-կազմակերպական ու քաղաքական աշխատանքին, վերահսկողության կազմակերպմանը, որտեղ ղեկավարը ժամանակին տեղյակ է պահում պարտկազմակերպությանը՝ տնտեսության գործունեության այս կամ այն ետ մնացող բնագավառի մասին, այնտեղ, անկասկած, լավ է կենսագործվում վերահսկողությունը, առհասարակ, լավանում է գործերի վիճակը:*

*Մեր շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվներն ու գյուղատնտեսության աշխատողները պարտավորվել են 1966 թվականի՝ հնգամյակի առաջին տարվա պետական առաջադրանքները կատարել ժամկետից շուտ, բոլոր բնագավառներում գործի վերածել ՍՄԿՊ XXIII համագումարի որոշումները: Պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ լայնորեն ծավալել համագումարի որոշումների մասսայականացումը, դրանք բացատրել յուրաքանչյուր աշխատողի, բարելավել պարտիական-կազմակերպական աշխատանքը, արտադրության բոլոր օղակներում պարտիական վերահսկողությունը կազմակերպել այնպես, որպեսզի պատվով կատարվեն պլաններն ու ստանձնած պարտավորությունները: Դրա համար անհրաժեշտ է բարձրացնել մեքենաների, սարքերի, արտադրանքի բոլոր տեսակների հուսալիությունը, դիմացկունությունը, որակը, ավելացնել ձեռնարկությունների շահութաբերությունը, ամենուրեք հաստատել խնայողության ռեժիմ:*

*Կասկած չի կարող լինել, որ շրջանի պարտիական կազմակերպությունը, հմտորեն կիրառելով պարտիական վերահսկողության բազմազան ձևերն ու մեթոդները, կմոբիլիզացնի աշխատավորների ուժերը պարտիայի XXIII համագումարի որոշումների կենսագործման համար:*

Ս. ԱՐԻՍՏԱԿԵՍՅԱՆ
ՀԿՊ Երևանի կազմակերպության Շահումյանի
շրջկոմի առաջին քարտուղար



# ԿԱՐԵՎՈՐԸ ՀԱՄՈԶՈՒՄՆ Է

Կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարում,— ասված է ՍՄԿՊ ծրագրում,— գաղափարական աշխատանքը գնալով ավելի խոշոր գործոն է դառնում։ Որքան ավելի բարձր է հասարակության անդամների գիտակցականությունը, այնքան ավելի լրիվ ու լայնորեն է ծավալվում նրանց ստեղծագործական ակտիվությունը կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, աշխատանքի կոմունիստական ձևերի և մարդկանց միջև նոր հարաբերությունների զարգացման բնագավառում և, հետևապես, այնքան ավելի արագ ու հաջողությամբ են լուծվում կոմունիզմի կառուցման խնդիրները։

Առաջնորդվելով ծրագրային այս դրույթով, Ազիզբեկովի շրջանի պարտիական կազմակերպությունները մեծ ուշադրություն են նվիրում աշխատավորների կոմունիստական դաստիարակությանը, դասախոսությունների, զեկուցումների, զրույցների, ռադիոյի և մամուլի միջոցով մասսայականացնում պարտիայի ու կառավարության միջոցառումները՝ սոցիալիստական արդյունաբերության և գյուղատնտեսության հետագա զարգացման, աշխատավորների նյութական բարեկեցության բարձրացման ուղղությամբ։

Աշխատավորներն այժմ ավելի, քան երբևէ հետաքրքրվում են մեր երկրի ներքին ու միջազգային դրությամբ, պարտիայի ու կառավարության քաղաքականությամբ։ Տարբեր թեմաներով զեկուցումների ժամանակ ունկնդիրներն աչքի են ընկնում հետաքրքրությունների բազմակողմանիությամբ։

Մեծ նշանակություն է տրվում պարտիայի ու կառավարության յուրաքանչյուր որոշման պրոպագանդմանը։ Այսպես, երբ հրապարակվեց ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան պլենումի որոշումը, պարտշրջկոմը պարտիական կազմակերպությունների և շրջանի ողջ ակտիվի հետ ձեռնամուխ եղավ քաղաքական այդ կարևոր փաստաթղթի լայն պրոպագանդմանն ու մասսայականացմանը։ Շրջկոմի պրոպագանդայի ու ագիտացիայի բաժինը «Գիտելիք» ընկերության շրջանային բաժանմունքի հետ մեկտեղ մշակեց Կենտկոմի պլենումի նյութերի մասսայականացման և ուսումնասիրման թեմատիկ պլան. անցկացվեցին պրոպագանդիստների շրջանային և ագիտատորների փնջային խորհրդակցություններ՝ նվիրված պլենումի նյութերի ուսումնասիրության կազմակերպմանը։ Քաղլուսկաբինետը արտադրական վարչության մասնագետների օգնությամբ պատրաստեց տեղական նյութեր՝ պրոպագանդիստներին և ագիտատորներին օգնելու նպատակով։

Կենտկոմի մարտյան պլենումի որոշումները շոշափում են գյուղական աշխատավորության ամենալայն խավերի շահերը, միլիոնավոր մարդկանց անելիքների մարտական ծրագիր են։



Ուսումնասիրողները գործնական հետևություններ էին անում, ճշտում, որոշում իրենց անելիքները դրանց կենսագործման համար ծավալվող համաժողովրդական պայքարում։ Հաշվի առնելով ագիտացիայի ու պրոպագանդայի վիթխարի դերը, հատկապես, այս ժամանակաշրջանում, այդ աշխատանքներում ներգրավվել են պարտիական, սովետական և տնտեսական շրջանային ու գյուղական ղեկավար կադրեր, «Գիտելիք» ընկերության դասախոսներ ու գյուղական ամբողջ ինտելիգենցիայի լավագույն ուժեր։ Հանդես գալով կոլտնտեսությունների ու սովխոզների պարտիական, կոմերիտական և ընդհանուր աշխատավորական ժողովներում, նրանք պատմեցին պլենումի արդյունքների մասին, կոնկրետ փաստերով ու հաշվումներով ցույց տվեցին աշխատավորությանը, թե պլենումի որոշման կենսագործումը զարգացման ինչպիսի հեռանկարներ է բացում մեր երկրի գյուղատնտեսության համար։

Կոլտնտեսություններում և սովխոզներում պլենումի որոշումների ուսումնասիրման ու մասսայականացման գործում սկզբնական պարտիական կազմակերպություններին օգնում է շրջսովետի կուլտուրայի բաժնի կազմակերպած շրջիկ ավտոակումբը, որն ունի շարժական գրադարան, զեկուցողներ և ագիտգեղարվեստական բրիգադներ։

Կազմակերպելով մարտյան պլենումի նյութերի ուսումնասիրությունն ու մասսայականացումը, շրջկոմը և սկզբնական պարտկազմակերպությունները գյուղական աշխատավորության ուշադրությունը հրավիրեցին գարնան դաշտային աշխատանքների և, ամենից առաջ, գարնանացանը լավ նախապատրաստելու և կազմակերպված անցկացնելու խնդիրների վրա։

Պլենումի որոշումների լայն պրոպագանդումը, պարտիական-կազմակերպական և քաղաքական-մասսայական աշխատանքի ուժեղացումը արտադրական աննախընթաց վերելք առաջացրին շրջանի տնտեսություններում։ Կոլտնտեսություններն ու սովխոզները հաջող անցկացրին գարնանացանը, ցանքերի և այգիների մշակությունը, հանրային անասունների խնամքը, որի շնորհիվ յոթնամյակի վերջին տարին փակեցին առավել աչքի ընկնող ցուցանիշներով։ Այդ մասին խոսվեց գյուղատնտեսության առաջավորների խորհրդակցությունում, որտեղ հանրագումարի բերվեցին անցած տնտեսական տարվա արդյունքները և քննարկվեցին նոր տարվա խնդիրները։

Նոր հնգամյակի առաջին տարվա խնդիրներն ավելի բարդ են, և նշված սահմանագծին հասնելու համար պահանջվում է կազմակերպական դաստիարակչական ավելի մեծ աշխատանք մասսաների շրջանում։

Համոզել, նշանակում է մարդկանց պարզաբանել առաջադրված խնդիրների էությունը, կատարման անհրաժեշտությունը, ցույց տալ լուծման ուղիներն ու միջոցները։ Համոզման մեթոդի հաջողությունը կախված է նրանից, թե պարտիական կազմակերպությունը, պարտիական, սովետական և տնտեսական ղեկավար աշխատողներն ինչպես են կապված աշխատավորական լայն մասսաների հետ, վայելո՞ւմ են հեղինակություն, կարողանո՞ւմ են իրենց խոսքով համոզել, ոգևորել, աշխատանքային սխրագործության մղել ունկնդիրներին։

Հաշվի առնելով այդ, պարտիայի շրջանային կոմիտեն մեծ ուշադրություն է նվիրում ղեկավար կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակման հարցերին։ Այսպես շրջկոմի անդամները, քարտուղարները և մնացած պարտիական աշխատողները հաճախակի ելույթ են ունենում ձեռնարկություն-

ներում, շինարարական կազմակերպություններում, հատկապես Ջերմուկի առողջարանի, Արփա—Սևանի շինարարության բանվորների առջև, կոլտնտեսություններում ու սովխոզներում, սրտաբաց զրուցում են մարդկանց հետ, հաշվի առնում նրանց կարծիքն ու առաջարկությունները:

Բերենք մի բնորոշ փաստ: Շրջկոմի քարտուղարներից մեկը գալիս է կապի շրջանային բաժանմունք՝ կոլեկտիվի հետ հանդիպելու: Այստեղ կան բազմաթիվ կրթված, բանիմաց, իրենց գործը սիրող բարեխիղճ աշխատողներ: Հանդիպման ժամանակ պարզվում է, որ այդ հիմնարկում շատ վատ է կազմակերպված հեռախոսային ցանցի աշխատանքը, որոշ մարդիկ խախտում են աշխատանքային կարգապահությունը. այսպես՝ կապի բաժանմունքի պետ, կոմունիստ Մ. Սահակյանը մարդկանց համոզելու, դաստիարակելու փոխարեն ընտրել է կոպիտ վարչարարության ուղին: Նա անհիմն կերպով կոպտել, վարչական տույժի է ենթարկել առանձին աշխատողների: Ձգտելով յուրովի «խստություն», «կարգ ու կանոն» մտցնել իրեն վստահված պետական հիմնարկում, կապի բաժանմունքի պետը չի խորհրդակցում կոմունիստների և արտադրության առաջավորների հետ, հաշվի չի առնում պարտիական կազմակերպության, նրա բյուրոյի կարծիքը և այլն:

Պարտշրջկոմը ժամանակին կարգի հրավիրեց ընկ. Մ. Սահակյանին. ձեռնարկվեցին որոշակի միջոցներ. բաժանմունքի պետը համոզվեց, որ իր վարքագիծը սխալ է: Շրջկոմի ցուցումների կատարմամբ բարելավվեց կապի բաժանմունքի աշխատանքը:

Մի օրինակ ևս: Շրջբուժմիավորման և տեղամասերի աշխատանքների ուսումնասիրությունից պարզվեց, որ լուրջ թերություններ կան աշխատավորության բուժսպասարկման գործում: Շրջբուժմիավորման գլխավոր բժիշկ, կոմունիստ Մ. Ստեփանյանը հարկ եղած պատասխանատվությամբ չի կատարում իր պարտականությունները, պատշաճ վերահսկողություն չի սահմանում հիվանդանոցում: Այստեղ անհրաժեշտ ուշադրություն չի նվիրվում հիվանդներին տրվող սննդի քանակին ու որակին, անբավարար է բուժման գործը, ճիշտ չի կազմակերպվում հիվանդների ընդունելությունը և այլն: Պարտշրջկոմի միջամտությունն այստեղ ևս օգնեց շրջբուժմիավորման և նրա տեղամասերում եղած թերությունների վերացմանն ու աշխատավորության բուժսպասարկման գործի բարելավմանը:

Համոզման մեթոդն ավելի ներգործուն է, երբ համոզողի խոսքը գործից չի տարբերվում, երբ նա ինքը լավ է աշխատում իր պոստում:

Մինչև 1965 թվականը Մարտիրոս գյուղի սովխոզը վնասաբեր էր, առանձնապես ցածր էր անասնապահության մթերատվությունը, ամեն տարի թերակատարվում էր կաթի ու մսի արտադրության պլանը: Ձախողվում էին ծխախոտի բերքատվության պլանային առաջադրանքների կատարումը: Անցյալ տարվանից տնտեսության գործերը բարելավվեցին: Սովխոզի առջև բացվեցին զարգացման լայն հեռանկարներ:

Սովխոզի այս «անսպասելի» բեկումը պայմանավորված էր նրանով, որ շրջկոմն այդ տնտեսության դիրեկտոր առաջադրեց կոմունիստ Յ. Բաբայանին. հմուտ տնտեսավար է նա, նվիրված աշխատող: Նոր աշխատանքի անցնելու առաջին իսկ օրվանից ընկ. Բաբայանը մասնագետների օգնությամբ խորամուխ եղավ տնտեսության գործերում: Արտադրության կարևորագույն հարցերը լուծելիս նա խորհրդակցում է կոմունիստների հետ, հաշվի առնում պարտկազմակերպության կարծիքը, հենվում նրա օգնության և աջակցության վրա:



Կոմունիստների և մասնագետների հետ ուսումնասիրելով ոչխարաբուծության զարգացման հարցը, Բաբայանը եկավ այն եզրակացության, որ կարելի է երկու անգամ ավելացնել ոչխարների գլխաքանակը: Հաշվումները ցույց տվեցին, որ տեղի պայմաններում ոչխարաբուծության զարգացումն ավելի շահավետ է, քան տավարաբուծությանը: Դրա համար պետք է ստեղծել կերի կայուն բազա: Իսկ այդ հնարավոր է, քանի որ խոտացանության համար այստեղ նպաստավոր պայմաններ կան:

Եվ, ահա, երբեմնի ետ մնացող սովխոզը 1965 թ. սկսած դարձել է շահութաբեր և արժանացել փոխանցիկ կարմիր դրոշի ու դրամական պարգևի: Այս օրինակը ցույց է տալիս, թե որքան մեծ նշանակություն ունեն ղեկավարի ձեռներեցությունն ու հմտությունը:

Կան մարդկանց համոզելու տարբեր ձևեր, որոնցից կարևորն են առաջավորների փորձի պրոպագանդան ու տարածումը: Լավագույնների փորձը առավել ակտիվ է ներգործում մասսաների վրա, մղում նրանց՝ հանրային աշխատանքի արտադրողականության բարձրացման: Պարտիայի շրջանային կոմիտեի բյուրոն սիստեմատիկաբար ուսումնասիրում և պրոպագանդում է արտադրության առաջավորների փորձը: Երեք տասնամյակից ավելի է, ինչ Մ. Մանուկյանն աշխատում է Խնձորուտի կոլտնտեսությունում որպես հովիվ. աշխատանքի ուսանելի փորձ ունի լեռնաշխարհի այդ մարդը: Նրա փորձն ուսումնասիրվել, պրոպագանդվել է թերթերի և ռադիոյի միջոցով, կազմակերպվել է անվանի հովվի մեծարման երեկո:

Շրջկոմի բյուրոյում քննարկվեց Գնդևազի կոլտնտեսության անվանի մեխանիզատոր Վանուշ Նավասարդյանի առաջավոր փորձը: Անցյալ տարի Գնդևազի լեռնային բարդ ռելիեֆի պայմաններում նա կատարել է 800 հեկտար փափուկ վար: Այս տարի խոստացել է հասցնել 1000-ի: Վ. Նավասարդյանն առանձին ուշադրություն է նվիրում գյուղատնտեսական մեքենաների տեխնիկական խնամքին: Օրինակելի աշխատանքով նա կարողացել է համակել և իր մեխանիզատոր ընկերներին, որոնք ջանում են աշխատել նրա նման: «Հայգյուղտնտեխնիկայի» Ազիզբեկովի շրջանային բաժանմունքի, կոլտնտեսությունների ու սովխոզների մեխանիզատորները եղան Գնդևազում, մոտիկից ծանոթանալու Նավասարդյանի աշխատանքին:

Գոմուրի սովխոզը (դիրեկտոր Ս. Հանիֆաև) շրջանի առաջավոր տնտեսություններից մեկն է: Այն 1965 թվականին գերակատարեց պետությանը գյուղատնտեսական մթերքներ վաճառելու առաջադրանքները, ստացավ ծխախոտի ամենաբարձր բերքը շրջանում: Գյուղում շատ բան է արվում ինչպես արտադրական, այնպես էլ կուլտուր-կենցաղային օբյեկտների կառուցման ուղղությամբ: Այս հաջողություններն արդյունք են տնտեսության պարտիական խելացի ղեկավարության: Այստեղ կոմունիստների ուժերը տեղաբաշխված են արտադրության վճռական տեղամասերում: Բացի կոմունիստ ուսուցիչներից ու բժիշկներից, բոլոր պարտիականներն անմիջականորեն աշխատում են արտադրության մեջ: Իրենց ազնիվ ու նվիրված աշխատանքով մեծ հեղինակություն են վայելում կոմունիստներ Աղամալիև Բալաջան, Մամեդով Մեյմանը և ուրիշներ: Նրանք ո՛չ միայն լավ են աշխատում, այլև ակտիվ մասնակցում են քաղաքական-մասսայական պրոպագանդային:

Սովխոզում բարձր է գիտակցական կարգապահությունը: Պարտիական

կազմակերպությունը և սովխոզի դիրեկցիան կոլեկտիվի աշխատանքի և կյանքի կարևորագույն հարցերը լուծում են աշխատավորների հետ միասին, հենվելով ղեկավարման դեմոկրատական սկզբունքներին: Հաճախակի հրավիրվում են բրիգադային ժողովներ, արտադրական խորհրդակցություններ և անցկացվում այլ միջոցառումներ: Ախտայի տեղամասի դաշտավարական բրիգադան, որին ղեկավարում է սովխոզի պարտկազմակերպության քարտուղար Բ. Մամեդովը, աչքի է ընկնում իր լավ աշխատանքով, պայքարում է կոմունիստական աշխատանքի կոչման համար:

Մեծ նշանակություն ունի համոզողի անձնական օրինակը: Այսպես, եթե ագիտատորն արտադրության առաջավոր է, ազնիվ մարդ, տիրապետում է գյուղատնտեսական կուլտուրաների մշակման ագրոտեխնիկային, հեշտությամբ կարող է համոզել մարդկանց: Ծխախոտագործների բրիգադայի բանվորները հարգում էին Զառիթափի սովխոզի պարտիական կազմակերպության ագիտատոր Պատվական Սաֆարյանին, հետաքրքրությամբ լսում նրա զրույցները: Սաֆարյանն այդ բրիգադայում ստանձնեց օղակավարի պարտականությունը, և անցյալ տարի ծխախոտի պլանտացիայի յուրաքանչյուր հեկտարի միջին բերքատվությունը օղակը հասցրեց 20 ցենտների. օղակի անդամ Նազանի Մարկոսյանը հեկտարից ստացավ 31 ցենտներ ծխախոտի հումք: Պատվական Սաֆարյանի օղակը պարտավորվել է այս տարի յուրաքանչյուր հեկտարից ստանալ 23 ցենտներ բարձրորակ ծխախոտ: Նրա համար հեշտ է համոզելը, գործով իր խոսքը հիմնավորելը:

Համոզման նշանակությունը՝ որպես պարտիական ղեկավարման հիմնական մեթոդի, առանձնապես մեծանում է այժմ՝ կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում: Լենինը նշել է, որ անհրաժեշտ է ժամանակին պաշտպանել ու զարգացնել մասսաների ստեղծագործական ակտիվությունն ու նախաձեռնությունը, ուսումնասիրել և ընդհանրացնել, լայնորեն օգտագործել առաջավոր փորձը, որը ցույց է տալիս պարտիայի առաջադրած խնդիրների կատարման ճանապարհը: Ահա թե ինչու ենք միշտ ձգտում առաջավոր փորձը հաղորդել շրջանի բոլոր աշխատողներին:

ՍՄԿՊ XXIII համագումարը, որը պատմական խոշորագույն իրադարձություն է մեր երկրի և միջազգային կյանքում, նոր, ավելի պատասխանատու խնդիրներ առաջադրեց, որոնց լուծման համար պարտիական կազմակերպություններն առաջիկայում պետք է ավելի ուժեղացնեն դաստիարակչական աշխատանքը, ավելի լայնորեն օգտագործելով մարդկանց համոզման և ուսուցման մեթոդը:

Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
ՀԿՊ Ազիզբեկովի շրջկոմի առաջին քարտուղար



## Նշանավոր ՏԱՐԵԹՎԵՐ

# ՄԵԾ ՀԱՂԹԱՆԱԿԻ ԱՎԵՏԱԲԵՐԸ

*(Հակոբ Հակոբյանի ծննդյան 100-ամյակի առթիվ)*

Ես առաջին անշուք, անպաճույճ պրոլետարական «սազը», իմպրովիզացիան հնարեցի միայն, թող նրանք ստեղծագործեն պրոլետարական «սիմֆոնիաներ»:

Հ. ՀԱԿՈԲՅԱՆ

ՀԱԿՈԲ Հակոբյանի գրական-հասարակական ողջ գործունեությունը մարտնչող բոլշևիկ բանաստեղծի գեղեցիկ կյանքի մի պատմություն է՝ օրգանապես միահյուսված կոմունիստական պարտիայի պանծալի տարեգրությանը: Հասարակական մեծ հեղաբեկումների ժամանակաշրջանում՝ XIX դարի 90-ական թվականներից մինչև XX դարի 30-ական թվականները, նա անդուլ մաքառել է ժողովրդի ազատագրության, նրա երջանիկ կյանքի համար, միշտ հավատարիմ հեղափոխության գաղափարներին:

Ռուսական առաջին հեղափոխության տարիներին նա կենսական մեծ ուժեր քաղեց ռևոլյուցիոն իրադարձություններից, Շուշանիկ Կուրղինյանի հետ դառնալով գրական մի ամբողջ հոսանքի՝ պրոլետարական-հեղափոխական պոեզիայի ստեղծողը հայ գրականության մեջ, սոցիալիստական ռեալիզմի սկզբնավորողը՝ հայ պոեզիայում:

Ռեակցիայի, համաշխարհային պատերազմի փորձության ծանր տարիներին նա մաքառեց հերոսաբար, այնուհետև ապրեց Հոկտեմբերյան մեծ վերափոխության բերկրանքը, մարտնչեց նրա հաղթանակների ու նվաճումների, վերածնված հայրենիքի բարգավաճման համար: Իր գրական ստեղծագործությամբ, հասարակական-քաղաքական գործունեությամբ բանվոր դասակարգին գիտակցորեն ու անձնվիրաբար ծառայելու մի բացառիկ օրինակ է Հակոբյանը: Առաջինը նա պատկերեց պրոլետարիատի հերոսական աշխատանքն ու պայքարը, հայ գրականությունը հարստացնելով մինչ այդ անհայտ թեմաներով ու մոտիվներով, պատկերներով ու կերպարներով:

Հ. Հակոբյանի աշխատանքային, հասարակական-գրական բուն գործունեությունն սկսվում ու ծավալվում է բանվորական միջավայրում, անդրկովկասյան հեղափոխական ցույցերի ու գործադուլների բովում:

1886 թվականին (գիմնազիայի 5-րդ դասարանից) 20 տարեկան Հակոբյանը թողնում է հարազատ Գանձակը, մեկնում Թիֆլիս, այնուհետև՝ Բաքու, որոնք իբրև ազատագրական պայքարի

օջախներ, անսահման հարստացնում են նրա պատանեկան-երիտասարդական տարիների տպավորությունները, կանխորոշում գործունեության գալիք ուղին։ «...Իմ պատանեկան-լավագույն զգացմունքները,— գրում է նա,— ծլել են Բաքվում, իմ երիտասարդական լավագույն խոհերն ու իդեալները սկիզբ են առել դարձյալ Բաքվում»։ «Վուլկան» երկաթաձուլական գործարանում իբրև ցուցակավար աշխատելիս, նա մոտիկից շփվում է Ռուսաստանից ու այլ վայրերից եկած հարյուրավոր բանվորների հետ։ 1890 թվականին Հակոբյանն արդեն մասնակցում է մայիսմեկյան տոնին, իսկ 1892-ին՝ ցույցերին։ Ահա 1892 թվականի մարտի 2-ին Վրթանես Փափազյանի Ժնևից նրան գրած նամակը, որը ցույց է տալիս, թե որքան լայն էին բանաստեղծի հետաքրքրասիրությունների շրջանակները։ «Նամակներիցդ քիչ զգուշացիր... հարկ չկա անխոհեմ լինել։ ...Իսկ թե ի՞նչ է սոցիալ-դեմոկրատ և նարոդնի սոցիալիզմ, դրանց բացատրելու համար մի քանի թերթ պետք է... Ուրիշ անգամ քեզ ընդարձակ կգրեմ սոցիալիզմի, նրա զանազան ճյուղերի, զանազան կուսակցությունների և յուրաքանչյուր կուսակցության առաջարկությունների մասին։ Այս անգամ միայն այսքան ասեմ, որ այժմ Եվրոպան հեղեղված է սոցիալիզմով»։

Բաքվում եղած յոթ տարիներին, Հայոց մարդասիրական ընկերության հարուստ գրադարանում, Հ. Հակոբյանը կարդում էր Սպենսերի, Ժան Ժակ Ռուսոյի, Պրուդոնի, այնուհետև՝ Չերնիշևսկու, Դոբրոլյուբովի, Նալբանդյանի գործերը, ծանոթանում հեղափոխական գրականությանը, դասական գրողներին, համակվում բանվորական եռացող կյանքով, հուզվում առօրյա իրադարձություններով, ապրում ու տառապում բանվորների հետ։ «Ընթերցանության հետ զուգընթաց,— գրում է նա,— ես դիտում էի կյանքը... ես տեսնում էի, թե ինչպես բանվորական մասսաների առօրյա կյանքը այդ տանջարաններում անցնում էր տաժանակիր աշխատանքի մեջ։ Տասներկու և ավելի ժամեր անընդհատ աշխատանք, կանգնած կրակի, հնոցների ու ստանոկների առաջ, դրա դեմ՝ չնչին վարձատրություն... Նրանց կերածը հոտած երշիկ, նրանց քնելու տեղը՝ հոտած կազարմաներ, որոնք շատ հեղձուկ էին և օդազուրկ. մարդ շշմում էր նրանց գարշահոտությունից։ Մարդիկ քնում էին թաղտափուշների վրա, համարյա իրար հպած, կեղտոտ վերմակների տակ։ Բնական է, այս ամենը, ամեն մի զգայուն մարդու մեջ պիտի հարուցաներ արդար զայրույթ, իսկական մարդը պիտի համակվեր նրանց վիշտ ու զրկանքներով և անցներ զրկվածների ու հարստահարվածների կողմը»։

Մուրճ ամսագրում, 1894 թվականին (№№ 5, 6, 7, 8) լույս է տեսնում Բանվորների հավաքական ապահովացումն Ռուսաստանում դժբախտ դեպքերից հոդվածը՝ Հ. Հակոբյանի զայրույթի առաջին պոռթկումն այդ տպավորությունների տակ։ Խոսելով այն մասին, թե ինչպիսի պատահական վթարներից բանվորը կարող է խեղանդամ դառնալ կամ զրկվել կյանքից, Հակոբյանը եզրակացնում է, որ սոցիալական ապահովությունն անհրաժեշտ է թե՛ բանվորի և թե՛ գործարանատիրոջ համար։ Նա դեռևս զարմանում է, թե ինչո՞ւ գործարանատերը խուսափում է դրանից, չէ՞ որ «գործարանատերերի գլխավոր շահագործությունը հիմնված է աշխատավոր ձեռքերի վրա», «մշակ դասակարգի շնորհիվ են կրկնապատկվում իրենց օգուտները»։

Հայ պրոլետարական պոեզիայի առաջնեկի առաջին՝ Ոսկե բարեկամության բանաստեղծությունը տպագրվում է 1893 թվականին (Մուրճ, № 10), բանաստեղծությունների առաջին ժողովածուն՝ 1899-ին, Մուրճի հրատարակությամբ։ Հակառակ որոշ գրաքննադատների բացասական վերաբերմունքի, անտարակուսելի են այդ բանաստեղծությունների գրական-գաղափարական արժանիքները, ինչպես Մ. Աբեղյանն էր ասում՝ զգացումների ու գաղափարների նորությունը, ինքնուրույն, նոր ու գեղեցիկ պատկերները («Նոր դար», 1900, № 4)։



Ուշագրավ են ժողովրդական մոտիվներով ստեղծված ռեալիստական ու սյուժետային երգերը՝ Քրդի շունը, Սապետ-Աֆիրը, Գյուղական բալլադ, Գեղջուկի վախը և այլն։ Դրանք արտահայտում են գյուղական հետամնացությունը, կրոնական նախապաշարմունքները, աշխատավորության թշվառությունն ու սոցիալական տարերային բողոքը։

Իր բովանդակությամբ ու արվեստով ուրույն տեղ է գրավում Հակոբյանի առաջին շրջանի ստեղծագործությունը բնորոշող Նամուս ու ղեյրաթ բանաստեղծությունը։ 1894 թվականին, Բաքվից վերադառնալով Թիֆլիս, Հակոբյանն աշխատում է Կարապետով-Բերիժանով ընկերության մեխանիկական գործարանում, իբրև հաշվապահ։

«Հենց այստեղ էր, Թիֆլիս-Կարս երկաթուղու համար գծերի երկաթյա մասերը պատրաստող գործարանում,— ասում է Հակոբյանը,— որ ես էլ իմ կամուրջն էի շինում՝ անցնելու մյուս ափը։ Նամուս ու ղեյրաթն էր այդ կամուրջը, որ գրեցի 1895 թվականին և զետեղվեց նույն տարվա Մուրճի № 9—10-ում։ Ոտանավորը նվիրված էր Ավճալայի ջրմուղի հայ բանվորներին, որոնց հետ ես կապ էի ստեղծած...»։

Նամուս ու ղեյրաթը ջերմորեն են ընդունում հայ բանվորները, այն զետեղվում է Ղ. Աղայանի կազմած մայրենի լեզվի դասագրքերում և խիստ ժողովրդականանում։ Իհարկե, ոմանք



էլ հեգնում էին բանաստեղծին այն բանի համար, որ մուրճն ու սալը դարձրել է պոեզիայի նյութ, իսկ ժանդարմական վարչության «բարեխիղճ» աշխատողն այդ «անմեղ» բանաստեղծության մեջ հեղափոխական բովանդակություն էր տեսնում և տունը խուզարկելիս բռնագրավում է դրա բնագիրը։

Սակայն, իրավացի է բանաստեղծը՝ Նամուս ու ղեյրաթը համարելով «անմեղ մի թոթովանք, ...որը հենց մորալի բովանդակություն ուներ միայն»— աշխատավորության համար դարերով սրբագործված արհեստ, դարերով սրբագործված նամուս. դարերից են եկել այդ հասկացությունները, և ժողովուրդը ցանկանում է ավանդել դրանք դարերին։ Հայրը յոթ տարեկան որդուն՝ Հակոբին, ավանդում է նամուս, մայրը՝ ղեյրաթ։ Որդին երախտագիտությամբ է ժառանգում նրանց պատգամը, զինվորագրվում աշխատավորական զանգվածներին։

Կյանքի իմաստը տեսնելով ազնիվ աշխատանքի մեջ, աշխատանքը սըր-

բագործող մարդու կերպարում, Նամուս ու ղեյրաթ ժողովրդական թեավոր արտահայտությամբ բանաստեղծն ամուր կապեր է հաստատում աշխատավորական խավերի հետ. նրա միջոցով հայ պոեզիայի մեջ մուտք է գործում մուրճ ու սալի պատկերը: Դրանով էլ դրվում է նրա հետագա գրական գործունեության անկյունաքարը:

Ասել, սակայն, թե Նամուս ու ղեյրաթ բանաստեղծությամբ կամ 90-ական թվականների ստեղծագործությամբ, ինչպես պնդում են նրա ուսումնասիրողները, Հակոբյանը «նոր խոսք ու բառ նոսանք» է բերում հայ պոեզիայում, «որոշակիորեն սահմանազատվում է իր ժամանակի հայ պոեզիայից», կլիներ մոլորություն: Հակոբյանի բանաստեղծությունների 1899 թվականի ժողովածուն և այնուհետև մինչև ռուսական առաջին հեղափոխությունը լույս տեսած մյուս երգերը հիմք չեն տալիս նման եզրահանգումների: Հակոբյանի ստեղծագործության գաղափարական-գեղարվեստական զարգացումն այդ ժամանակաշրջանում՝ 90-ական թվականներից մինչև 1904 թվականը, պարզորոշ է դառնում Մեր ցավը մեծ է... *(1899)* երգի, Ամբոխի կոչը *(1902)*, Իմ աշխարքը *(1904)* տարբերակներից:

Եթե մի դեպքում՝ առաջին տարբերակում, բանաստեղծն իբրև հայեցող է արտահայտում ամբոխի վիշտը, երգի միջոցով է կամենում «դարմանել» լքյալի հոգին, ապա Ամբոխի կոչը բանաստեղծության մեջ ընդլայնվում է նրա մտահորիզոնը, երգի գաղափարը դառնում ավելի որոշ, ստանում է պայքարի շեշտ:

Նշավակի՛ր անգութ ցասմամբ
Բռնությունը ուժեղի...

Իսկ Իմ աշխարքը երգում Հակոբյանը հասնում է գեղարվեստական ավելի լայն ընդհանրացման: Բանաստեղծն այնպես սերտորեն է կապվում ժողովրդի հետ, որ «վեհապա՛նծ սարերն» ու «վա՛ռ աստղերն» այլևս անկարող են նրան կտրել մայր հողից. «Ամբոխից փա՛խ տալ դժվա՛ր է, դժվա՛ր».

Կա՛ մի քրտնալի, կարիքի աշխարք—
Ճնշված ու լքված,
Նրա՛ն եմ ընտրում,
Այնտեղ վիշտ, զրկանք իրար հետ
գրկված՝
Մի ե՛լք են փնտրում...

Նրա միակ ձգտումն է՝ արտահայտել ամբոխի վիշտը, տապալել բռնակալի լուծը. «Ու բռնակալին ոտքիս տակ տեսնել մեղկ սողոսկելիս»:

Իսկ Իմ աշխարքը (նույնն է՝ «Իմ աշխարհը» կամ «Ամբոխն իմ աշխարհը») բանաստեղծությունը «երկու առաջին վարիանտի (Մեր ցավը մեծ է..., Ամբոխի կոչը.— *Հովհ. Ղազարյան*) կոնկրետացումն է, ավելի ուժեղ շըտրիխներով, ամփոփված իմ Credo-ով», —գրում է Հակոբյանը: Մի այլ տեղում ուղղակի ասում է. «Իմ Կրեդոն՝ Ամբոխն իմ աշխարհը—չլալ, հեքիաթներով չապրել»: Ամբոխն է բանաստեղծի հավատամքը, որը տառապում է ազգային-սոցիալական բռնություններից ու ելք փնտրում, «Մի մարգարեի կարոտը քաշում»:

Այստեղ չի կարելի տեսնել «սահմանազատում իր ժամանակի պոեզիայից», այն քննադատական ռեալիզմից, որն իր գաղափարական-գեղարվեստական զարգացման բարձունքին էր հասել այդ ժամանակաշրջանում: Հակոբյանի ստեղծագործության նյութը դեռևս «ճնշված ու լքված», բայց ոչ մարտնչող ամբոխն էր կամ հասարակական առաջատար ուժ ներկայացնող բանվոր դասակարգը: Ու թեև 1895 թվականից Ռուսաստանի պատմության մեջ սկսվեց երրորդ, Լենինի բնորոշմամբ՝ պրոլետարական էտապը, սակայն հայ գրականության մեջ ու Հակոբյանի պոեզիայում տակավին չկար դրա գեղարվեստական արտացոլումը: Հասունանում էր հեղափոխական իրականությունը, զարթնում հեղափոխական միտքը, նախապատրաստվում հեղափոխական գրականության ստեղծումը. բայց գրականության մեջ դեռևս չկար պրոլետարական հոսանքը՝ սոցիալիստական ռեալիզմը:



900-ական թվականների սկզբին մեծ կանխազգացողությամբ ու հեռատեսությամբ այդ մասին էր ազդարարում հայ առաջին մարքսիստ-գեղագետ Ստեփան Շահումյանը: Հասարակական կյանքի նոր պայմաններում նա պահանջում էր գրականությունը դուրս բերել ազգային նեղ կածաններից, դնել հեղափոխության փրկարար ուղու վրա: Սոցիալ-քաղաքական պայքարը ծավալելով Ռուսաստանով մեկ, արդեն զգացնել էր տալիս համաժողովրդական հեղափոխության տաք շունչը: Հայ ժողովրդի վերջնական ու լիակատար ազատությունը Շահումյանը տեսնում էր կյանքում նոր հորձանք տվող այդ հեղափոխության մեջ:

Ինչպես կյանքը, գրականությունը ևս պետք էր հեղափոխականացնել: Միայն հեղափոխական գրականությունը կարող է անմիջական ու լուրջ օգնություն ցույց տալ բանվոր դասակարգի մեծ պայքարին, արթնացնել ու կազմակերպել ժողովրդի ընդերքում խմորվող հեղափոխական ուժերը: Եվ ահա, XX դարի արշալույսին, բարձրացնելով պրոլետարական պայքարի սրբազան դրոշը՝ Շահումյանը հնչեցնում էր իր ավետաբեր ձայնը. «Ազգային-կուլտուրական գործունեության փոխարեն... մենք քաղաքական-ռևոլյուցիոն կռիվ ենք քարոզում. բուրժուական «ազգասիրության» ու «ազատամտության» փլատակների վրա մենք կարմիր, պրոլետարական դրոշակ ենք պարզում, որի վրա գրում ենք առայժմ.

«Կռի՛վ բռնակալության դեմ,
Կեցցե՛ քաղաքական
ազատությունը...»:

Այդ գաղափարին էին ձգտում հայ առաջավոր գրողները, Հակոբյանը. ձգտում էին, բայց դեռևս չէին հասնում, մինչև ռուսական առաջին հեղափոխությունը: Հակոբյանի ստեղծագործության մեջ, սակայն, նկատելի էին գաղափարական այնպիսի կենսունակ գծեր, որոնք նրա պոեզիային կանխանշում էին հասարակական առավել նպատակասլաց զարգացում: Այդ են ցույց տալիս մեծ խնամքով կատարած նրա թարգմանությունները՝ Մարսելյոզը *(1902)*, իտալական բանաստեղծուհի Ադա Նեգրիի ստեղծագործությունները: Վերջիններս լույս են տեսնում 1903—1904 թվականներին, երկու պրակով: Առաջին պրակում զետեղված է նաև Հակոբյանի քննադատական կենսագրական տեսությունը Ադա Նեգրիի մասին: Այդտեղ էլ բացահայտվում են բանաստեղծի հասարակական-գեղարվեստական նոր ընկալումները: Ադա Նեգրին մոտ ու հարազատ էր բանաստեղծին, որովհետև, ինչպես գրում է Հակոբյանը, «նա ներկայանում է մեզ, որպես մարմնացած բողոք անպաշտպան և ճնշված աշխատող դասակարգի... Նրա մուսան գըլխավորապես զբաղված է թույլերի, նեղյալների և հալածվածների կյանքի բարօրության խնդրով»:

Նեղյալների, հալածվածների բարօրությանը ծառայելու ձգտումն էլ հենց նրան մղում է մտերմանալու պրոֆեսիոնալ հեղափոխականներ Ստեփան Շահումյանի, Միխա Ցխակայայի և շատ ուրիշների հետ: 1904 թվականից նա արդեն կոմունիստական պարտիայի անդամ է, աչքի ընկած ակտիվ գործիչ:

Այդ օրերին ու այդ խոհերից է ծնվում նաև Հակոբյանի Կաթսավար բանաստեղծությունը *(1904)*: Աշխատան-

քի զովերգությունը նրա ստեղծագործության մեջ ստանում է նոր բովանդակություն։ Եթե Նամուս ու դեյրար բանաստեղծության հերոսը արհեստավոր բանվորն է՝ դեռևս սեփականության հետ կապված, ապա Կաքսավարում գործարանային բանվորն է՝ արդեն զրկված մասնավոր սեփականությունից։ Սա, անտարակույս, մի քայլ առաջ է բանվորական կյանքը պատկերելու ճանապարհին։ Բանաստեղծի համակրանքը վճռական պայքարի դիրքերում կանգնած, «արյան գնով» հաց վաստակող կաթսավարի կողմն է։

Սիրում եմ կռիվ ընդդեմ բռնության,
Կռվի մեջ է լոկ իմ անդորրություն.
Կռվեցե՛ք և դո՛ւք զոհեր մաքառման,
Կռվով պիտ գտնեք ձեր
երջանկություն։

Այսուհանդերձ բանաստեղծը դեռևս հստակ պատկերացում չունի դասակարգային ուժերի փոխհարաբերության, սոցիալիստական հեղափոխության մասին։

Մինչդեռ հասարակական գիտակցության մեջ արդեն լայնորեն ծավալվում էին հեղափոխական տրամադրությունները. հայ գրականության մեջ, Հակոբյանի պոեզիայում, նկատելի էր հեղափոխականացման պրոցեսը, նախապատրաստվում էր ստեղծագործական-որակական այն թռիչքը, որը տեղի ունեցավ պատմության թելադրանքով միայն, Ռուսական առաջին հեղափոխության անկասելի ուժով։

Եվ այն, ինչ բանաստեղծի համար անորոշ ու անըմբռնելի էր ստեղծագործական որոնումների երկար ճանապարհին, Ռուսական առաջին հեղափոխության պայծառ լույսի տակ դառնում է պարզ ու հասկանալի։ Հեղափոխական իրադարձությունների շիկացած մթնոլորտում ստեղծվեցին նրա պրոլետարական լավագույն գործերը։ Երեք լեզուներով հրապարակվող Պրոլետարիատի կռիվը բոլշևիկյան թերթի 1905 թվականի հուլիսի 6-րդ համարում լույս տեսավ Թեև բանվոր է, բայց թագավոր է բանաստեղծությունը՝ հայ պրոլետարական պոեզիայի առաջին կանչը։ Պրոլետարիատն արդեն խորապես գիտակցում է, որ ինքն այլևս «ճնշված ու լքված» ամբոխը չէ, այլ՝ «Իր կյանքը շարժող անխիղ տերը ինքն է միայն», առանց իրեն կանգ կառնեն «թե՛ արտադրությունը, թե՛ կյանքի զարկը»։ Նա հավատով ասում է.

...մոտ է րոպեն, երբ բանվորության
քաջամարտ ոգին
Առյուծ շարքերով կըգնա ընդդեմ
բռնակալների.
Նա տեր կդառնա իրա արդյունքին
ու աշխատանքին...

Էնգելսը բացահայտել է այն ճշմարտությունը, թե պրոլետարիատը տառապող դասակարգ չէ միայն, այլ՝ մարտնչող, որն ինքը կօգնի իրեն իր ազատագրության համար։ «Բանվոր դասակարգի քաղաքական շարժումը բանվորներին անխուսափելիորեն կըբերի այն գիտակցության,— գրել է Լենինը,— թե նրանց համար սոցիալիզմից դուրս ելք չկա։ Մյուս կողմից, սոցիալիզմը միայն այն ժամանակ ուժ կլինի, երբ այն կդառնա բանվոր դասակարգի քաղաքական պայքարի նպատակ»։ Ահա այս նոր, մարքսիստական գաղափարախոսությունն է դառնում Հակոբյանի ստեղծագործության ոգին, բանվոր դասակարգը ներթափանցում է նրա պոեզիայի աշխարհը՝ այս անգամ ո՛չ միայն իբրև տառապող ու արհամարհվող, թշվառ ու դաժանորեն շահագործող, այլև մարտնչող դասակարգ, ողջ հասարակությանը դեպի հեղափոխություն ու հաղթանակ, դեպի սոցիալիստական հասարակարգ առաջնորդող դասակարգ։

Այս ոգով և ավելի բարձր արվեստով (1905—1907 թվականներին) մեկը



մյուսի հետևից լույս են տեսնում Հակոբյանի Մե՛կ էլ, մե՛կ էլ, Դարբնի երգը, Հեղափոխություն, Ես ձեզ ասում եմ..., Պրոլետարիատին, Մեռա՞ն, չկորա՞ն... հանրաճանաչ ստեղծագործությունները, Աշխատանքային երգեր (1906), Հեղափոխական երգեր (1907) բանաստեղծությունների ժողովածուները, գործեր, որոնք պրոլետարական բանաստեղծի հռչակ բերեցին նրան։

Հակոբյանն առաջինն է հայ գրականության մեջ, որ գործարանը պատկերացնում է ո՛չ միայն իբրև շահագործման վայր ու գերեզմանոց, այլ իբրև հնոց, ուր համախմբվում ու կոփվում են բուրժուազիայի գերեզմանափոր բանվոր դասակարգի հեղափոխական ուժերը։ Եվ Հակոբյանն այն պոետն էր, որ բանաստեղծությունների միջոցով տարածում էր հեղափոխական մարքսիզմի գաղափարները։

Խոր ու հաստատուն, մինչև վերջ ստուգված հեղափոխական հայացքները ծնունդ էին նրա ստեղծագործության վարակիչ պաթոսը, պայծառ լավատեսությունը, խանդաղատագին սերը բանվոր դասակարգի նկատմամբ, անձնուրաց նվիրվածությունն ու անսահման հավատը նրա ազատագրական պայքարին ու հաղթանակին. Նրա բանաստեղծությունը դառնում է մարտակոչ.

Զա՛րկ, զա՛րկ, ընկե՛ր, էլ կանգ
չառնենք,
Մո՛տ է ահա լավ օրը...
Այնպես թափով սալին զարկենք,
Որ դողդողա աշխարհը...

Հակոբյանի նորարարական պոեզիան ձևավորվում է Ռուսական առաջին հեղափոխության քուրայում, հանդիսանում Նալբանդյանի ստեղծագործական լավագույն ավանդների զարգացումը հայ գրականության մեջ, սկզբնավորելով պրոլետարական-հեղափոխական պոեզիան։ Հայ դասական գրողներից նա առաջինն է, որ տեսավ պատմության առաջմղիչ ուժը՝ բանվոր դասակարգին, նրա հեղափոխական պայքարն ու հաղթանակը համարեց հայ ժողովրդի փրկության ու ազգային կյանքի վերածննդի, մարդկային նոր, սոցիալիստական հարաբերությունների ստեղծման միջոց։ Պրոլետարիատի հեղափոխական աշխարհայեցողությամբ էլ պայմանավորվեցին Հակոբյանի պոեզիայի հեղափոխական-գաղափարական բովանդակությունը, այդ բովանդակությունը մարմնավորող ինքնատիպ ձևերը։

Նրա պոեզիան, այսպիսով, նոր երակ՝ պրոլետարական-հեղափոխական պոեզիայի երակը բացեց հայ բազմադարյան գրականության մեջ, հեղափոխականացնող հսկայական ազդեցություն գործեց ժողովրդական լայն զանգվածների վրա։

***

ՀԱԿՈԲՅԱՆԻ պրոլետարական քնարը ուժգին հնչեց նաև ռեակցիայի տարիներին, երբ հուսախաբությունն էր տիրում որոշ մտավորականների, համաշխարհային պատերազմի արհավիրքներում, երբ աշխուժանում էին բուրժուա-նացիոնալիստական մութ ուժերը։

Այդ տարիներին, ահա, նա ստեղծեց իր գեղարվեստական մի շարք արժեքավոր գործերը՝ Նահատակները, Լռեց սոխակը... (1909), Աշխատանքի երգը, Լուսաբացին (1910), Մաքառման ժամին (1911), Պահակը (1913), Հեռու եք ու տենչում..., Ոչի՛նչ, իմ ընկեր... (1915), Ազգայիններին (1916), բանաստեղծությունները, Նոր առավոտ (1909), Կարմիր ալիքներ (1911), Հավասարություն (1916—1917) պոեմ-եռապատումը։

Հակոբյանն ամենևին տեղիք չի տալիս փորձության նկուն տրամադրություններին, նա հուսադրում է լքված-

ներին, հեղափոխության ճնշված ու խառնացրիվ ուժերին վերստին համախմբելու կոչ անում, պրոլետարիատին տոգորում վերջնական հաղթանակի հավատով. «Ապագան ծաղկոտ մերն է, իմ ընկեր...»։ Համատարած մղձավանջում հնչում է նրա զգաստ, հաստատակամ ու կորովի ձայնը.

Թո՛ղ կորչեն ոգիք լքում, վարանոտ,
Ես կանգուն եմ դեռ իմ դիրքի վրա,
Եվ ինչպես պահակ, մինչ լույս
առավոտ
Պիտի հսկեմ վես բարձունքը նրա։

Փորձության տարիներին ավելի բուռն հորդեցին գրողի ստեղծագործական ուժերը։ Պրոլետարական պոեզիան նա հարստացրեց պոեմի ժանրով, որով առավել ամբողջականությամբ արտահայտեց իր գաղափարական գեղագիտական հայացքները։ Նա ստեղծեց «Սոցիալիստական անդրանիկ և հաջող պոեմը մեր գրականության մեջ»— ինչպես որակել է Հակոբյանի Նոր առավոտ պոեմը գեղարվեստական խոսքի մեր ամենասիրված վարպետներից մեկը՝ Ավ. Իսահակյանը։ Ռեակցիայի համատարած հուսախաբության, ժամանակավոր հաղթանակով հոխորտացող ցարիզմի դեմ ուղղված այդ պոեմով, նոր առավոտը խորհրդանշող սքանչելի պատկերով բանաստեղծը բանվոր դասակարգի կենսական ուժերի համախմբման ու գալիք հաղթանակի արշալույսն էր ավետում։

Հակոբյանն իր հայացքը կրկին ու կրկին ուղղում է դեպի գործարան, որտեղից բանաստեղծը պարզ տեսնում էր գալիք ազատության մեծ պղոտան, որտեղ ձուլվում են անհատի և հանուրի՝ հասարակականի շահերը, նրա պատկերավոր արտահայտությամբ «ձուլվում է Ես-ը հզոր ՄԵՆՔ-ի մեջ», և դրվում գալիք սոցիալիստական հասարակարգի հիմքը։

Հասկանալի է, այս պոեմը չէր կարող վրիպել Լենինի զինակիցներ՝ Ստ. Շահումյանի, Ս. Սպանդարյանի ուշադրությունից։ Հակառակ բուրժուական էսթետների, Սպանդարյանը նրան հայ տաղանդավոր գրող ու թարգմանիչ է համարում, նրա այս երկում տեսնելով «համամարդկային բնույթ կրող բոլորովին նոր մոտիվներ»։

Ստեփան Շահումյանը ո՛չ միայն բարձր է գնահատել պոեմը, այլև 1910 թվականին հանգամանորեն վերլուծել է այն, շտկել, դիտողություններ արել, դրսևորելով արվեստի ընկալման նուրբ ու խոր զգացողություն։ Հաշվի առնելով նրա ուսանելի ցուցմունքները, բանաստեղծը հիմնովին վերամշակում է պոեմը՝ վերացնում սխալները, ազատվում անհաջող բառերից, արտահայտություններից ու պատկերներից, հրաժարվում ամբողջական գլուխներից, ստեղծում նորերը։ Շահումյանի դիտողությունները դառնում են ուղենիշ նաև Կարմիր ալիքներ, Հավասարություն պոեմները գրելիս։ Տարիներ հետո, անդրադառնալով Շահումյանի այդ դիտողություններին, Հակոբյանը ակնածանքով ու երախտագիտությամբ գրում է. «Թանկ է ինձ համար այդ գրքույկը և ես նրան աչքիս լույսի պես պահում եմ»։

Հոկտեմբերյան հեղափոխության նախօրյակին ստեղծած պոեմ-եռապատումը ակնհայտորեն ցույց է տալիս բանաստեղծի գեղագիտական հասունացումը. Կարմիր ալիքներում նա զարգացնում է Նոր առավոտի սյուժեն, իսկ Հավասարություն պոեմում այն հասցնում տրամաբանական ավարտին։ Պրոլետարիատի և բուրժուազիայի, անհատի ու հասարակության միջև ստեղծված կոնֆլիկտը այստեղ վերջնականապես լուծվում է։ Հաղթանակած բանվոր դասակարգը, աշխատավորական զանգվածների հետ, կառուցում է սոցիալիստական հասարակարգ, ըս-



տեղծում մարդկային նոր, սոցիալիստական հարաբերություններ.

— Մենքն, ամենքին իրար հավասար—
Ուր հազարն է մեկ և մեկը՝ հազար:

Մասնավոր սեփականությունը փոխարինվում է հանրային սեփականությամբ. «Ամենքն են բանվոր և աշխատավոր»։

❊❊❊

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ հասարակարգի այս գեղեցիկ ռոմանտիկան հոգում՝ բանաստեղծը ողջունում է Հոկտեմբերյան հեղափոխությունը։ Հակոբյանի հոկտեմբերյան երգերի նյութը պրոլետարիատի մեծ հաղթանակն է, ըստ բանաստեղծի՝ կարմիր գարունը։ Ահա ինչու Կարմիր գարուն (1920) բանաստեղծության քառատողերն սկսվում ու ավարտվում են կյանքի վերածնության ու բերկրանքը խորհրդանշող արտահայտությամբ՝ «ապրել միայն կարմիր գարնան», «կռվել միայն կարմիր գարնան», «մեռնել միայն կարմիր գարնան»։

Հայի Հայրենիքն այլևս մշուշով պարուրված երկիր Նաիրին, ողբի ու որբի հայրենիքը չէ, այլ բովանդակ Սովետական Ռուսաստանը։ Հակոբյանի ստեղծագործության մեջ հայրենիքն ստանում է նոր, սոցիալիստական բովանդակություն. բոլոր ճնշված ժողովուրդների պես հայն էլ իր բախտը հավիտենապես կապում է ազատագրված ռուս ժողովրդի հետ։ Մոսկվան՝ սոցիալիստական հայրենիքի սիրտը, դառնում է հայ ժողովրդի հուսալի պատվարը, ինչպես բանաստեղծն է ասում՝ «աղբյուրը ոգևորության, մեր որոնումի օրրանն առաջին, կայանը վերջին»։

Սոցիալիստական հեղաշրջումից հետո Հակոբյանը դառնում է կոմունիստական պարտիայի նորանոր միջոցառումների նախաձեռնողներից մեկը, սոցիալիստական շինարարության մեծ նորակառույցների խանդավառ երգիչն ու ակնարկագիրը։ Նա միշտ սկզբունքային պայքարի առաջավոր գծում էր, գրականությունը սերտորեն զուգորդելով պարտիական աշխատանքին։ Հոկտեմբերյան հեղափոխությունից առաջ Հակոբյանը պայքարում էր ընդդեմ բուրժուական հասարակարգի, բուրժուական էսթետների։ Նոր հասարակարգում նրա ոգեշնչման աղբյուրը սոցիալիստական հայրենիքի մեծ ու հերոսական շինարարությունն էր, նրա պայծառ հեռանկարները։

Նոր խոհերով ու զգացմունքներով են ստեղծվում նրա Աստվածները խոսեցին (1924), Բոլշևիկ է Շիր-կանալը (1924), Վոլխովստրոյ (1925) պոեմները՝ պատկերելով վերածնվող կյանքը, արտահայտելով նորակառույցների մեծությունն ու պանծալիությունը։ Ազգային-սոցիալական ճնշումից ազատագրված աշխատավոր մասսաները ունակ են հրաշքներ գործելու։ Հերոսությունը դառնում է մասսայական։ Իբրև նոր կյանքի տերեր՝ նրանք վերափոխում են բնությունը, շունչ տալիս ամայի դաշտերին ու անապատներին, փոխում գետերի հունը, կառուցում հզոր էլեկտրակայաններ, փոխում հին աշխարհը, միաժամանակ վերափոխում և իրենց։

«Սոցիալիստական շինարարությունը,— ասում է Հակոբյանը Բելա Իլեշին ուղղած իր պատասխան-նամակում,— լայն հորիզոններ է բաց արել ստեղծագործության համար, ֆանտազիայի համար... ես ձգտում եմ արդի համայնական հասարակության կյանքից վերցնել այն ամենը, ինչ ճշմարտացի է, այն ամենը, ինչ ունի զարգացման հեռանկար, այն ամենը, ինչ համապատասխանում է աշխատավոր մասսաների հոգևոր ու մտավոր շահերին»։

Հակոբյանի նվիրական ձգտումն էր՝

քայլել սոցիալիստական կյանքի թարմ հետքերով, միրճվել հարազատ ու վերածնվող ժողովրդի ընդերքը, արվեստն իբրև պայքարի հզոր զենք ամբողջովին ծառայեցնել նրա կենսական շահերին: Ահա սկսնակ գրողներին ուղղած նրա կոչը. «...Աշխատանքի գաղափարը ինձ համար եղել է ամենասիրելի բանը աշխարհում... Ես սիրում եմ աշխատանքը ո՛չ միայն նրա համար, որ նա մարդկային գոյության հիմնաքարն է... այլև նրա համար, որ այդ աշխատանք ասածդ բանը իր երջանկացնող խմաստով, ունի իր պոեզիան»:

Աշխատանքային պոեզիա սերմանող Հակոբյանը հենց դրան էլ նվիրեց իր գեղեցիկ ու հարուստ կյանքը, ստեղծելով խորապես գաղափարական, խորապես ժողովրդային պոեզիա՝ իր ուրույն արվեստով: Ահա ինչու մեծ է Հակոբյանի՝ սոցիալիստական մշակույթի այդ անխոնջ ու անձնուրաց մարտիկի պատմական դերը: Այսօր էլ, երբ սուր ու անհաշտ պայքար է մղվում կապիտալիստական ու սոցիալիստական հակադիր սիստեմների միջև, երբ բուրժուական էսթետները ճամարտակում են ինչ-որ անպարտիական, գաղափարազուրկ, ինչ-որ ենթագիտակցական գրականության ու արվեստի մասին, խիստ կենսունակ են Հակոբ Հակոբյանի գրական ժառանգության լավագույն ավանդները՝ անշահախնդրորեն ծառայել հեղափոխությանը, սոցիալիստական հայրենիքին, ստեղծագործական երկր ի սպաս դնել ժողովրդի հոգևոր մշակույթի ու նյութական կյանքի բարգավաճմանը:

ՀՈՎՀ. ՂԱԶԱՐՅԱՆ
Բանասիրական գիտությունների թեկնածու

---

## ԿՀԱՆԴԻՊԵ՞Ն ԱՐԴՅՈՔ ԵՐԿԻՐՆ ՈՒ ԱՍՏԵՐՈԻԴԸ

1968 թվականի հունիսի կեսերին Երկրից մի քանի միլիոն կիլոմետր հեռավորության վրա կհայտնվի կոսմիկական հյուրը՝ Իկար անունով աստերոիդը: Իկարը երկնային մարմիններից ամենափոքրն է, նրա տրամագիծը ընդամենը մեկ և կես կիլոմետր է:

Որտե՞ղ կընկնի այն: Լավ կլինի՝ անապատում, կամ լեռնային թավուտներում՝ մարդաբնակ վայրերից հեռու: Իկարի ընկնելու էֆեկտը կարելի է համեմատել ատոմային վիթխարի ռումբի (և նույնիսկ ոչ մեկ) պայթյունի հետ, միայն թե առանց ռադիոակտիվ հետևանքների:

Ընկնելով օվկիանոսը, Իկարը կարող է հարուցել հնագույն լեգենդար ջրհեղեղները գերազանցող աղետ: Եթե այն ընկնի ցամաքի վրա, իհարկե, կարող է հեղեղ չլինել, բայց դրա փոխարեն երկար ժամանակ օդը հագեցած կլինի պայթյունից առաջացած փոշով, ինչպես եղել է 1883 թվականին, Կարակատոի ժայթքման ժամանակ: Փոշին կկտրի մեզ արևի կենսարար ճառագայթներից և կարող է առաջացնել համաշխարհային անբերրիություն, ընդհանուր ցրտություն և այլ տհաճ երևույթներ: Բնականաբար, Իկարի հետ բախվելուց Երկիրը կտոր-կտոր չի լինի, բայց առանց դրան էլ մարդկությունը մեծ փորձությունների կենթարկվի:

Հաստատ կարելի է ասել, որ կոսմիկական այդպիսի բախումներ հնարավոր են: Մենք անառարկելի ապացույցներ ունենք, որ Երկիրը բազմիցս հանդիպել է Իկարի չափ կամ, նույնիսկ, նրանից ավելի մեծ օբյեկտների: Արիզոնայում մի ժամանակ ընկած մետեորիտը իրավամբ կարելի է անվանել փոքր աստերոիդ: Վերջերս, 1937 թվականի հոկտեմբերին, Հերմես աստերոիդը անցավ Երկրի կողքով, ընդամենը 800 հազար կիլոմետր հեռավորությամբ: Եթե Երկրին մոտենալը մի քանի րոպե ևս շարունակվեր, բախումն անխուսափելի կլիներ: Բայց երկնային երկու մարմինները վերջին րոպեին խույս տվեցին դրանից, և մեկնից ոչ մեկը չնկատեց. որ Երկիրը վտանգի մեջ էր: Նշանակո՞ւմ է այդ, որ 1968 թվականին պետք է աղետի սպասենք:

Ո՛չ: Երկրի գոյության ընթացքում Իկարը, անկասկած, անհաշիվ անգամ անցել է Երկրի մոտով: Մինչև այժմ այդ հանդիպումները հաջող են անցել: Հասարակ հաշվարկը ցույց է տալիս, որ բախման հավանականությունը հավասար է 1:1.000.000×1:1000=1000.000.000

Իհարկե, այս չի կարելի համարել վերջին հավասար, բայց, համենայն դեպս, այնքան փոքր է այն, որ մենք կարող ենք շատ չանհանգստանալ: Իսկ այն հարցին, թե կհանդիպե՞ն արդյոք երկիրն ու Իկարը, կարող ենք հաստատ պատասխանել՝ ոչ:

---

# ՔՆՆԱՐԿՈՒՄ ԵՎ ԲԱՆԱՎԵՃ

## ՆՅՈՒԹԱԿԱՆ ՇԱՀԵՐ ԵՎ ՆՅՈՒԹԱԿԱՆ ՇԱՀԱԳՐԳՌՎԱԾՈՒԹՅՈՒՆ

Մարդկանց անձնական նյութական շահերի անտեսումը խոշորագույն արգելք է երկրի արտադրաուժերի զարգացման համար և ընդհակառակը, նրանց պահանջմունքների բավարարումը մեծագույն առաջմղիչ ազդակ է հասարակական արտադրության զարգացման համար:

Նյութական պահանջմունքների ներգործությամբ յուրաքանչյուր կոնկրետ պատմական պայմաններում ձևավորվում են անհատների, հասարակական խմբերի և ողջ հասարակության նյութական շահերը: Քանի որ մարդկանց նյութական պահանջմունքները բավարարվում են նյութական բարիքների արտադրության, բաշխման, փոխանակության միջոցով, ուստի, նրանց նյութական շահերը դրսևորվում են ինչպես արտադրության, այնպես էլ բաշխման և փոխանակության պրոցեսում: Հետևապես՝ մարդկանց նյութական շահերը երևան են գալիս հասարակության տնտեսական հարաբերությունների ամբողջության մեջ: Էնգելսը գրել է. «Յուրաքանչյուր տվյալ հասարակության տնտեսական հարաբերությունները ամենից առաջ երևան են գալիս որպես շահեր» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. I, Հայպետհրատ, էջ 764, 1950):

Այդ պատճառով, նյութական շահերի ուսումնասիրությունը մարքսիստական քաղաքատնտեսության առարկան է: Հանրահայտ է, որ Մարքսի՝ տնտեսագիտությամբ զբաղվելու շարժառիթը եղել է նյութական շահերի ուսումնասիրությունը: Նա գրել է. «Իմ մասնագիտությունը իրավագիտությունն էր, որը, սակայն, ուսումնասիրել եմ միայն իբրև օժանդակ գիտություն՝ փիլիսոփայության ու պատմության կողքին: 1842—1843 թվականներին, իբրև «Հռենոսյան Լրագրի» խմբագիր, ես առաջին անգամ դժվար կացության մեջ ընկա, երբ հարկադրված էի արտահայտվել, այսպես կոչված, նյութական շահերի մասին» (Կ. Մարքս, Քաղաքատնտեսության քննադատության շուրջը, Երևան, 1948, էջ 5—6): Այդ ժամանակից էլ Մարքսը սկսում է զբաղվել տնտեսական հարաբերությունների ուսումնասիրմամբ:

Այստեղից հետևում է, որ հասարակական տնտեսական կյանքի բոլոր երևույթները վերջին հաշվով առնչվում են մարդկանց նյութական շահերի հետ:

Լենինը գրել է, որ «շահերը» շարժում են ժողովուրդների կյանքը (տե՛ս В. И. Ленин, Сочинение, т. 38, стр. 78):

Էնգելսը խիստ ծաղրում է Պրուդոնին այն բանի համար, որ վերջինս գրել է, թե «հասարակությունների հիմնական կառավարող, օրգանական, գերիշխող սկզբունքը, որն իրեն է ենթարկում մնացած բոլոր սկզբունքները, դա ոչ թե շահը, այլ արդարությունն է» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. I, Հայպետհրատ, 1950, էջ 764): Էնգելսը Պրուդոնի՝ նման հարցադրումը համարել է «տնտեսագիտական տգիտություն», որովհետև Պրուդոնը «տնտեսական հարաբերությունների մասին դատում է ոչ թե համաձայն տնտեսագիտական օրենքների, այլ համեմատ այն բանի, թե նրանք համապատասխանո՞ւմ են, թե չեն համապատասխանում... հավիտենական արդարության մասին նրա ունեցած պատկերացումին» (նույն տեղը, էջ 763):

էնգելսը, քննադատելով Պրուդոնի «հավիտենական արդարության» տեսությունը, որոշակիորեն արտահայտում է այն միտքը, որ հասարակական կյանքը շարժող հիմնական ուժը մարդկանց տնտեսական շահերն են:

Նյութական շահը բոլոր հասարակական ֆորմացիաների համար ընդհանուր տնտեսական կատեգորիա է: Նրա համընդհանուր լինելը բխում է պահանջմունքների ընդհանուր բնույթից, որի անընդհատ բավարարումը մարդկային հասարակության գոյության պայմանն է:

Տնտեսական շահերը երևան են գալիս անձնական, կոլեկտիվ և հասարակական շահերի ձևով:

Անձնական շահերը, վերջին հաշվով, արտահայտվում են որոշակի սոցիալ-տնտեսական հարաբերություններում, առանձին անհատի նյութական կարիքների և հոգևոր պահանջների բավարարման անհրաժեշտության մեջ:

Կոլեկտիվ տնտեսական շահերն արտահայտում են որոշակի խումբ մարդկանց նյութական և հոգևոր պահանջմունքների բավարարման անհրաժեշտությունը: Հասարակական որոշակի խմբի շահերի այդպիսի միասնությունը պայմանավորված է արտադրության մեջ նրանց գրաված դիրքի ընդհանրությամբ:

Հասարակական նյութական շահերը կապված են տնտեսական այնպիսի օբյեկտիվ պրոցեսների հետ, որոնք պայմանավորում են ոչ միայն առանձին խմբերի կամ անհատների, այլ ամբողջ հասարակության նյութական ու հոգևոր պահանջմունքների բավարարումը: Մարդկանց հասարակական շահերը դրսևորվում են արտադրության իրականացման ընդհանուր տնտեսական պայմաններում:

Նյութական շահերը յուրաքանչյուր հասարակական ֆորմացիայում երևան են գալիս յուրահատուկ ձևով: Այդ յուրահատկությունների հիմքում ընկած են նյութական բարիքների արտադրության պրոցեսի առանձնահատկությունները, մարդկանց հարաբերությունները արտադրության մեջ: Հենց այդ հարաբերությունների բնույթով է որոշվում մարդկանց շահագրգռվածությունն իրենց աշխատանքի արդյունքով և հասարակական արտադրության զարգացմամբ:

Դասակարգային հասարակական ֆորմացիաների առաջացման հետ միասին տնտեսական շահերը կրում են դասակարգային բնույթ:

Մարքսը և էնգելսը դեռևս «Գերմանական իդեոլոգիա» աշխատության մեջ գրել են. «Աշխատանքի բաժանման և դասակարգային հարաբերությունների շնորհիվ շահերի ձևավորումը[1] էլ ավելի ակնհայտ է, քան «հակումներինը և մտքերինը» (К. Маркс и Ф. Энгельс, Соч. т. 3, стр. 249):

Մարդկանց շահերի առանձնացումը երևան է եկել աշխատանքի բաժանման և դասակարգերի առաջացման հետևանքով: Դա, իհարկե, չի նշանակում, թե տնտեսական շահերն առաջ են եկել աշխատանքի բաժանման և դասակարգերի առաջացման հետ միասին: Աշխատանքի հասարակական բաժանումը և դասակարգերի առաջացումը՝ հասարակական առանձին խմբերի, անհատների և դասակարգերի շահերի ձևավորման և ոչ թե, ընդհանրապես, տնտեսական շահերի առաջացման պատճառ են: Տնտեսական շահերի առաջացումը, ինչպես արդեն նշվեց, մարդկանց նյութական ու հոգևոր պահանջմունքների հետևանք է:

Նյութական շահերը տարբեր հասարակական ֆորմացիաներում ունեն տարբեր շրջանակներ. այդ արդյունք է արտադրողական ուժերի զարգացման հետևանքով հասարակության անդամների, նրա տարբեր խմբերի և դասակարգերի պահանջմունքների ու նպատակների շրջանակների փոփոխման: Այս բոլորից հետևում է, որ նյութական շահերը պարունակում են պատմական և սոցիալական տարր:

Հասարակարգերի փոփոխումը, առաջադիմական երևույթ է նաև հասարակության նյութական շահերի տեսակետից: Դասակարգային մեկ հասարակական ֆորմացիայից անցումը մյուսին այս կամ այն չափով համընկնում է

---

[1] Տեքստում գրված է «կարծրացում»—«затвердение»:



առաջադիմական բոլոր դասակարգերի տնտեսական շահերին: Բայց, քանի որ արտադրողական ուժերի զարգացման հետ միասին հասարակության տարբեր խմբերի և դասակարգերի նյութական շահերի շրջանակները միշտ փոփոխվում են, այդ պատճառով էլ մասնավոր սեփականության վրա հիմնված հասարակական ֆորմացիաներում նոր ուժով են հանդես գալիս անտագոնիստական հակասությունները:

Մարդկանց օբյեկտիվ նյութական պահանջմունքները նյութական շահերի ձևով արտացոլվում են նրանց գիտակցության մեջ, վերածվում «իդեալական ուժերի», դրանով իսկ մարդուն մղում գործունեության:

Մարդիկ հասարակական արտադրություն են վարում ելնելով իրենց շահերից, գիտակցելով իրենց պահանջմունքները:

Իհարկե, մարդկանց գործունեության մղելու համար բավական չէ նրանց օբյեկտիվ նյութական պահանջմունքների գիտակցումը, որոնք տվյալ դեպքում, դրսևորվում են նյութական շահերի ձևով: Դրա հետ միասին, անհրաժեշտ են այդ ձևավորված շահերի իրացման հասարակական պայմաններ: Որքան լայն և իրական են վերոհիշյալ պայմանները, այնքան մարդն ավելի ակտիվ է մասնակցում նյութական բարիքների արտադրությանը:

Մարդկանց նյութական շահերի իրացման հասարակական պայմանները յուրաքանչյուր հասարակական ֆորմացիայում երևան են գալիս որոշակի նյութական խթանների ձևով: Նյութական ազդակներն այն չափով են խթանում արտադրության զարգացումը, որքանով դրանց միջոցով իրացվում են մարդկանց նյութական շահերը:

Ուրեմն, աշխատանքի նյութական ազդակները պայմանավորված են այն օբյեկտիվ փաստով, որ միայն աշխատանքի պրոցեսն է նյութական բարիքների արտադրության պրոցես: Մարդկանց պահանջմունքների բավարարման անհրաժեշտությունն աշխատանքի պրոցեսում նրանց գործունեությանն օբյեկտիվորեն ուղղություն տվող պայմանն է: Այդ իմաստով էլ նյութական խթաններն արտահայտում են պահանջմունքների և աշխատանքի պրոցեսի ներքին և անհրաժեշտ կապը:

Պետք է տարբերել աշխատանքի ազդակը նյութական բարիք սպառելու ձգտումից: Վերջինիս կարիքը մարդը միշտ զգում է իր անձնական և հասարակական պահանջները բավարարելու համար: Բայց միշտ չէ, որ մարդու մեջ առաջանում է աշխատանք կատարելու մղումը: Եթե տվյալ հասարակական հարաբերություններն անհրաժեշտ կապ չեն ապահովում արտադրության և սպառման, աշխատանքի և մարդկանց պահանջմունքների բավարարման միջև, աշխատանքի խթան առաջ չի գալիս: Այդ չի նշանակում, թե մարդիկ ընդհանրապես դադարում են աշխատելուց: Այդ նշանակում է, որ նրանք նյութական արտադրության պրոցեսում լրիվ չեն դրսևորում իրենց ունակությունները: Ըստ որում, ոչ միայն արտադրության և անձնական սպառման, այլև արտադրության և մարդկանց այլ բնույթի պահանջմունքների (սոցիալ-տնտեսական, հոգևոր և այլն) միջև եղած որոշակի կապը նույնպես մարդկանց մեջ առաջացնում է աշխատանքի ձգտում:

Նյութական շահերի իրացումը կատարվում է տնտեսական օրենքների և դրանցով պայմանավորված տնտեսական կատեգորիաների միջոցով: Հասարակությունն իր պրակտիկ գործունեության ընթացքում որքան ճիշտ է արտացոլում տնտեսական օրենքների պահանջները, այնքան մեծ են մարդկանց նյութական շահերի իրացման պայմանները, այնքան բարձր է նյութական շահագրգռվածությունը:

Տնտեսագիտական գրականության մեջ, տնտեսական օրենքների, կատեգորիաների ու նյութական շահերի փոխադարձ կապը, մեր կարծիքով, ճիշտ չի պարզաբանվում: Որոշ տնտեսագետներ մարդկանց շահերը դիտում են որպես տնտեսական օբյեկտիվ օրենքների դրսևորման ձև: Այսպես, Մ. Միխայլովը գրում է. «...շահերը այն կոնկրետ ձևերն են, որոնցում օբյեկտիվ օրենքները հանդես են գալիս պրակտիկայում» («Вопросы экономики», № 4, 1965, стр. 64): Իրականում հակառակն է տեղի ունենում: Ոչ թե տնտեսական օրենք-

ներն են դրսևորվում շահերի ձևով, այլ շահերն են իրացվում տնտեսական օրենքների գործողությամբ:

*Մ. Միխայլովն իր սխալը ավելի է խորացնում շահերի և տնտեսական կատեգորիաների փոխադարձ կապը պարզաբանելիս: Ըստ նրա, «...տնտեսական կատեգորիաները պրակտիկայում միշտ երևան են գալիս որպես շահեր, անպայմանորեն անցնելով դրանց (շահերի—Մ. Ք.) պրիզմայի միջով» (նույն տեղը):

Ի՞նչ է նշանակում տնտեսական կատեգորիաները երևան են գալիս շահերի ձևով: Այդ նշանակում է, որ այնպիսի տնտեսական կատեգորիաներ, ինչպիսիք են՝ ապրանքը, արժեքը, փողը, ամորտիզացիան և այլն, շահերի դրսևորման ձևեր են: Մեր կարծիքով, ինչպես տնտեսական օրենքների, այնպես էլ տնտեսական կատեգորիաների միջոցով իրացվում են մարդկանց նյութական շահերը: Իրոք, շահույթի, աշխատավարձի, արժեքի, փողի, ապրանքի և տնտեսական այլ կատեգորիաների միջոցով իրացվում են մարդկանց նյութական շահերը:

Տարբեր հասարակական ֆորմացիաներ ստեղծում են հասարակական շահերի իրացման տարբեր պայմաններ ու ձևեր: Այդ տեսակետից էլ, մեր կարծիքով, այնքան էլ ճիշտ չէ տնտեսագիտական գրականության մեջ լայնորեն տարածված այն տեսակետը, որ դասակարգային որոշ հասարակական ֆորմացիաներում ընդհանրապես բացակայել է աշխատողների նյութական շահագրգռվածությունն իրենց աշխատանքի արդյունքով, և աշխատանքը հիմնված է եղել միայն արտատնտեսական հարկադրանքի վրա[1]:

Ստրկատիրական և ֆեոդալական ֆորմացիաներում, չժխտելով արտատնտեսական հարկադրանքի դերը աշխատանքի կազմակերպման գործում, մեր կարծիքով, չի կարելի ամբողջը հանգեցնել դրան: Ինչպես ստրուկը, այնպես էլ ճորտը չէին կարող լրիվ անտարբեր լինել իրենց աշխատանքի արդյունքի նկատմամբ, քանի որ այն ո՛չ միայն իրենց պահանջմունքների բավարարման, այլև ֆիզիկական գոյության պահպանման միակ միջոցն էր:

Ստրուկը, իսկապես, շահագրգռված չէր աշխատանքի արտադրողականության բարձրացմամբ, որովհետև այն ոչնչով չէր փոխում իր նյութական ծանր դրությունը: Աշխատանքի արտադրողականության պտուղները վայելում էր միայն ստրկատերը:

Ֆեոդալական հասարակարգում, ի տարբերություն ստրկատիրականի, արդեն առկա էր ճորտի որոշակի շահագրգռվածություն, անգամ, աշխատանքի արտադրողականության բարձրացման ասպարեզում, որովհետև իր դաշտում աշխատելով, նա կարող էր յուրացնել ավելցուկ արդյունքի որոշ մասը:

Չնայած ճորտ գյուղացու նյութական շահագրգռվածությունը խիստ սահմանափակ էր, այնուամենայնիվ, այն դրական դեր խաղաց հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում:

Ֆեոդալիզմի ժամանակ նույնպես արտատնտեսական հարկադրանքը պետք է տարածել միայն ֆեոդալի համար կատարվող աշխատանքի վրա:

Քանի որ ճորտն ուներ իր սեփական արտադրության միջոցները, որոնք անհրաժեշտ էին ինքնուրույն տնտեսություն վարելու համար, ֆեոդալները կարող էին անմիջական արտադրողներին շահագործել միայն անձնական կախման կամ արտատնտեսական հարկադրանքի միջոցով: «Եթե կալվածատերն*

[1] Պրոֆ. Ն. Ա. Ցագոլովի խմբագրությամբ լույս տեսած քաղաքատնտեսության դասընթացում կարդում ենք «...ստրուկը ոչնչով շահագրգռված չէր իր աշխատանքի արդյունքով: Նա չուներ ոչ մի նյութական խթան աշխատանքի նկատմամբ ընդհանրապես, նրա արտադրողականության նկատմամբ՝ մասնավորապես» (տե՛ս Курс политической экономии, т. I, Экономиздат, Москва, 1963, стр. 20): Մ. Ն. Լապտինը գրում է. «Ի տարբերություն ստրկատիրական և ֆեոդալական կարգերի, որտեղ աշխատանքի կազմակերպումը կառուցված էր աշխատողների արտատնտեսական հարկադրանքի վրա, բանվորը կապիտալիստական ֆաբրիկայում հարկադրվում է աշխատանքի տնտեսապես» (տե՛ս **М. Н. Лаптин,** В. И. Ленин о материальных и моральных стимулах к труду, Экономиздат, 1962, стр. 8):



անմիջական իշխանություն չունենար գյուղացու անձի վրա, գրել է Վ. Ի. Լենինը,— ապա նա չէր կարող հարկադրել իրեն համար աշխատելու այն մարդուն, որը հողաբաժին ունի և սեփական տնտեսություն է վարում: Հետևաբար անհրաժեշտ է «արտատնտեսական հարկադրանք»...» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 3, էջ 224: Ընդգծումը մերն է—Մ. Ք.):

Ինչպես տեսնում ենք, Լենինը ֆեոդալական հասարակարգում արտատնտեսական հարկադրանքը տարածում է աշխատանքի այն մասի վրա, որը կատարվում էր ֆեոդալի համար: Իսկապես, ինչպե՞ս կարելի է արտատնտեսական հարկադրանքը տարածել, օրինակ, շաբաթվա այն օրերի աշխատանքի վրա, երբ ճորտն աշխատում էր ի՛ր հողակտորում և ի՛ր համար:

Այստեղից երևում է, որ ֆեոդալական հասարակարգում աշխատանքն ամբողջությամբ հիմնված չի եղել արտատնտեսական հարկադրանքի վրա: Արտատնտեսական հարկադրանքի կողքին եղել են աշխատանքի թույլ, բայց որոշակի խթաններ:

Մեր կարծիքով, բոլոր հասարակական ֆորմացիաներում արտադրողի՝ իր համար կատարած աշխատանքը դուրս է ամեն մի հասարակական հարկադրանքից, այն արտադրողի պահանջմունքների բավարարման նպատակով գործադրված աշխատանք է: Այդ իմաստով էլ հարկադիր աշխատանք չէ:

Անտագոնիստական ֆորմացիաներում, տարբեր դասակարգերի նյութական-տնտեսական շահերի հակամարտության հետևանքով անհրաժեշտ պայմաններ չեն ստեղծվում աշխատավորների նյութական շահերի իրացման համար: Հակասություն է առաջանում աշխատավորների նյութական շահերի և դրանց իրացման պայմանների միջև: Հետևաբար, արտադրողները շահագրգռվածություն հանդես չեն բերում իրենց աշխատանքի արդյունքի մեծացման և արտադրության զարգացման նկատմամբ: Այս հանգամանքը արտադրողական ուժերի նվազման պատճառ է դառնում:

Հասարակության արտադրողական ուժերի զարգացման գործում կարևոր դեր են խաղում նաև կոլեկտիվ նյութական շահերն ու կոլեկտիվ նյութական շահագրգռվածությունը: Կոլեկտիվ նյութական շահերը արտադրության ու բաշխման իրականացման որոշակի պայմանների արդյունք են: Դա առանձնապես վառ է դրսևորվում ժամանակակից արդյունաբերական ձեռնարկություններում, որտեղ միաժամանակ աշխատում են տասնյակ հազարավոր մարդիկ, որոնք միմյանց հետ կապված են արտադրության միասնական պրոցեսով: Արտադրության պրոցեսի միասնության հետևանքով անհատի ներդրումը հասարակական արտադրության մեջ, ավելի ու ավելի է կախման մեջ դրվում ուրիշների աշխատանքային ներդրումից: Առանձին կոլեկտիվի ներսում անձնական շահերը միահյուսվում և դրսևորվում են որպես կոլեկտիվ շահ: Այս պայմաններում առաջ է գալիս կոլեկտիվ նյութական շահը:

Կոլեկտիվ նյութական շահը կարող է երևան գալ նաև արտադրության կոլեկտիվ կազմակերպման ձևի պայմաններում, երբ բացակայում է արտադրական պրոցեսի ընդհանրությունը:

Որոշ տնտեսագետներ, օրինակ, Ի. Վ. Մոժայսկովան, գտնում են, որ կոլեկտիվ շահագրգռվածությունը միայն սոցիալիստական արտադրական հարաբերություններին յուրահատուկ տնտեսական շահերի ձև է (տե՛ս И. В. Можайскова, «Себестоимость, прибыль, премия», изд. «Экономика», Москва, 1964, стр. 19): Այդպիսի պնդումը, մեր կարծիքով, հիմնավոր չէ: Մյուս հասարակական ֆորմացիաներում կոլեկտիվ տնտեսական շահեր անպայման եղել են, չնայած միշտ չէ, որ ուղղակի են արտահայտվել: Նման շահերը դրսևորվել են ինչպես արտադրության կազմակերպման կոլեկտիվ ձևերի, այնպես էլ միմյանց հետ միասնական արտադրական պրոցեսով կապված կապիտալիստական ձեռնարկության ներսում: Իհարկե, կապիտալիստական հարաբերությունների պայմաններում դրանք արտադրության զարգացման կարևոր գործոն չդարձան, որովհետև այնտեղ չստեղծվեցին կոլեկտիվ նյութական շահերի իրացման ռեալ պայմաններ: Այդ պատճառով էլ կոլեկտիվ նյութական շահագրգռվածությունը երևան է գալիս վերջին հաշվով և հասարական

շրջանում լրացվում են, իսկ հետագայում՝ կոմունիզմի ժամանակ, փոխարինվում են այլ ձևերով: Անձնական նյութական շահերի իրացման ձևերի փոփոխությունները հասարակական արտադրողական ուժերի զարգացման օբյեկտիվ պրոցեսների արդյունք են: Հետևապես, դրանք ոչ թե թուլացնում, այլ ուժեղացնում են աշխատողների նյութական շահագրգռվածությունն իրենց աշխատանքի արդյունքով:

Սոցիալիզմի ժամանակ մարդկանց նյութական շահերը (անձնական, կոլեկտիվ, հասարակական) դրսևորվում են ժողովրդական տնտեսության պլանաչափ զարգացման, սոցիալիստական կուտակման, արժեքի, աշխատանքի արտադրողականության անշեղ աճի և տնտեսական այլ օրենքների գործողության մեջ: Այդ շահերը հիմնականում իրացվում են ապրանքա-դրամական հարաբերությունների, պլանավորման, տնտհաշվարկի, գների սիստեմի միջոցով: Այդ նշանակում է, որ սոցիալիզմի օրոք գործող տնտեսական բոլոր օրենքների ու կատեգորիաների ճիշտ կիրառումը ծնում է աշխատողների նյութական շահագրգռվածություն ինչպես իրենց աշխատանքի արդյունքով, այնպես էլ ամբողջ հասարակական արտադրության զարգացմամբ:

Սոցիալիզմից կոմունիզմին անցման շրջանում արտադրողական ուժերի բուռն և արագ զարգացումը որոշակի փոփոխություններ է առաջ բերում արտադրական հարաբերություններում: Ամենօրյա փոփոխություններ են տեղի ունենում նաև մարդկանց նյութական շահերի մեջ: Որպեսզի մարդիկ մշտապես շահագրգռված լինեն հասարակական արտադրության զարգացմամբ, իրենց աշխատանքի արդյունքով, անհրաժեշտ է այդ փոփոխություններին համապատասխան անընդհատ կատարելագործել նյութական շահերի իրացման ձևերը, այսինքն՝ նյութական խթանման սիստեմը: Նյութական խթանման սիստեմի արդյունավետությունը պայմանավորված է տնտեսական օրենքների ճանաչման և օգտագործման աստիճանով:

Հասարակական արտադրության անընդհատ զարգացման պրոցեսում նյութական խթանման սիստեմը պետք է կատարելագործվի, հարմարեցվի տնտեսական օբյեկտիվ պայմաններին: Միայն այդ դեպքում այն կարող է ապահովել աշխատավորների մշտական նյութական շահագրգռվածությունն արտադրության զարգացման գործում:

Ահա թե ինչու ՍՄԿԿ Կենտկոմը և սովետական կառավարությունը միշտ ձգտում են կատարելագործել նյութական խթանման սիստեմը, ստեղծել մարդկանց նյութական շահերի իրացման պայմաններ, շահագրգռել մարդկանց իրենց աշխատանքի և հասարակական արտադրության զարգացման գործում: Այդ նպատակին են ծառայում ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան (1965 թ.) և սեպտեմբերյան (1965 թ.) պլենումների որոշումները:

Մ. ՔՈԹԱՆՅԱՆ

## ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ՈՐԱԿԸ ՈՐՊԵՍ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԿԱՏԵԳՈՐԻԱ

Ժամանակակից գիտատեխնիկական հեղաշրջումը, ինչպես ընդգծվեց ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումում, առաջին պլան է մղում այնպիսի հարցեր, ինչպիսիք են՝ արտադրանքի տեխնիկական մակարդակը, որակը, հուսալիությունը, նրա արդյունավետ օգտագործումը և այլն:

Ժողովրդական տնտեսության համար շատ կարևոր այդ խնդիրների իրականացման և, մասնավորապես, արտադրանքի որակի բարձրացման ուղղությամբ պլենումի ընդունած որոշումներն ընդհանրացումն են որակական այն տեղաշարժերի, որ վերջին տարիներս կատարվել են մեր երկրի էկոնոմիկայում. վերացել է «ապրանքային սովը», երկիրը ներմուծողից դարձել է արդյունաբերական ապրանքներ արտահանող հզոր տերություն, արտադրողական ուժերի բուռն զարգացման շնորհիվ մեծ չափով աճել են հասարակական պա-



հանջմունքները՝ արտադրանքի որակի նկատմամբ, առաջնահերթ են դարձել հասարակական աշխատանքի արդյունավետության բարձրացման խնդիրները և այլն: Դրանք պայմանավորում են արտադրանքի որակի բարելավման կարևորությունը ժողովրդական տնտեսության զարգացման արդի էտապում:

Էկոնոմիկայի զարգացման անխուսափելի հետևանքը հանդիսացող այս նոր երևույթներն առաջ են բերում արտադրանքի որակի պրոբլեմի տեսական խոր ուսումնասիրություններ ու ընդհանրացումներ կատարելու, ինչպես և նրա բարելավման համար միջոցներ և ուղիներ մատնանշելու անհրաժեշտություն:

Իրի օգտակարությունը դրսևորվում է նրա որակի միջոցով: Ուստի սպառարժեքը որպես առարկայի և նրա օգտակարության միասնություն, սերտորեն կապված է որակի հետ: Սպառարժեքի մեծացումը ուղեկցվում է որակի բարձրացմամբ, և որակը բարելավվում է սպառարժեքի ավելացման պայմաններում միայն: Յուրաքանչյուր առարկայի մեջ որոշակի միասնություն են կազմում դրանք: Սպառարժեք չունեցող իրը չունի և որակ: Չկա սպառարժեք, որ որևէ որակ չներկայացնի և չկա որակ, որ սպառարժեքի դրսևորում չլինի: Բայց և այնպես սպառարժեքն ու որակը նույնական չեն: Եթե սպառարժեքն արտահայտում է իրի օգտակարությունն ընդհանրապես, ապա որակը ցույց է տալիս այդ օգտակարության աստիճանը և հանդիսանում է նրա չափը:

Այլ խոսքով, սպառարժեքի հասարակական պիտանիությունը չափվում է նրա որակի միջոցով: Սպառարժեք ունեցող առարկան կարող է հասարակական ճանաչում չգտնել և չիրացվել, եթե ցածրորակ է: Իրի օգտակարությունն արտահայտվում է նրա հատկություններով: Առարկաների հատկությունների ուսումնասիրությամբ զբաղվում են բնական գիտությունները: Այդ առումով, սպառարժեքն ու որակը, որպես իրերի մեխանիկական, ֆիզիկական, քիմիական, կենսաբանական, երկրաչափական և իրային այլ հատկությունների ամբողջություն, տեխնիկական կատեգորիա են:

Առարկաների իրային հատկությունները նկատի ունենալով, Մարքսը իրավացիորեն նշել է, որ սպառարժեքը որպես այդպիսին «...գտնվում է քաղաքատնտեսության հետազոտության սահմաններից դուրս» (Կ. Մարքս, Քաղաքատնտեսության քննադատության շուրջը, Հայպետհրատ, 1948, էջ 14) և կազմում է ապրանքագիտության ուսումնասիրման առարկան (այստեղ և ամենուրեք ընդգծումները մերն են.—Է. Օ.):

Սակայն, դրանով Մարքսը ամենևին էլ չի ժխտում սպառարժեքի դերը հասարակության տնտեսական կյանքում, ինչպես նաիվ կերպով կարծում էին նրա այս տողերը վկայակոչող մեր որոշ տնտեսագետներ:

Ի դեպ, հատկանշական է, որ սպառարժեքի նկատմամբ մարքսյան այս դիրքորոշումը տարակարծություններ առաջացրեց դեռևս նրա կենդանության օրոք: Բուրժուական մի շարք տնտեսագետներ (Ադոլֆ Վագներ և ուրիշներ) Մարքսին մեղադրեցին այն բանի մեջ, թե իբրև նա անտեսել է սպառարժեքի հասարակական-տնտեսական դերը: Մարքսը սակայն բացահայտեց նման հայացքների անհեթեթությունը: «Վագներն ինձ այն մարդկանց շարքն է դասում,— նրա հետ ունեցած բանավեճում գրել է Մարքսը,— որոնց կարծիքով «սպառողական արժեքը» պետք է բոլորովին «զատվի» «գիտությունից»: Այդ բոլորը «անմտություն» է»: «...Ինձ մոտ սպառողական արժեքը կարևոր դեր է խաղում...» (К. Маркс, Замечание на книгу А. Вагнера. «Учебник политической экономики». Соч. изд. 2-е, том 19, стр. 383, 386).

Եվ, իրոք, արտադրության կապիտալիստական եղանակը վերլուծելիս, Մարքսը ապրանքը դիտել է որպես սպառարժեքի ու արժեքի դիալեկտիկական միասնություն, որի մեջ վերջինը որոշվում է առաջինի մեջ առարկայացած աշխատանքի քանակով, այսինքն՝ նրա արտադրության համար հասարականո-

րեն անհրաժեշտ աշխատաժամանակով, իսկ առաջինը հանդես է գալիս որպես վերջինի կրող։ Միաժամանակ, Մարքսը սպառարժեքը դիտել է ոչ թե որպես բնական հատկություններով օժտված իր, այլև որպես «սպառողական արժեք ուրիշների համար», «հասարակական սպառողական արժեք»։

Սպառարժեքի բնույթն ու որակի հետ նրա ունեցած կապը Մարքսը առավել հստակ ցույց է տալիս հետևյալ տողերում. «Քանի որ գնորդների կողմից ապրանքը գնվում է ոչ թե նրա համար, որ այն արժեք ունի, այլ որ այն «սպառողական արժեք» է և գործ է ածվում որոշակի նպատակների համար, ապա ինքնըստինքյան հասկացվում է, որ 1) սպառողական արժեքները «գնահատվում» են, այսինքն՝ հետազոտվում է նրանց որակը (ճիշտ այնպես, ինչպես նրանց քանակը չափվում է, կշռվում է և այլն), 2) երբ ապրանքների տարբեր տեսակներ կարող են միմյանց փոխարինել սպառման միևնույն նպատակների համար, ապա այս կամ այն տեսակին տրվում է նախապատվություն և այլն» (տե՛ս նույն տեղը, էջ 387)։

Այս ամենը վկայում են, որ ապրանքի օգտակարության հարցերն իրենց արժանի տեղն են ունեցել մարքսիստական տնտեսագիտության մեջ։

Սակայն, մեր որոշ տնտեսագետներ Մարքսի՝ մեր կողմից վերևում ցիտված տողերից այն հետևությունն էին արել, թե իբր սպառարժեքն ու որակն արտահայտում են միայն իրային հարաբերություններ և չունեն տնտեսական ինքնուրույն նշանակություն։ Այդ պատճառով նրանք ավելորդ ու անօրինաչափ էին համարում նույնիսկ տնտեսական գրականության մեջ նրանց մասին ամեն մի հարցադրում։ Դեռ ավելին, եղան կարծիքներ (տե՛ս М. В. Колганов, Политическая экономия и математика, «Вопросы экономики», № 12, 1964, стр. 111, 118), թե իբր ապրանքի սպառողական հատկությունների ու հասարակության համար նրանց օգտակարության ուսումնասիրությունը նահանջ է արժեքի աշխատանքային մարքսիստական ուսմունքից և տուրք ավստրիական հոգեբանական դպրոցի կողմից պրոպագանդվող «սահմանային օգտակարություն» հակագիտական տեսությանը։

Ի դեպ, հատկանշական է նաև այն հանգամանքը, որ սպառարժեքի ու որակի տնտեսական կողմի ուսումնասիրման կարևորությունն ընդունող մեր տնտեսագետների աշխատանքներում էլ որակի տեսական հարցերը բավարար չափով չեն լուսաբանվել։ Որոշ հեղինակներ կամ բոլորովին անտեսել են որակի՝ որպես տնտեսական կատեգորիայի, հիմնավորման հարցերը (Աֆանասև, Բրուսսե, Լազարև, Վասիլև, Գոստև և հանրամատչելի տնտեսական գրականության այլ հեղինակներ) կամ էլ քննարկել են հարևանցիորեն, առանց դրա էության մեջ խորապես թափանցելու (Ալեքսանդրովսկի, Բելոուսով, Օրլով, Կուզմին, Կապիտոնով, Սիսկով և ուրիշներ)։

Այս պատճառով այժմ հրապարակի վրա եղած տնտեսագիտական գրականության մեջ դժվար է ցույց տալ մի աշխատություն, որտեղ համակողմանիորեն տրված լինի որակի՝ որպես տնտեսական կատեգորիայի, հիմնավորումը և բացահայտված լինի նրա կապը սոցիալիզմի տնտեսական օրենքների և կատեգորիաների հետ։

•

Տնտեսական կատեգորիա լինելու համար արտադրանքի որակն, ամենից առաջ, պետք է արտահայտի արտադրական որոշ հարաբերություններ։ Իսկ այն արտահայտո՞ւմ է արդյոք նման հարաբերություններ։

Որոշակի որակ ունեցող արտադրանքն ստեղծվում է նյութական արտադրության պրոցեսում, կենդանի ու առարկայացած աշխատանքի որոշակի ծախսումներով։ Հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման գործում կարևոր է թողարկված արտադրանքի որակի և դրա արտադրման վրա թափված հասարակական աշխատանքի ծախսումների հարաբերությունը։ Այս կամ այն արտադրանքի թողարկման կամ նրա որակի բարձրացման միջոցառումների տնտեսական հիմնավորման համար հարկավոր է ել-



նել նվազագույն ծախսումներով առավելագույն օգտակարություն ունեցող արդյունքի ապահովման սկզբունքից։

Արտադրանքի օգտակարության հարցերն անպայման հաշվառման ենթակա են նաև արտադրության բանաձևային կառուցվածք ու համամասնություններ սահմանելիս։ Արտադրության տարբեր ստորաբաժանումների ու ճյուղերի, ինչպես նաև արտադրանքի տարբեր տեսակների միջև համամասնությունները չեն կարող օպտիմալ լինել, եթե դրանց սահմանման ժամանակ անտեսվել է արտադրանքի հասարակական օգտակարության հանգամանքը։

Արտադրանքի որակը որոշակի ներգործություն է ունենում նաև արտադրական ճյուղերի զարգացման տեմպերի ու ձեռնարկությունների տնտեսական հարաբերությունների վրա։ Թողարկվող արտադրանքի որակի բարձրացմամբ ավելի անմիջական ու բարենպաստ են դառնում արտադրական հարաբերությունները ձեռնարկության ու հասարակության, ձեռնարկության ու տնտեսական առանձին միավորումների և, ամբողջությամբ վերցրած, ձեռնարկության կոլեկտիվի ու նրա անդամների միջև։ Ավելի կոնկրետ ասած, այդ արտահայտվում է հետևյալում. արտադրանքի որակի բարելավմամբ արագանում է իրացման պրոցեսը, կրճատվում են արտաարտադրական ծախսերը, ավելանում է շահույթը։ Իսկ դա նպաստում է բյուջեի եկամուտների աճին։ Բացի այդ, բարձրորակ արտադրանքի թողարկումը հնարավորություն է տալիս ժամանակին կատարելու տնտեսական միավորների հետ ձեռնարկության ունեցած պայմանագրային պարտավորությունները։ Եվ, ի վերջո, արտադրանքի որակի բարելավմամբ հնարավորություն է ստեղծվում ավելացնելու խրախուսման ֆոնդերին կատարվող հատկացումների գումարը և դրանով իսկ լավացնելու աշխատողների նյութական ու կենցաղային պայմանները։ Ի դեպ, դրան մեծապես կնպաստի բարձրորակ արտադրանքի գնի վրա հավելադիրներ սահմանելու և որակի բարելավման համար աշխատողներին նյութապես խրախուսելու մասին ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի որոշման կենսագործումը։ Արտադրանքի որակի բարձրացումը և խոտանի վերացումը նպաստում են նաև ձեռնարկության ղեկավար անձնակազմի և բանվորների հարաբերությունների մերձեցմանը, որովհետև, եթե վատորակ արտադրանք չի լինում, ավելորդ է նաև վատորակ արտադրանքի համար նյութական պատասխանատվության ենթարկելը։

Արտադրանքի որակն արտահայտում է մարդկանց միջև գործունեության փոխանակման հարաբերություններ։ Նյութական արտադրության հարակից ճյուղերի միջև գործունեության փոխանակում կատարվում է արտադրամիջոցների, իսկ արտադրության ու ժողովրդական սպառման միջև՝ անձնական սպառման առարկաների որակի միջոցով։

Արտադրանքի որակը կապված է նաև բաշխման հարաբերությունների հետ։ Ստեղծված հասարակական արդյունքից ավելի մեծ բաժին ստանալու իրավունք ունի նա, ով նույն քանակի դեպքում ձեռք է բերել ավելի բարձրորակ արտադրանք։ Եվ, բացի այդ, քանի որ արտադրանքի որակի բարելավմամբ մեծանում է ազգային եկամուտը, ապա վերջինիս բաշխման ու վերաբաշխման միջոցով հասարակության և նրա առանձին օղակների ու անդամների միջև տեղի ունեցող տնտեսական հարաբերությունների մեջ իր ուրույն մասն ունի նաև արտադրանքի որակը։

Վերջապես, ամեն մի արտադրանք թողարկվում է սպառման համար։ Արտահայտելով արտադրողների ու սպառողների տնտեսական հարաբերությունները, բարձրորակ արտադրանքը հասարակական ավելի մեծ պահանջմունք է բավարարում և, ցածրորակ արտադրանքի համեմատ, սպառման պրոցեսում ստեղծում է շահագործական ծախսերի ավելի փոքր կարիք։

Այսպիսով, արտադրանքի որակը սերտորեն կապված է տնտեսական հարաբերությունների հետ՝ արտադրության պրոցեսում, մարդկանց գործունեության ու նյութական բարիքների փոխանակման, բաշխման և սպառման ոլորտում։

Սակայն, հայտնի է, որ այդ տնտեսական հարաբերությունների հիմքում ընկած են սեփականության հարաբերությունները, որոնք, ըստ էության, որոշում են, թե ում են պատկանում արտադրամիջոցները և պայմանավորում հասարակական արդյունքի բաշխման ու սպառման եղանակները: Սեփականության հարաբերությունները որոշում են նաև արտադրանքի որակի բարելավման գործում արտադրողի շահագրգռվածության աստիճանը: Այս տեսակետից արտադրանքի որակը կապվում է սեփականության հարաբերությունների հետ և որոշակի ազդեցություն կրում տիրապետող արտադրահարաբերությունների բնույթից:

Այսպիսով, արտադրանքի որակի միջոցով որոշակիորեն արտահայտվում են մարդկանց միջև օբյեկտիվորեն առաջացող արտադրական հարաբերություններ, ուստի, այս առումով, արտադրանքի որակը, ըստ մեզ, հանդես է գալիս որպես տնտեսական կատեգորիա և կազմում քաղաքատնտեսության ուսումնասիրման առարկան: Ընդսմին քաղաքատնտեսությունը բնականաբար հետազոտում է ոչ թե առարկաների բնական հատկությունները, որոնց ամբողջությունը կազմում են սպառարժեքն ու որակը (դա ապրանքագիտության խնդիրն է), այլ իրերի հատկությունների իմացությունից ելնելով՝ ուսումնասիրում նրանց հասարակական գնահատման սկզբունքները և տարբեր սպառողական հատկություններով արդյունքների արտադրման հարաբերակցությունները՝ կախված հասարակության պահանջմունքների մակարդակից և նրա զարգացման հեռանկարներից: Տնտեսագիտությունը զբաղվում է նաև առարկաների օգտակարության բարձրացման համար աշխատողների նյութական խրախուսման, կատարված ծախսումների տնտեսական արդյունավետության բարձրացման և այլ հարցերով:

Պնդելով, որ արտադրանքի որակը տնտեսագիտության ուսումնասիրման օբյեկտ է, մենք, միաժամանակ, հակված ենք այն մտքին, որ դա ոչ թե սպեցիֆիկ, այլ համընդհանուր տնտեսական կատեգորիա է: Այն հասարակական կյանքի երևույթներին կապվում և որոշակի արտադրահարաբերություններ է արտահայտում տնտեսական ամեն մի ֆորմացիայում:

Այն տնտեսակարգերում, որտեղ արտադրության միջոցներն անջատված են անմիջական արտադրողներից, և գոյություն ունի մասնավոր սեփականության մոնոպոլիա, սպառարժեքի արտադրությունը ենթարկվում է շահույթի կուտակման գերագույն խնդրին: Սակայն մրցակցային կատաղի պայքարն, այնուամենայնիվ, ստիպում է կապիտալիստներին՝ հաշվի նստելու արտադրանքի որակի բարելավման հետ: Կապիտալիստական երկրներում լույս տեսած մի շարք մենագրությունների հեղինակների կարծիքով մրցակցային պայքարի ծանրության կենտրոնը ներկայումս գների բնագավառից փոխադրվել է ապրանքների որակի բնագավառը: Մրցակցի արտադրանքի որակին չզիջող որակի ապահովումը հանդիսանում է կապիտալիստական ձեռնարկությունների գոյության հիմքը: Հիմնականում դա է պատճառը, որ կապիտալիստական հասարակարգում բազմաթիվ կեղծված ու վատորակ ապրանքների կողքին ստեղծվում են բարձրորակ ու համաշխարհային ճանաչում գտնող առարկաներ: Սակայն մրցակցային պայքարի միջոցով որակի բարելավումը նույնպես չունի բացարձակ բնույթ: Ապրանքների արտադրության ու վաճառքի գործում մոնոպոլ դիրք նվաճելով, կապիտալիստական միավորումները վատթարացնում են արտադրանքի որակը, կորզում բարձր շահույթներ:

Արտադրանքի որակի բարելավման մեծ հնարավորություններ են ստեղծվում սոցիալիստական հասարակարգում, որտեղ որակի բարձրացման խնդիրները ոչ թե բախվում են արտադրության նպատակի ու հիմնական տնտեսական օրենքի պահանջների հետ, այլ, ընդհակառակը, ձուլվում են դրանց: Արտադրության միջոցների համաժողովրդական սեփականության պայմաններում աշխատավորները շահագրգռված են արտադրանքի որակի բարելավմամբ, որովհետև դրանով ավելանում է ազգային եկամուտը և նպաստում հասարակական պահանջմունքների բավարարմանը: Բացի դրանից,



բարձրորակ առարկաների ձեռքբերմամբ ավելանում է ռեալ աշխատավարձը, քանի որ որոշ պահանջմունքների լավ բավարարումը ստեղծում է այլ պահանջմունքների համար զգալի միջոցներ ազատելու հնարավորություն:

Արտադրանքի որակը սերտորեն կապված է նաև սոցիալիզմի մյուս օրենքների հետ: Պլանաչափ, համամասնական զարգացման օրենքի հետ նրա կապն արտահայտվում է նրանում, որ վատորակ արտադրանքի թողարկումը կարող է դառնալ պլանային առաջադրանքները չկատարելու և մասնակի անհամամասնությունների առաջացման պատճառ: Սոցիալիստական հասարակարգում արտադրանքի որակի բարձրացման մեջ ակներև դրսևորվում է աշխատանքի արտադրողականության անշեղ աճման օրենքը: Արտադրանքի որակի բարձրացումը նշանակում է միավոր ժամանակում արտադրանքի թողարկման ծավալի ավելացում կամ միավոր արտադրանքի վրա ժամանակի կրճատում: Արժեքի օրենքի հետ արտադրանքի որակի կապն արտահայտվում է այն բանում, որ որոշակի արժեք ունեցող ցածրորակ արտադրանքը կարող է չիրացվել և հակասություն ստեղծել ապրանքի արժեքի ու սպառարժեքի միջև: Եվ, վերջապես, արտադրանքի որակի բարելավման համար մղվող պայքարը անիմաստ է պատկերացնել առանց նրա՝ ըստ աշխատանքի բաշխման օրենքի հետ ունեցած կապի: Սոցիալիզմի ժամանակ բաշխումը կատարվում է ո՛չ միայն ըստ քանակի, այլև ըստ թողարկված արտադրանքի որակի, որը և խթան է ստեղծում նրա բարելավման համար: Արտադրանքի որակը որպես տնտեսական կատեգորիա սերտորեն կապված է նաև սոցիալիզմի տնտեսական մյուս կատեգորիաների՝ ինքնարժեքի, գնի, շահութաբերության, նյութական շահագրգռվածության և այլնի հետ:

Սոցիալիստական արտադրահարաբերությունների բնույթը և դրանով պայմանավորված տնտեսական օրենքների գործադրությունը նպաստավոր պայմաններ են ստեղծում արտադրանքի որակի բարելավման համար: Սոցիալիստական հասարակարգում արտադրանքի որակի բարձր մակարդակ ապահովելու հնարավորությունների մասին վկայում են միջազգային ցուցահանդեսներն ու տոնավաճառները: Բրյուսելի Համաշխարհային ցուցահանդեսում, օրինակ՝ սովետական տաղավարի էքսպոնատները արժանացան 500-ից ավելի պարգևի, այդ թվում՝ մոտ 100 «Գրան-պրիի» (Մեծ մրցանակ), նույնքան պատվոգրի, մոտ 100 ոսկե և 200-ից ավելի արծաթյա ու բրոնզե մեդալների: Իսկ անցյալ տարի Լայպցիգի հոբելյանական տոնավաճառում մեր 24 արտադրանքների, այդ թվում ածխահատ կոմբայն «ՈԻԿՐ—ԻԿ», դիզելային-էլեկտրական տրակտոր «ԴԵՏ—250», նկարչական ապարատ «Զորկի—10», հայկական գորգ «Երևան» և այլն, տրվեց ոսկե մեդալ: Միության մեջ և արտասահմանում իրենց որակով մեծ համբավ են ձեռք բերել մեր հանրապետության թողարկած էլեկտրոնային հաշվիչ մեքենաներն ու կոնյակները, զարթուցիչ ժամացույցներն ու հաստոցները, ինչպես նաև արտադրական ու անձնական սպառման մի շարք այլ առարկաներ:

Բարձրորակ արտադրանք կարելի է թողարկել միայն սոցիալիզմի տնտեսական օրենքների պահանջները ճիշտ ու ժամանակին հաշվի առնելու միջոցով: Սակայն, դեռ մինչև վերջերս մեր տնտեսական պրակտիկայում տեղ էին գտել մի շարք թերություններ, որոնց հետևանքով լիովին չէին հաշվի առնվում այդ պահանջները: Արդյունաբերական ձեռնարկություններում աշխատանքի վարձատրությունը կատարվում էր քանակական ցուցանիշներով, առանց որակական ցուցանիշները անհրաժեշտ չափով հաշվի առնելու: Ձեռնարկությունների արտադրական գործունեությունը գնահատվում էր համախառն արտադրանքով ու ինքնարժեքի իջեցմամբ, որոնց ապահովումը ոչ միշտ էր ուղեկցվում արտադրանքի որակի բարելավմամբ: Արտադրանքի որակի բարելավումը արգելակվում էր նաև այն բանի հետևանքով, որ գնագոյացման պրակտիկայում անտեսվում էր առարկայի օգտակարության հատկանիշը: Գոյություն չուներ որակի բարելավման նյութական խրախուսման հստակ սիստեմ: Այս և մի շարք այլ թերությունների հետևանքով լրիվ չեն օգտագործվում արտադրանքի

որակի բարելավման ուղղությամբ սոցիալիստական տնտեսությանը ներհատուկ բոլոր հնարավորությունները։ Մեր առանձին ձեռնարկություններ թողարկում են ցածրորակ առարկաներ, որոնք ժողովրդական տնտեսությանը պատճառում են հսկայական վնասներ։ Ցածրորակ արտադրանք շատ է թողարկվում, հատկապես, անձնական սպառման առարկաների գծով։ ՌՍՖՍՀ առևտրի մինիստրության որակի պետական տեսչությունը 1964 թվականի առաջին կիսամյակում խոտանել է ստուգված կաշվե կոշկի՝ 28,1, կարի արտադրանքի՝ 33,1 և տրիկոտաժի՝ 27 տոկոսը։ Դրությունը բարվոք չէ նաև մեր հանրապետությունում, որտեղ առևտրի մինիստրության որակի պետական տեսչության 1965 թվականի ստուգման տվյալներից երևում է, որ ստուգվածներից իջեցվել է կարի արտադրանքի՝ 4, տրիկոտաժի՝ 4, գուլպա-նասկեղենի՝ 4, կաշվե կոշկի՝ 15, կաշվե գալանտերեայի առարկաների՝ 5, ապակյա, ճենապակյա ու հախճապակյա ամանեղենի 37 տոկոսի որակը և ստուգված ապրանքներից (համապատասխանաբար) խոտանվել է 15, 9, 9, 18, 19 և 8 տոկոսը։ Ստուգված 5432 միավոր կահույքից խոտանվել են 5296-ը կամ ստուգված քանակի 97,4 տոկոսը։ 1960—1965 թվականներին Հայկոշարի մեծածախ բազան ստուգված 4 միլիոն 588 հազար զույգ կոշիկից իջեցրել է 380 հազար զույգի տեսակը և շտկման համար ետ վերադարձրել 171,5 հազար զույգ, որոնք համապատասխանաբար կազմում են ստուգված ամբողջ քանակության 8,2 և 3,5 տոկոսը։ Միայն 1965 թվականին Հայհագուստառի բազան ցածր տեսակի է իջեցրել և շտկման համար ետ վերադարձրել ստուգված կարի արտադրանքի մոտ 14 տոկոսը։ Առևտրական կազմակերպություններին ցածրորակ արտադրանք մատակարարելու դիմաց կոշկի «Մասիս» ֆիրման 1962—1964 թվականներին վճարել է 443 հազար ռուբլի տուգանք, իսկ կարի ֆաբրիկաները՝ 224 հազար ռուբլի։ Հիմնականում անձնական սպառման առարկաների վատ որակի հետևանքով է, որ մանրածախ առևտրի ցանցում աճում են գերնորմատիվային պաշարները։ Այս վերջիններիս աճման տեմպերը գերազանցում են ապրանքաշրջանառության աճման տեմպերին։ 1959—64 թթ. ընթացքում ապրանքային պաշարները երկրում ավելացել են 73 տոկոսով, իսկ ապրանքաշրջանառությունը՝ միայն 42։ Առանձին ապրանքային խմբերի պաշարներն աճել են նույնիսկ ավելի մեծ չափերով։ Բրդյա գործվածքների, հագուստի ու կոշկեղենի պաշարներն, օրինակ, ավելացան 3, կահույքինը՝ 5, կարի մեքենաներինը՝ 6 անգամ։ Այս գերնորմատիվային պաշարների իրացման համար 1965 թվականին, բյուջեի միջոցների հաշվին, ապրանքների գների միանվագ իջեցում կատարվեց՝ 1124 միլիոն ռուբլու չափով։

Արդյունաբերության կառավարումը բարելավելու, պլանավորումը կատարելագործելու և արդյունաբերական արտադրության տնտեսական խթանումն ուժեղացնելու մասին սեպտեմբերյան պլենումի որոշումները մեծ դեր կխաղան հասարակական աշխատանքի այդպիսի վատնումներ հարուցող պատճառների վերացման և արտադրանքի որակի բարձրացման գործում։

Է. ՕՐԴՅԱՆ

---

## ԳՆԵՐԻ ԿԱՐԳԱՎՈՐՄԱՆ ԱՆՀԵՏԱՁԳԵԼԻ ՀԱՐՑԵՐ

ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումը մեծ ուշադրություն նվիրեց գնագոյացման հարցին։ Նախատեսվեց 1967—1968 թվականների ընթացքում մեծածախ գների ռեֆորմ անցկացնել, որի հիմնական նպատակն է գինը մոտեցնել հասարակականորեն անհրաժեշտ աշխատանքային ծախսումներին և հաշվի առնել գնագոյացման մյուս գործոնները։

Գների մակարդակի վրա ազդող գործոնները կարելի է խմբավորել ըստ հետևյալ երկու հատկանիշների. առաջին՝ արժեգոյացնող գործոններ, որոնք



անմիջական ազդեցություն են ունենում արժեքի մեծության վրա (աշխատանքի արտադրողականություն, բանվորների որակավորման բարձրացում, արտադրության տեղակայում, բնական և աշխարհագրական պայմաններ և այլն), երկրորդ՝ գնագոյացնող գործոններ, որոնք գինը շեղում են արժեքից. դրանք են՝ 1. արտադրանքի սպառողական հատկանիշները, 2. ֆոնդատարությունը, 3. առաջարկն ու պահանջարկը, 4. սոցիալական գործոնը։

Արտադրանքի սպառողական հատկանիշներ ասելով նկատի ունենք ա) նույն տեսակի արտադրանքի տարբեր նմուշների որակը, բ) անձնական կամ արտադրական սպառման մեջ տարբեր տեսակի արտադրանքների փոխադարձ փոխարինելիությունը։

Այժմ մեր տնտեսական պրակտիկան այնպիսին է, որ ձեռնարկության տնտեսական աշխատանքի արդյունավետությունը, առաջին հերթին, գնահատվում է ընթացիկ ծախսերի տնտեսմամբ, որի հետևանքով, հաճախ, երկրորդ պլանի վրա է մղվում թողարկվող արտադրանքի սպառողական հատկանիշների բարելավման խնդիրը։ Այդ պայմանավորվում է նրանով, որ գնի միջոցով չի խրախուսվում բարձրորակ արտադրանքի թողարկումը։

Որպեսզի գինը ինչպես արդյունքն արտադրողին, այնպես էլ սպառողին շահագրգռի տնտեսելու կենդանի և առարկայացած աշխատանքը, պետք է արտացոլի ապրանքի սպառողական հատկանիշները։ Արտադրանքի որակի հուսալիության և դիմացկունության բարձրացման գործում գնի մեծ դերի մասին նշվեց նաև ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան (1965 թ.) պլենումում։ ՍՄԿԿ XXIII համագումարում թողարկվող արտադրանքի որակի բարելավման հարցը դիտվեց իբրև ժողտնտեսության զարգացման ամենաակտուալ խնդիրներից մեկը։ Տեխնիկական պրոգրեսի արագացման գործում արտադրանքի որակի բարելավման, մեքենաների և սարքավորումների ծառայության ժամկետի երկարացման հարցերը ստանում են հատուկ նշանակություն, որովհետև որքան բարձր է արդյունքի որակը, այնքան արդյունավետ և արտադրողական է ողջ հասարակական աշխատանքը։

Հայտնի է, որ արժեք ունեն աշխատանքի միայն այն արդյունքները, որոնք օժտված են սպառողի համար օգտակար հատկություններով։ Եթե իրի նկատմամբ պահանջարկ չկա, ապա, ինչպես Մարքսն է գրում «Կապիտալ»-ում, դրա վրա ծախսված աշխատանքը ևս անօգուտ է և արժեք չի ստեղծում։ Այլ խոսքով, աշխատանքը հասարակականորեն անհրաժեշտ է դառնում միայն այն դեպքում, երբ արտադրում է հասարակության պահանջները բավարարելու ունակ իր։ Սրանով իսկ գինը, իբրև հասարակականորեն անհրաժեշտ աշխատանքային ծախսումների արտացոլում, սերտ կապված է սպառողական արժեքի հետ։

Արտադրանքի որակի բարելավումը հաճախ լրացուցիչ ծախսեր է պահանջում, որոնք հասարակականորեն անհրաժեշտ են ժողովրդատնտեսական շահերի տեսանկյունից։ Այդ պատճառով էլ նման ծախսերի փոխհատուցումը տնտեսապես կհիմնավորվի՝ գնի համապատասխան բարձրացմամբ։

Գների այժմյան գործող սիստեմի պատճառով ձեռնարկությունները շահագրգռված չեն բարձրացնելու արտադրանքի որակը, որովհետև նրանց լրացուցիչ ծախսերը չեն փոխհատուցվում և հասարակության համար շահավետ արդյունքը ձեռնարկության համար դառնում է վնասաբեր։ Այդ բանը պարզ երևում է ավտոդողերի արտադրության մեջ գնագոյացման պրակտիկայի

ուսումնասիրությունից։ Հայտնի է, թե որքան մեծ նշանակություն ունի այս ճյուղի արտադրանքի որակի բարձրացումը։ Այսպես, ավտոդողերի վազքունակությունը միայն մեկ տարում 20 տոկոսով ավելացնելը համարժեք է 5 միլիոն դողի լրացուցիչ թողարկման։ Այդ թիվը կտա բավարարելու 1,1 միլիոն ավտոմեքենայի պահանջարկը։ Ահա մի քանի տվյալներ, որոնք ցույց են տալիս, որ ավտոդողերի արդյունաբերությունը ռեալ հնարավորություններ ունի այդ նպատակին հասնելու համար։ Ըստ ավտոտնտեսությունների տվյալների, Յարոսլավլի ավտոդողերի գործարանի թողարկած դողերով արվում է 32—40 հազար կիլոմետր վազք, Մոսկվայի ավտոդողերի գործարանի 25—30, իսկ Դնեպրոպետրովսկի գործարանինը միայն 8—10 հազար կմ։ Յարոսլավլի գործարանի արտադրած դողերը զգալի չափով գերազանցում են երաշխավորված վազքը, շնորհիվ գործարանում օգտագործվող կորդի նոր տեսակի, որը դողի վազքունակությունը մեծացնում է 30—40 տոկոսով։ Սակայն նոր կորդի գինը բարձր է և, բնականաբար, ավելացնում է միավոր արտադրանքի ինքնարժեքը։ Քանի որ Յարոսլավլի գործարանի բարձրորակ դողը Մոսկվայի և ուրիշ գործարանների արտադրանքի գինն ունի, ձեռնարկությունում խիստ նվազում է շահութաբերությունը։ Այսպիսով, ձեռնարկության կոլեկտիվը, որ ժողովրդատնտեսական մեծ արդյունքի էր հասել, գնագոյացման պրակտիկայի անկատարության հետևանքով ընկնում է տնտեսական համեմատաբար վատ դրության մեջ։ Մեր կարծիքով, գները պետք է սահմանել այսպես. պետական ստանդարտի համեմատությամբ բարձրորակ արտադրանքը պետք է ունենա բարձր, իսկ ցածրորակ արտադրանքը՝ ցածր գին։

Գների դիֆերենցումն ըստ որակի պետք է հիմնվի որակի բարձրացման և դրա շնորհիվ հասարակական աշխատանքի տնտեսման սկզբունքի վրա, քանի որ որակը հայտնի չափով փոխարինում է քանակին։ Այսպիսի գները կնպաստեն որակի բարձրացմանը, ապահովելով արտադրողի համար բարձր շահույթ, սպառողի համար՝ լրացուցիչ օգուտ։ Բարձրորակ արտադրանքի թողարկումը խթանող նյութական աղբյուրը պետք է լինի դրա օգտագործման շնորհիվ սպառման պրոցեսում ստացված տնտեսումը, որի մի մասը բացթողման գնի մեջ հաշվարկելու միջոցով կարվի արդյունաբերողին։ Ավելի կատարյալ առարկաների գները սահմանելիս պետք է հաշվի առնել, թե՛ աշխատուժի լրացուցիչ ծախսումները, թե՛ տնտեսական այն արդյունքը, որ սպառողները կստանան լավորակ արտադրանքի օգտագործումից։

Գնի և սպառողական արժեքի մեջ կապ հաստատելը դժվարանում է նրանով, որ տարբեր ապրանքներ, օժտված լինելով միանման օգտակար հատկություններով, հանդես են գալիս իբրև միատնական սպառարժեք։ Արդյունքը նույնպես կարող է բազմաթիվ հատկություններ ունենալ, և դրանով իսկ տարբեր պահանջարկներ բավարարել։ Ուստի հարց է առաջանում, ինչպե՞ս սահմանել միմյանց փոխարինող արտադրանքների գները։

Ըստ տնտհաշվարկի սկզբունքի, նույն պահանջմունքը բավարարող ապրանքը սպառողին պետք է վաճառվի միասնական գներով։ Փոխադարձ փոխարինելի արտադրանքի գները պետք է համաձայնեցվեն այնպես, որ դրանց օգտագործման տնտեսական արդյունքները մնան նույնը, անկախ այն բանից, թե ձեռնարկությունը փոխադարձ փոխարինելի հումքի ինչ տեսակ է օգտագործում։

Միմյանց փոխարինող ապրանքների գները սահմանելիս պետք է հետևել



պահանջների հավասար բավարարման համար հավասարամեծ գնի սկզբունքին։ Ապրանքների փոխարինելիությունը հաշվի առնող գների սահմանումը կնպաստի փոխարինիչների արտադրության և սպառման ռացիոնալ կառուցվածքի ստեղծմանը, դեֆիցիտային ապրանքները ոչ դեֆիցիտայինով փոխարինելուն։

Գնագոյացման կարևորագույն խնդիրներից է այն հարցը, թե գինը պետք է արտացոլի միայն ընթացի՞կ ծախսերը (ինքնարժեքը), թե՞ նրա մեջ պետք է արտացոլվեն նաև շենքերի, սարքավորումների և այլ արտադրական ֆոնդերի ձեռքբերման համար կատարված միաժամանակյա ծախսումները։

Ըստ գնագոյացման գործող սկզբունքի, արդյունքի արտադրության հասարակական ծախսերի հաշվարկման ժամանակ, ընդլայնված վերարտադրության ծախսերը հաշվի չեն առնվում։ Այդ բացատրվում է նրանով, որ ինքնարժեքն ապահովում է պարզ վերարտադրության իրականացումը, քանի որ այն հաշվի է առնում միայն ամորտիզացիոն հատկացումները։ Ստացվում է այնպես, որ հասարակությունը միավոր արտադրանքի վրա ծախսում է ավելի շատ միջոցներ, քան այն, ինչ արտացոլված է նրա արտադրական ծախսերի մեջ։

Դժվար չէ ապացուցել, որ տարբեր ապրանքների մեջ առարկայացված նույն մեծությամբ արժեքը կարող է ստեղծվել արտադրական ֆոնդերի մեջ տարբեր քանակությամբ կապիտալ ներդրումների միջոցով։ Պլանային գնագոյացումը չի կարող հաշվի չառնել այն, որ ավելի ֆոնդատար արդյունքի արտադրությունը պահանջում է մեծ ներդրումներ արտադրական ֆոնդերի մեջ։

Պրակտիկան ցույց է տալիս, որ միայն ընթացիկ ծախսերով առաջնորդվելը հանգեցնում է այն բանին, որ դրանք տնտեսվում են հաճախ արտադրական ֆոնդերում արված չափից մեծ ներդրումների, կամ արտադրանքի որակի վատացման հաշվին։ Ըստ գնագոյացման արդի սիստեմի, գները որոշվում են ինքնարժեքով, որի մեջ հիմնական ֆոնդերը մտնում են միայն ամորտիզացիայի չափով։ Վերջինս լրիվ չի արտացոլում ֆոնդերի փաստացի օգտագործման մակարդակը։ Նման գներն ստեղծում են այնպիսի օբյեկտիվ պայմաններ, որոնք հնարավորություն չեն տալիս արդյունավետ օգտագործելու ֆոնդերը։

Հիմնական ֆոնդերն արտադրության ծախսերի վրա ունեն երկակի ազդեցություն։ Մի կողմից՝ դրանք ենթարկվում են ամորտիզացիայի, այսինքն՝ օգտագործման ընթացքում իրենց արժեքը մաս առ մաս փոխանցում են նորաստեղծ արդյունքի արժեքի մեջ, դրանով իսկ մեծացնելով ընթացիկ ծախսերի ծավալը, մյուս կողմից՝ արտադրական ֆոնդերն այդ ծախսերի տնտեսման գործոն են նաև այլ հոդվածների գծով (կենդանի աշխատանքային ծախսումների կրճատում և աշխատանքի արտադրողականության բարձրացում, հումքի, նյութերի ավելի էժան ու արդյունավետ տեսակների օգտագործում և այլն)։ Վերջին հաշվով իջնում է ինքնարժեքի մակարդակը, որը կապիտալ ներդրումների արդյունավետության հիմնական ցուցանիշներից մեկն է։ Չնայած այս ամենին, որոշ տնտեսագետներ գտնում են, որ ամորտիզացիան լրիվ պատկերացում է տալիս արտադրական ֆոնդերի օգտագործման մասին։

Վիճակագրական նյութերը ցույց են տալիս, որ արտադրության մեջ ամորտիզացիոն ֆոնդը վերջին տարիներին կազմել է հիմնական ֆոնդերի արժեքի 5,5—6 տոկոսը, իսկ նույն ժամանակաշրջանում կապիտալ ներդրումների արդյունավետության գործակիցը եղել է 12—15 տոկոս։ Այսպիսով, վերջին ցուցանիշը երկու և ավելի անգամ մեծ է առաջինից։ Նման դեպքում ձեռնարկու-

թյան համար շահավետ է ձեռք բերել նոր սարքավորումներ, նույնիսկ այն դեպքում, եթե նա չի կարողանում ապահովել դրանց օգտագործման միջին տնտեսական արդյունավետությունը։

Տնտեսական արդյունավետությունն ամենից մեծ կլինի այն դեպքում, երբ արտադրանքի միավորի արտադրության ընթացիկ ծախսերը օպտիմալ կերպով զուգակցվեն արտադրական ֆոնդերում կատարված կապիտալ ներդրումների հետ։ Այդ բանին հնարավոր է հասնել միայն այն ժամանակ, երբ գինն արտացոլի արդյունքի արտադրության ֆոնդատարությունը։ Այդ նպատակով ինքնարժեքին պետք է գումարել վրաեկ՝ ձեռնարկության հիմնական և շրջանառու ֆոնդերի արժեքի որոշակի տոկոսի չափով։ Այսպիսի կառուցվածք ունեցող գինը կդառնա ֆոնդերի դիմաց տրվելիք վճարի տնտեսական հիմքը։

Մեր արտադրության զարգացման արդի էտապում արտադրական ֆոնդերի օգտագործման բարելավման հարցը ունի առաջնահերթ նշանակություն։ Դա պայմանավորված է նրանով, որ արտադրական ֆոնդերի լավ օգտագործումը կնպաստի առանց լրացուցիչ կապիտալ ներդրումների թողարկվող արտադրանքի քանակի մեծացմանը և հասարակության կարիքների առավել լրիվ բավարարմանը։ Այսպես. եթե 1964 թվականին հասարակական ամբողջական արդյունքը կազմում էր մոտավորապես 390 միլիարդ ռուբլի, ապա հիմնական արտադրական ֆոնդերի արժեքը 1965 թվականի սկզբին հասավ 470 միլիարդ ռուբլու։ Այս տվյալները պարզ պատկերացում են տալիս այն մասին, թե որքան կարևոր է ամենամեծ հատուցմամբ օգտագործել ժողովրդի աշխատանքով ստեղծված այդ հսկայական հարստությունը՝ հիմնական արտադրական ֆոնդերը։ Նախնական հաշվարկները ցույց են տալիս, որ հիմնական ֆոնդերի հատուցումը միայն մեկ տոկոսով ավելացնելը հավասարազոր է 2 միլիարդ ռուբլու արտադրանքի լրացուցիչ թողարկմանը։

Որպեսզի ձեռնարկությունները շահագրգռված լինեն իրենց հատկացված արտադրական ֆոնդերի լավ օգտագործմամբ, պարտիայի Կենտկոմի սեպտեմբերյան (1965 թ.) պլենումը խնդիր դրեց ձեռնարկության շահույթից բյուջեին արվող մասհանումները կախման մեջ դնել նրանց հիմնական և շրջանառու ֆոնդերի արժեքից՝ արտադրական ֆոնդերի դիմաց վճարի ձևով։ Ընդ որում, նախատեսվում է արտադրական ֆոնդերի վճարը սահմանել երկար ժամկետի համար, կայուն դրույքներով։

Գնագոյացման և պլանավորման գործող սիստեմի հիմքում ընկած՝ հիմնական ֆոնդերի անվճարելիության սկզբունքը հանգեցրեց լուրջ թերությունների։ Ձեռնարկությունները պահանջում և ստանում էին լրացուցիչ սարքավորումներ նույնիսկ այն դեպքում, երբ նրանց արտադրական կարողություններն օգտագործվում էին թերբեռնվածությամբ։ Այսպես, օրինակ, 1960 թվականին Սովետական Միության տարբեր քաղաքներում գտնվող 215 մեքենաշինական ձեռնարկություններում կատարված ժամանակաչափման (խրոնոմետրաժի) տվյալները ցույց տվին, որ առաջին հերթափոխում պարապուրդով աշխատել են մետաղահատ հաստոցների կեսից ավելին. երկրորդ հերթափոխում՝ 60, երրորդում՝ 84 տոկոսը։ Բացի այդ, ձեռնարկություններում ու կառույցներում կան մեծ քանակությամբ չտեղակայված սարքավորումներ և միայն 1964 թվականին դրանց արժեքը կազմում էր 2 միլիարդ ռուբլի։ Նոր տեխնիկան երբեմն տարիներով մնում է պահեստներում, բաց հրապարակներում, ժանգոտում է, փչանում և վերածվում մետաղաջարդոնի (լոմի) չօգտագործվելով և ոչ մի օր։



Նման օրինակ կարելի է բերել նաև մեր հանրապետության արդյունաբերական ձեռնարկություններից։ Պահեստամասերի գործարանը Հայաստանի մեքենաշինական արդյունաբերության խոշոր ձեռնարկություններից մեկն է, սակայն այստեղ արտադրական կարողություններն օգտագործվում են խիստ անբավարար։ Գործարանի տնտեսագետների կողմից 1964 թվականի սեպտեմբերին կատարած ուսումնասիրությունը ցույց տվեց, որ մեքենայական № 1—25 արտադրամասում տեղակայված 125 հաստոցների 20 տոկոսը, № 2—58-ում՝ 165 հաստոցների 36, № 3—100-ում՝ 107 հաստոցների 97 տոկոսը չէին աշխատում։ Ընդամենը 601 հաստոցներից աշխատում էին միայն 237-ը։ Հաստոցների օգտագործման վիճակը ավելի վատ է երկրորդ և երրորդ հերթափոխերում, որի հետևանքով գործարանում սարքավորումների բեռնվածության գործակիցը հավասար է 0,35-ի։

Պարզ է, որ դա բացասաբար է անդրադառնում ձեռնարկության տնտեսական և ֆինանսական վիճակի վրա։ 1961 թվականին ձեռնարկությունը ունեցել է 544 հազար, 1963 թվականին՝ 694 հազար, իսկ 1964 թվականին՝ 897 հազար ռուբլու վնաս։

Տնտեսավարման նոր սկզբունքի արմատավորման շնորհիվ, յուրաքանչյուր ձեռնարկության ղեկավար, պարտավոր լինելով ֆոնդերի դիմաց վճարել, կաշխատի ավելի ռացիոնալ օգտագործել առկա ֆոնդերը։ Այդ ճանապարհով հնարավոր կլինի մեծացնել թողարկվող արտադրանքի քանակը, դրանով իսկ պակասեցնել միավոր արտադրանքին ընկնող ֆոնդերի վարձը և մեծացնել ձեռնարկության շահույթը։ Այսպիսով, ձեռնարկության մեքենայացումն ու ավտոմատացումը չեն կրի ինքնանպատակ բնույթ, այլ կներդրվեն այնպիսի սարքավորումներ, որոնք կտան տնտեսական արդյունք, այսինքն՝ կմեծացնեն ձեռնարկության շահույթը, հետևաբար և հասարակության ազգային եկամուտը։ Այս միջոցառումը կսահմանափակի ցածր արդյունավետություն ունեցող տեխնիկայի ներդրումը։

Ֆոնդերի դիմաց վճարելու սկզբունքի մեկնաբանումը կլինի ոչ լրիվ, եթե հաշվի չառնենք մի կարևոր հանգամանք ևս։ Արտադրության յուրաքանչյուր ճյուղ իրենից ներկայացնում է ձեռնարկությունների հավաքածու, որոնք ունեն տարբեր տեխնիկա, իսկ հայթհայթող արդյունաբերության մեջ՝ նաև արտադրության տարբեր բնակլիմայական պայմաններ։ Այս տարբերությունները օբյեկտիվ, ձեռնարկության կոլեկտիվից անկախ գործոններ են, որոնք պայմանավորում են միանման արտադրանքի միավորի արտադրության ծախսերի տարբեր չափեր։ Արտադրանքի համաչափ գնի և արտադրական ֆոնդերի դիմաց միասնական վարձի դեպքում սա նշանակում է, որ տեխնիկապես ավելի կատարելագործված (կամ արտադրության լավագույն բնական պայմաններ ունեցող) ձեռնարկությունների շահույթը միշտ կլինի ավելի մեծ, քան այն ձեռնարկություններինը, որոնք ավելի վատ չեն աշխատում, բայց ունեն արտադրական համեմատաբար վատ պայմաններ։

Ինչպե՞ս վերացնել նման անհավասարությունը։ Մեր կարծիքով՝ հետևյալ կերպ. սկզբնական շրջանում արտադրական ֆոնդերի դիմաց տրվելիք վարձը դիֆերենցել ըստ տարբեր ձեռնարկությունների, կախված նրանց ֆոնդերի փաստական արդյունավետությունից։ Արդյունավետ արտադրական տեխնիկա և արտադրության լավագույն պայմաններ ունեցող ձեռնարկությունների համար սահմանել ֆոնդերի վարձի ավելի բարձր դրույքներ, քան համեմատա-

բար ցածր կարողության տեխնիկա և արտադրության վատ բնակլիմայական պայմաններ ունեցող ձեռնարկությունների համար: Ֆոնդերի վարձի վճարման պայմաններում ձեռնարկությունները շահագրգռված կլինեն արտադրության մեջ ներդնել նոր, կատարյալ տեխնիկա, որի շնորհիվ կնվազեն ձեռնարկությունների տեխնիկական զինվածության մակարդակների միջև եղած տարբերությունները: Այդ պրոցեսին զուգընթաց, աստիճանաբար, պետք է սահմանել ֆոնդերի վարձի միասնական դրույքներ: Այս միջոցառումները ձեռնարկություններին կընձեռեն միանման տնտեսական պայմաններ և նրանց հավասարապես կշահագրգռեն արտադրական ֆոնդերի օգտագործման խնդրում:

Պահանջարկը և առաջարկը նույնպես գնագոյացնող գործոն են: Կապիտալիզմի օրոք առաջարկի և պահանջարկի մեխանիզմն ունի ունիվերսալ նշանակություն. գնի վրա անդրադարձող մյուս գործոններն ազդում են այս մեխանիզմի միջոցով: Մեզ մոտ, գինն արժեքից շեղող այս գործոնը դրսևորվում է գլխավորապես մանրածախ ապրանքաշրջանառության մեջ: Գնի մեջ առաջարկի և պահանջարկի ոչ լրիվ հաշվարկը արհեստականորեն առաջացնում է տվյալ ապրանքի պակաս, որը և ծնում է նրա սպեկուլյացիա, կամ որոշ ապրանքների գերնորմատիվային պաշարների կուտակում առևտրական ցանցում:

Բնակչության դրամական եկամուտները և ապրանքաշրջանառությունը հաճախ չեն բալանսավորվում: Օգտագործելով պահանջարկի առաձգականությունը՝ կախված գներից, կարելի է սահմանել գնի այնպիսի շեղում արժեքից, որը հնարավորություն տա կարգավորելու պահանջարկի և առաջարկի հարաբերակցությունը: Այսպես, օրինակ, մեծ առաջարկի և փոքր պահանջարկի դեպքում պետք է կատարել գների իջեցում, ինչպես եղավ մեզ մոտ 1958, 1960, 1962, 1964 և 1965 թվականներին (ժամացույցների, լուսանկարչական ապարատների, կարի մեքենաների, մետաքսյա կտորների, կանացի գուլպաների և այլ ապրանքների գները իջեցվեցին):

Նյութական բարիքների առատության ստեղծման հետ մեկտեղ, առաջարկի և պահանջարկի բալանսավորման համար գինն արժեքից շեղելու անհրաժեշտությունը կնվազի: Այս նպատակով գինը կօգտագործվի միայն այս կամ այն արտադրանքի արտադրության արագ աճը խթանելու կամ դրա պահանջարկը բավարարելու անհնարինության պատճառով: Այս վերաբերում է նախ՝ արտադրանքի նոր տեսակներին, որոնց արտադրության յուրացումը չի ավարտվել, կամ արտադրության մասշտաբները չեն բավարարում դրանց պահանջարկը և ապա՝ սեզոնային բնույթ կրող և նորաձևության քմահաճ պահանջարկը բավարարող ապրանքներին:

Գնի դերը չի հանգում միայն առաջարկի ու պահանջարկի ավտոմատ հավասարեցմանը: Այն պետք է ակտիվ ներգործի դրանց վրա, նպաստի նոր արտադրանքի նկատմամբ պահանջարկի ձևավորմանը կամ, ընդհակառակը, սահմանափակի հնացած արտադրանքի պահանջարկը:

Առաջարկը և պահանջարկը հավասարեցնելու նպատակով գները դիֆերենցելիս պետք է նկատի ունենալ հետևյալ տնտեսական նախադրյալները.

1. Գների իջեցման համար անհրաժեշտ է թողարկել լրացուցիչ արտադրանք՝ վճարունակ պահանջարկի աճին համապատասխան:

2. Պետք է հաշվի առնել պահանջարկի առաձգականությունը: Համեմատաբար քիչ օգտագործվող ապրանքների գների իջեցումը չի հանգեցնում դրանց գնման աճին: Այն հիմնականում ստեղծում է ազատ դրամական միջոցներ,



որոնք օգտագործվում են անհրաժեշտ այլ ապրանքների ձեռքբերման նպատակով և, եթե վերջիններիս արտադրությունը բավարար չէ, առաջանում է դրանց պակաս՝ իր բոլոր հետևանքներով:

3. Պետք է հաշվի առնել տարբեր ապրանքների փոխադարձ փոխարինելիությունը. մեկի գնի իջեցումը հանգեցնում է նույն պահանջարկը բավարարող այլ ապրանքի վաճառքի փոքրացման: Բացի այդ, գնի այդպիսի իջեցման հետևանքով տվյալ ապրանքը կարող է ոչ ռացիոնալ օգտագործվել:

Սոցիալական գործոնը նույնպես գինը շեղում է հասարակականորեն անհրաժեշտ աշխատանքային ծախսումներից: Սոցիալիստական պետությունը գինն օգտագործում է հետևյալ սոցիալական նպատակներով. ՍՍՌՄ-ում գների քաղաքականությունը նպաստում է մարդու առողջության պահպանմանը և նրա կուլտուրական մակարդակի բարձրացմանը: Դրանով է բացատրվում, որ դեղորայքը, սանհիգիենայի առարկաները և կուլտապրանքների որոշ տեսակներ, դասագրքերն ու գրենական պիտույքները ունեն ցածր գին, իսկ ալկոհոլային խմիչքների, ծխախոտի գինը արժեքից բարձր է:



Մեր տնտեսական պրակտիկայում գնալով ավելի է բարձրանում գնի դերը: Այդ բանը պայմանավորված է նրանով, որ ձեռնարկության աշխատանքի որակական ցուցանիշը պետք է լինի ոչ թե ինքնարժեքը, ինչպես մինչև սեպտեմբերյան պլենումն էր, այլ՝ շահույթը: Ինքնարժեքը երբեմն ձեռնարկության շահերը հակադրում է ժողովրդական տնտեսության արդյունավետությանը: Շատ հաճախ ձեռնարկությունը գերակատարում է ինքնարժեքի իջեցման պլանը, նրան պրեմիա է տրվում այդ ցուցանիշի գծով պլանի գերակատարման համար, սակայն ձեռնարկությունը թողարկում է այնպիսի արտադրանք, որի օգտագործումը արդյունավետ չէ ժողովրդական տնտեսության համար, կամ դրա պահանջարկը չկա, որովհետև այն պարզապես մաշված է և վատորակ:

Շահույթը օբյեկտիվ ցուցանիշ է, որը բնորոշում է ձեռնարկության աշխատանքի արդյունավետությունը: Մինչդեռ, ծախսերի տնտեսումը ցույց չի տալիս, թե որքան արդյունավետ է աշխատում ձեռնարկությունը: Շահույթի միջոցով հնարավոր է որոշել, թե տվյալ արդյունքի արտադրությունը որոշակի պայմաններում որքան շահավետ է ձեռնարկության և ողջ ժողովրդական տնտեսության տեսանկյունից:

Գինը պետք է բարձրացնի ձեռնարկության նյութական խթանումը, որպեսզի ձեռնարկությունների կոլեկտիվները տնտեսապես շահագրգռված լինեն ժողովրդական տնտեսության համար անհրաժեշտ և արդյունավետ արտադրանքի յուրացմամբ ու թողարկմամբ:

Ըստ տնտեսավարման նոր սկզբունքի պետք է սահմանել այնպիսի գներ, որ ձեռնարկությունն իր արտադրանքը այդ գնով իրացնելուց հետո կարողանա փոխհատուցել արտադրական ծախսերը, վճարել ֆոնդերի դիմաց տրվելիք վարձը և կատարել բյուջեի մյուս մուծումները: Այս բոլորից հետո ձեռնարկությանը պետք է մնա այնքան շահույթ, որ այն կարողանա ստեղծել արտադրության ընդլայնման, աշխատողների նյութական խրախուսման, սոցիալ-կուլտուրական միջոցառումների և կոմունալ շինարարության ֆոնդ:

Այս բոլորը պահանջում է գործող գների վերանայում: Մեզ մոտ գրեթե չեն

կատարվում հնացած գների ընթացիկ վերանայում և շահութաբերության մակարդակի կարգավորում: Գործող գները տարիներով չեն փոխվում, հնանում են և հակասության մեջ մտնում արդյունքի արտադրության իրացման նոր պայմանների հետ, ցույց չեն տալիս հասարակական աշխատանքի արտադրողականության փոփոխությունները:

Որպեսզի շահույթը դառնա տեխնիկական պրոգրեսին նպաստող գործոն, անհրաժեշտ է սիստեմատիկաբար վերանայել ընթացիկ գները և կանխել շահութաբերության մակարդակի անհիմն տատանումները: Ըստ գների գործող սիստեմի, մենք ունենք 20 տոկոս վնասաբերությունից մինչև 60 տոկոս շահութաբերություն ունեցող արտադրանքի տեսակներ: Տարբեր տեղերում արտադրված նույն արտադրանքի նմուշների շահութաբերությունն իսկ խիստ տատանվում է: Օրինակ, փոփոխական հոսանքի էլեկտրաշարժիչների արտադրությունը շահութաբեր է +24-ից—14, գալլիկոնային հաստոցներինը՝ +30-ից —40, հանքային պարարտանյութերինը՝+51-ից—61 տոկոս: Շահույթի տատանումները հատկապես մեծ են լեռնահանքային արդյունաբերության մեջ, որտեղ շատ ձեռնարկություններ չեն ծածկում իրենց ծախսերը՝ ապրանքային արտադրանքի իրացման հաշվին: Նույն վիճակն է նաև քարածխի արտադրության մեջ, որի մեծածախ գինը 19 տոկոսով ցածր է նրա ինքնարժեքից:

Անհրաժեշտ է նոր գները սահմանել այնպես, որ ժողովրդական տնտեսության տեսանկյունից մեծ արդյունավետություն ունեցող ապրանքի արտադրությունը շահավետ լինի նաև ձեռնարկության համար: Սակայն այդ չի նշանակում ընկնել մյուս ծայրահեղության մեջ և սահմանել շահույթի չափից դուրս բարձր դրույքներ, ինչպես սահմանված է այժմ, քիմիական արտադրանքի գերակշռող մասի համար: Քիմիական արտադրության մեջ, գների հնացման հետևանքով, ամբողջ ճյուղի մասշտաբով միջին շահութաբերությունը բարձրացել է մինչև 30 տոկոս, իսկ արտադրանքի առանձին տեսակների գծով է՛լ ավելի: Օրինակ, 1964 թվականին պոլիվինիլ բուտերալի շահութաբերությունը կազմում էր 70,3, սինթետիկ քացախաթթվինը՝ 54,4, սինթետիկ ամոնիակինը՝ 36,8 տոկոս և այլն: Սակայն այստեղից չի կարելի եզրակացնել, թե պետք է ցածր գներ սահմանել արտադրանքի այն բոլոր տեսակների համար, որոնց շահութաբերությունն այժմ բարձր է: Անհրաժեշտ է ունենալ դիֆերենցված մոտեցում, հաշվի առնելով տվյալ ապրանքի արտադրության և իրացման պայմանները:

Նոր գների սահմանման գործը դրված է ՍՍՌՄ պետպլանին առընթեր գների պետական կոմիտեի վրա, որին հանձնարարված է մշակել և ներկայացնել առաջարկություններ արդյունաբերական արտադրանքի մեծածախ գների սահմանման հիմնական ուղղությունների վերաբերյալ: Նախատեսված էր նոր գները գործողության մեջ դնել 1966 թվականի հունվարի մեկից, սակայն, ելնելով այն բանից, որ արտադրանքի բոլոր տեսակների համար մեծածախ գների մակարդակի հաշվարկները և արդյունաբերության տարբեր ճյուղերի համար նոր գնացուցակների նախապատրաստումը զգալի ժամանակ են պահանջում, նոր գների գործողության մեջ դնելը հետաձգվում է մինչև 1967—1968 թվականները:

Մ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ



# ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ



## ԱՆԶՈՒԳԱԿԱՆ ԸՆԿԵՐՆԵՐԻ ՀՈՒՇԱՏԵՏՐԻՑ*




Մի անգամ Մարքսի դուստրերը խնդրեցին իրենց հորը պատասխանել «խոստովանություն» կիսակատակային թեթևիկ հարցերին: Պատասխաններից իմանում ենք, որ մարդկանց մեջ նրա ամենից ավելի գնահատած արժանիքը՝ պարզությունն է, նրա բնորոշ գիծը՝ նպատակի միասնությունը, սիրած առածը՝ «Ոչինչ մարդկային ինձ օտար չէ»: Պայքար՝ այս էր երջանկության մասին Մարքսի պատկերացումը:

Պատասխաններում հստակ դրսևորվում են Կարլ Մարքսի մարդկայնությունն ու պարզությունը: Հատկություններ, որոնցով հավասարապես օժտված է եղել նաև նրա լավագույն բարեկամն ու զինակիցը՝ Ֆրիդրիխ Էնգելսը: Պրոլետարիատի իմաստուն առաջնորդների բնավորության այդ հիանալի գծերի մասին է պատմում Նրանց պարզությունն ու մարդկայնությունը գիրքը, որը վերջերս լույս է ընծայել «Հայաստան» հրատարակչությունը: Գիրքը բաղկացած է երկու բաժնից: Առաջին՝ Մեծ արտի տեր մարդիկ բաժնում զետեղված են նամակներ ու փաստաթղթեր, որոնց ամեն մի տողն արտացոլում է Մարքսի ու Էնգելսի՝ երկու հանճարեղ և, միևնույն ժամանակ, շատ պարզ, սրտակից ու հասարակ մարդկանց կերպարը: Մի կողմից, այդ նյութերը ցույց են տալիս պրոլետարիատի մեծ առաջնորդների արիությունն ու աննկունությունը պայքարում, մյուս կողմից՝ նրանց հուզիչ ջերմությունն ու հոգատարությունը բարեկամների ու հարազատների նկատմամբ:

Գրքի երկրորդ՝ Ժամանակակիցները Նրանց այդպես են ճանաչում բաժնում զետեղված են հարազատների, բարեկամների և ռևոլյուցիոն պայքարի ընկերների հիշողությունները Մարքսի և Էնգելսի մասին, ուր հառնում են մեծ մտածողների, զարմանալի համեստ, հմայիչ ու կենսասեր մարդկանց կերպարները, լրացնելով նրանց մասին նամակներից ստացած մեր տպավորությունները:

### ՆՎԻՐՎԱԾՈՒԹՅՈՒՆԸ ՊՐՈԼԵՏԱՐԻԱՏԻ ԳՈՐԾԻՆ

Մարքսի և Էնգելսի բնորոշ գիծը նրանց անսահման նվիրվածությունն էր պրոլետարիատի ազատագրության մեծ գործին, վեհ գաղափարների հաղթանակի համար մղվող պայքարին: Այդ գիծը Մարքսը պարզորոշ արտահայտել է դեռևս 1835 թվականին, երբ վերջացնում էր Թրիրի գիմնազիան: Ավարտական շարադրության մեջ նա գրել է, որ մասնագիտություն ընտրելիս ուղենիշը պետք է լինի մարդկության բարօրությունը և սեփական կատարելագործումը:

Պրոլետարիատի հանճարեղ առաջնորդներին վիճակվեց կրել շատ դժվարություններ, հաղթահարել շատ արգելքներ, բայց նրանք հավատարիմ մնացին աշխատավոր մարդկության ազատագրման մեծ գործին: Այդ տեսակետից առանձնապես ծանր էր Մարքսի վիճակը: Ընչազրկությունը, տառապանքն ու վիշտը անբաժան էին նրա ընտանիքից, և միայն Ջեննիի ու Մարքսի նման ուժեղ մարդկանց արտասովոր համառակամությունն էր ի վիճակի հաղթահարելու դրանք: «Էմիգրանտական կյանքի պայմանները,

* Նրանց պարզությունն ու մարդկայնությունը, «Հայաստան» հրատարակչություն, 1965, 415 էջ:

— գրել է Լենինը,— ...ծայրաստիճան ծանր էին։ Կարիքն ուղղակի խեղդում էր Մարքսին ու նրա ընտանիքին. եթե չլիներ Էնգելսի մշտական անձնազոհ ֆինանսական օժանդակությունը, Մարքսը ոչ միայն չէր կարող ավարտել «Կապիտալը», այլև անխուսափելիորեն կկործանվեր աղքատության ճնշման տակ» (Երկեր, հ. 21, էջ 46)։

Մարքսի և նրա ընտանիքի կրած տառապանքների մասին են պատմում գրքում բերված բազմաթիվ նամակները Էնգելսին ու մյուս բարեկամներին։ Առանց հուզմունքի չի կարելի կարդալ Մարքսի 1852 թվականի սեպտեմբերի 8-ի նամակը Էնգելսին. հիվանդ պառկած են կինը, աղջիկը, Լենխենը՝ տնային տնտեսուհին, իսկ բժիշկ կանչել չեն կարող, որովհետև դեղորայքի փող չունեն։ Պատահել է, որ Մարքսը ոչ մի պեննի չի ունեցել լրագիր գնելու համար։ Բանը նույնիսկ այնտեղ է հասել, որ ստիպված երբեմն երեխաներին կտրել է դպրոցից, ամիսներ շարունակ ընտանիքի ամենաանհրաժեշտ իրերը գրավ դրել սովից փրկվելու համար։ Եվ ամեն անգամ ակամա նորից ու նորից է դիմել Էնգելսի օգնությանը, չնայած իր համար այնքա՜ն դժվար էր այդ, «որ ավելի լավ կլիներ բթամատերս կտրել տայի, քան քեզ գրեի այս նամակը...,— գրում է նա։— Միակ միտքը, որ ինձ այդ դեպքում զորավիգ է լինում, այն է, որ մենք երկուսս էլ գործը վարում ենք ընկերակցական հիմունքներով, ընդ որում ես իմ ժամանակը նվիրում եմ գործի տեսական ու պարտիական կողմին» (էջ 144)։

1859 թվականի հունվարին արդեն պատրաստ էր Մարքսի Քաղաքատնտեսության քննադատության շուրջը աշխատության ձեռագիրը։ Սակայն նա ոչ մի գրոշ չուներ ձեռագիրը հրատարակչություն ուղարկելու համար և Էնգելսից նամակով խնդրում է 2 ֆ. ստեռլինգ։ Ինչպես միշտ, այս անգամ էլ Էնգելսը օգնության է հասնում։ Ա. Կլուսին ուղղած իր նամակում Մարքսը գրում է. «Դուք կկարողանաք գնահատել գրքույկի հումորը, եթե հաշվի առնեք, որ դրա հեղինակը, շալվար ու կոշիկ չունենալու պատճառով մի տեսակ տնային բանտարկության մեջ է, իսկ նրա ընտանիքին ամեն րոպե սպառնում էր և սպառնում է իսկական ծայրահեղ աղքատությունը» (էջ 53)։

Իսկ ինչպե՜ս է նա աշխատել «Կապիտալի» վրա... ամբողջ քառասուն տարի, հաստատ համոզված, որ գիրքը չի հատուցելու նույնիսկ այն դրամը, որ ծախսել է աշխատությունը գրելու ընթացքում ծխած սիգարների վրա։

Սակայն ո՛չ ռեակցիոն ուժերի հալածանքը, ո՛չ կարիքը չկարողացան ընկճել Մարքսին, թուլացնել պայքարի նրա կամքը։ «Ես պետք է ամեն գնով գնամ դեպի իմ նպատակը և բուրժուական հասարակությանը թույլ չեմ տա, որ ինձ վերածի փող շինող մեքենայի...»,— գրում է նա 1859 թվականի փետրվարին, Ի. Վայդեմայերին։

## ՉՏԵՍՆՎԱԾ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆ

Լենինը Մարքսի և Էնգելսի բարեկամության մասին 1896 թվականին գրել է. Եվրոպական պրոլետարիատը կարող է ասել, որ նրա գիտությունն ստեղծել են երկու գիտնականներ ու մարտիկներ, որոնց հարաբերությունները գերազանցում են հնադարյան մարդկանց բոլոր ամենասրտաշարժ զրույցները մարդկային բարեկամության մասին։

1844 թվականից սկսած, երբ իրար հանդիպեցին Մարքսն ու Էնգելսը, նրանց հոգիները դարձան անբաժան, պայքարը հին աշխարհի դեմ՝ ընդհանուր գործ։ Թեև հանգամանքների բերումով մոտ 20 տարի նրանք բաժանվեցին միմյանցից (Մարքսն ապրում էր Լոնդոնում, իսկ Էնգելսը՝ Մանչեստրում), սակայն ուղիղ 40 տարի, մինչև Մարքսի մահը (1883 թվականը), գրեթե ամեն օր նրանք նամակներ էին գրում իրար, որոնց մեջ իրենց հայացքներն ու գիտելիքներն էին փոխանակում և միասին մշակում գիտական կոմունիզմը։

Մարքսին ճանաչելու պահից Էնգելսը նրա մեջ տեսավ դարաշրջանի մեծագույն մտածողին, համաշխարհային պրոլետարիատի առաջնորդին։ Ժամանակակիցներն ու հարազատները գտնում են, որ Մարքսը դաժան կարիքի ու դժվարությունների դեմ տարած հաղթանակով պարտական էր ո՛չ միայն իր վիթխարի կամքին, այլև անձնվեր, անշահախնդիր բարեկամին։

Մարքսի ընտանիքի նյութական ծանր պայմանները հարկադրեցին Էնգելսին՝ դիմելու զոհաբերության. նա ծառայագրվեց «անիծյալ վաճառականությանը», որպեսզի պարտիայի և պրոլետարիատի համար պահպանի նրա լավագույն մտավոր ուժը։ «Այդպիսի զոհաբերությունն առաջարկելու և դա ընդունելու համար միատեսակ բարձր ոգի է հարկավոր»,— գրում է Մերինգը։ Էնգելսը Մարքսին էր նվիրաբերում նաև երեկոյան հանգստի մեծ մասը. մինչև խոր գիշեր «Tribune» թերթին ուղարկվող թղթակցությունների էր ուղղում կամ գերմաներենից անգլերեն թարգմանում։ Մարքսը չափազանց բարձր էր գնահատում Էնգելսի այդ քայլը և ցավով նշում, որ իր պատճառով նա ստիպված է թողնել գիտական ստեղծագործական աշխատանքը։ «Իմ խղճի վրա մղձավանջի նման շարունակ ճնշում էր այն միտքը, որ դու քո բացառիկ ընդունակությունները վատնում ես առևտրի վրա և թույլ ես տալիս, որ նրանք ժանգոտեն գլխավորապես իմ պատճառով և, ավելին, դեռ պետք



է ինձ հետ միասին կրես իմ բոլոր մանր անախորժությունները» (էջ 164)։

Երբ 1845 թվականի փետրվարին Էնգելսն իմանում է Մարքսին Փարիզից Բրյուսել արտաքսելու մասին, անմիջապես իր պատրաստակամությունն է հայտնում նրան օգնելու։

Անսահման էր նրանց փոխադարձ հոգատարությունը։ Այսպես. Մարքսին խիստ անհանգստացնում էր Էնգելսի հիվանդությունը։

Իսկ երբ Մարքսը հիվանդանում է կայծոռուցքների խրոնիկական հիվանդությամբ, Էնգելսը նամակներով խնդրում է Մարքսին կանոնավոր բուժվել և վերջնականապես ապաքինվել։ Իսկ մի քանի օր անց գրում է. «Ի՞նչ կլինի ամբողջ շարժումը, եթե քեզ որևէ բան պատահի»։

Մարքսը և Էնգելսը փոխադարձաբար շատ բարձր էին գնահատում միմյանց։ Կապիտալի չորս մամուլներն ուղարկելով Էնգելսին՝ Մարքսը գրում է. «Քո հավանությունը մինչև հիմա ինձ համար ավելի կարևոր է, քան այն, ինչ կարող է այդ մասին ասել ամբողջ մնացած աշխարհը» (էջ 168)։ Իսկ երբ Մարքսն ավարտում է Կապիտալի վերջին մամուլի սրբագրությունը, Էնգելսին է դիմում երախտագիտությամբ լի մի նամակով, որը չի կարելի կարդալ առանց հուզմունքի. «...այս հատորը պատրաստ է։ Միայն քեզ եմ պարտական, որ այդ հնարավոր եղավ»։ Նամակն ավարտում է «Իմ թանկագին, հավատարիմ ընկեր» պոռթկումով։

Իսկ ինչպիսի՜ ակնածանքով ու ջերմությամբ էր Մարքսի մասին խոսում Էնգելսը։ Բազմիցս նա նշել է, որ Մարքսը ամենամեծագույն հանճարն է։ «Նրան ենք մենք պարտական այն ամենի համար, ինչ դարձել ենք, և այն ամենի համար, ինչի հասել է այժմ ժամանակակից շարժումը... առանց նրա մենք մինչև հիմա կխարխափեինք դեռ խավարում» (էջ 242)։

Էնգելսը անխզելի բարեկամական կապերով էր կապված Մարքսի ընտանիքի հետ։ Մարքսի մահից հետո էլ նա հոգատար էր նրա երեխաների նկատմամբ։

Մարքսի մահից հետո Էնգելսը ձեռնամուխ է լինում Կապիտալի 2-րդ և 3-րդ հատորների ձեռագրերի կարգավորմանն ու տպագրության նախապատրաստելուն։ Չափազանց ծանր, բայց կարևոր աշխատանք էր այդ։ Էնգելսը նշում է, որ դրա համար անհրաժեշտ է մեծ ջանք, որովհետև գործ ունենք այնպիսի մի մարդու ձեռագրերի հետ, որի յուրաքանչյուր բառը ոսկու քաշ ունի։ «Բայց այդ աշխատանքը ինձ համար հաճելի է, չէ որ ես դարձյալ իմ հին բարեկամի հետ եմ» (էջ 245)։ Այդ հսկայական աշխատանքի հետ մեկտեղ Էնգելսը փոխարինում էր Մարքսին, ղեկավարում միջազգային բանվորական շարժումը։

## ԱՐՏԱԿԱՐԳ ՀԱՄԵՍՏՈՒԹՅՈՒՆԸ

Մարքսն ու Էնգելսը անսահման համեստ էին։ Նրանք ամեն կերպ խուսափում էին իրենց անձը գովաբանելու ամեն մի փորձից։ Բազմիցս ռևոլյուցիոն գործիչները և հրատարակիչները դիմում էին Մարքսին, խնդրելով, որ նա գրի առնել տա իր կենսագրությունը՝ հրատարակելու համար, սակայն Մարքսը վճռականորեն մերժում էր, անգամ նամակներին չէր պատասխանում։ «Ես ոչ ոքի չեմ ցանկացել նեղություն պատճառել իմ կենսագրության մասին պատմություններով»,— ասել է նա։

Մարքսն ու Էնգելսը առավել թշնամաբար էին վերաբերվում անհատի ամեն տեսակ պաշտամունքին։ Վ. Բլոսին ուղղած նամակում Մարքսը գրել է. «Մենք երկուսս էլ մի քոռ գրոշ էլ չենք տա հանրածանոթ լինելու համար... Էնգելսի և իմ առաջին մուտքը կոմունիստների գաղտնի ընկերության մեջ տեղի ունեցավ այն պայմանով, որ կանոնադրությունից դուրս նետվի այն ամենը, ինչ նպաստում է հեղինակությունների առջև սնահավատ խոնարհմանը...» (էջ 212—213)։

Երբ Էնգելսի ծննդյան յոթանասունամյակի առթիվ շնորհավորանքներ են ստացվում, նա գրում է, թե կուզենար որքան կարելի է շուտ ազատվել այդ միանգամայն ավելորդ աղմուկից, որը տանել չի կարող և համեստորեն գրում է Ֆ. Ա. Զորգեին. «Վերջ ի վերջո ես էլ մեծ մասամբ քաղում եմ միայն Մարքսի փառքի պտուղները» (էջ 254)։

Շնորհակալություն հայտնելով շնորհավորանքների համար, Էնգելսը «Բեռլինեռ Վոլքսբլատ» թերթի խմբագրությանն ուղարկած նամակում գրում է. «Ինձնից ավելի լավ ոչ ոք չգիտե, որ այդ հարգանքների մեծ մասով ես պարտական եմ ոչ ինձ և ոչ էլ իմ ծառայություններին»։ Իսկ երբ Էնգելսի ծննդյան յոթանասունմեկերորդ տարեդարձի առթիվ ցանկանում էին երաժշտական մեծարանք կազմակերպել, նա վճռականորեն պահանջում է հրաժարվել դրանից. «Եվ Մարքսը և ես միշտ էլ դեմ ենք եղել առանձին անձանց նվիրված հրապարակային ամեն մի ցույցի. այդ բանը թույլատրելի է միայն այն դեպքում, երբ դրա միջոցով կարելի կլինի հասնել որևէ նշանակալի նպատակի. բայց մենք ամենից ավելի դեմ ենք եղել այնպիսի ցույցերին, որոնք մեր կենդանության օրոք վերաբերեին անձամբ մեզ» (էջ 259)։ Էնգելսը դժգոհում է իսպանացի սոցիալիստ Պաբլո Իգլեսիասից, որը նրան դիմում էր «Դուք»-ով և հայտարարում, որ վերջ կտա նամակագրությանը, եթե նա այդպես շարունակի։ Իսկ Գ. Պլեխանովին գրում է. «Ամենից առաջ խնդրում եմ Ձեզ դադարեք ինձ «ուսուցիչ» անվանելուց։ Իմ անունը պարզապես Էնգելս է» (էջ 274)։

# ՆՈՐ ԱԿՈՍ

Անցյալ տարի «Միտք» հրատարակչությունը լույս ընծայեց Լ. Պ. Ղարիբջանյանի Երևանի պետական համալսարանը աշխատությունը*: Վերջինս սովետահայ պատմական գրականության մեջ եզակի է ուսումնասիրման օբյեկտի տեսակետից: Գրախոսվող մենագրությունը համալսարանական կյանքին գիտակ մարդու ջանադիր պրպտումների և բարեխիղճ հետազոտության արդյունք է:

Հայկական համալսարան հիմնելու գաղափարը վաղուց ի վեր լայնորեն տարածված է եղել Անդրկովկասի հայ իրականության առաջադեմ շրջաններում: Սակայն, այդ կենսաբուխ պահանջը չէր կարող բավարարվել ասիմիլյատորական քաղաքականություն վարող ցարական, բուրժուա-կալվածատիրական ռեժիմի օրոք:

Մենագրության հեղինակը միանգամայն իրավացիորեն հաստատում է, որ «Երևանի համալսարանը Հայաստանում սովետական իշխանության հաստատման արդյունքն է, սովետական կարգերի ծնունդը» (էջ 31):



1920 թ. վերջին, երբ հիմնադրվեց Երևանի պետական համալսարանը, երկրի ազգաբնակչության 84 տոկոսը անգրագետ և կիսագրագետ էր. փոքրաթիվ դպրոցներում ուսուցիչների միայն 10 տոկոսն ուներ բարձրագույն կրթություն: Երկրում մոլեգնում էին մալյարիան, տրախոման, մաշկային հիվանդությունները, ծաղիկը և այլն:

Ահա թե ինչ էր ժառանգել սոցիալիստական Հայաստանը բուրժուական Հայաստանից:

Ի՞նչ պետք է աներ սոցիալիզմը նորաստեղծ Հայաստանում:

Դժվար էր այն ժամանակ կանխատեսել բոլոր մանրամասները, սակայն, ղեկավար շրջանների համար մի բան պարզ էր և ընկալելի. նոր հասարակարգը պետք է արմատապես փոխեր երկրի տնտեսական դեմքը, նրա գաղութային բնույթը, գրագետ դարձներ ժողովրդին, լիկվիդացներ մասսայական հիվանդությունները: Այլ խոսքով, սոցիալիզմը Հայաստանում, ինչպես և այլ ռեսպուբլիկաներում, պետք է ծավալեր ու կենսագործեր սոցիալ-տնտեսական ու կուլտուրական վիթխարի վերափոխումներ:

Սակայն, որտեղի՞ց վերցնել մասնագետ կադրեր, որոնք կարողանային կենսագործել վերափոխումները՝ երկրի ինդուստրացումը, գյուղի կոլեկտիվացումը և կուլտուրական հեղափոխությունը: Սովետական Հայաստանը չուներ այդպիսի կադրեր: Իսկ դրանք պետք էին թե՛ ժողովրդական տնտեսության, թե՛ կուլտուրական շինարարության համար:

Գրքում տեղին է բերվում Ֆ. Էնգելսի հետևյալ իմաստալից դրույթը. «...անցյալի բուրժուական հեղափոխությունները համալսարաններից պահանջում էին միայն փաստաբաններ»... «որոնց շարքերից դուրս էին գալիս նրանց քաղաքական գործիչները: Բանվոր դասակարգի ազատագրությունը կարիք է զգում, բացի դրանից, բժիշկների, ինժեներների, քիմիկոսների, ագրոնոմների և այլ մասնագետների, որովհետև գործն այն է, որպեսզի վերցվի ոչ միայն քաղաքական մեքենայի, այլև ողջ հասարակական արտադրության կառավարումը և այստեղ ֆրազների փոխարեն հարկավոր կլինեն պատկառելի գիտելիքներ» (էջ 37—38):

Այդ պատկառելի գիտելիքները Երևանի համալսարանը արմատավորում էր իր հինգ ֆակուլտետներում՝ գյուղատնտեսական—1921 թ. (նախկին բնագիտական ֆակուլտետի հիման վրա), տեխնիկական—1921 թ., բժշկական—1922 թ., պատմագրական—1921 թ. (նախկին արևելագիտականի հիման վրա), մանկավարժական—1921 թ. և խորհրդային շինարարության — 1921 թ.:

Ուսանողների ընդունելության ժամանակ կիրառելով դասակարգայնության սկզբունքը, բանալով բանվորական ֆակուլտետ, համալսարանին հաջողվում է կարճ ժամանակամիջոցում բարելավել ուսանողության սոցիալական կազմը, բարձրացնել բանվորա-գյուղացիական շերտի տեսակարար կշիռը, ստեղծել աշխատավորության ծոցից ելած, նրա վերածննդին, նոր աշխարհի կառուցման մեծ գործին նվիրված խանդավառ ուսանողություն:

Հարթ չի եղել Երևանի պետական համալսարանի անցած ուղին, մանավանդ իր գոյության առաջին տասնամյակում—1920—1930 թթ.: Դժվարությունների և դրանց հաղթահարման մասին հանգամանորեն պատմում է հեղինակը: Ուշագրավ է, որ Երևանի համալսարանի առաջին ընդունելության ուսանողների թիվը հասնում էր 255 հոգու, որոնցից տղա՝ 208, աղջիկ՝ 47, մինչդեռ հետագա տարիներին աղջիկների տոկոսը բարձրանում է, 1929—30 թթ. կազմելով ընդունվածների 50 տոկոսը:

1925 թվականին համալսարանը ունեցավ իր առաջին շրջանավարտները՝ ընդամենը 58 հոգի, որոնցից 29-ը՝ գյուղատնտեսներ, 29-ը՝ պատմաբան-բուսաբաններ:

Իր տասնամյա գոյության ընթացքում այն մեր ժողովրդական տնտեսությանն ու կուլտուրական շինարարությանը տվեց մեծ թվով բարձրորակ կադրեր՝ մոտ հազար հոգի: Անշուշտ, այսօրվա մասշտաբներով (երբ միայն մեկ տարում, այն է՝ 1965 թ., Հայաստանի 11 բարձրագույն դպրոցներն ավարտել են 3724 հոգի) այդ մեկ հազարը փոքր մեծություն է, սակայն քսանական թվականներին՝ խոշոր նվաճում էր մեզ համար՝ մասնագետների մի պատկառելի բանակ, որը հիմնականում բավարարում էր ժամանակի պահանջները:

Նշանակալից էր համալսարանի դերը ռեսպուբլիկայի սահմաններից դուրս ապրող հայ երիտասարդության համար: Հանրահայտ է, որ ՍՍՌՄ-ի հայ ազգաբնակչության միայն 56 տոկոսն է ապրում իր ռեսպուբլիկայում, իսկ 46-ը ռեսպուբլիկայից դուրս՝ Վրաստանում, Ադրբեջանում, Ռուսաստանյան ֆեդերացիայում և Միջին-Ասիական ռեսպուբլիկաներում: Այդ ռեսպուբլիկաներում հայկական միջնակարգ դպրոցներն ավարտած երիտասարդության բարձրագույն հաստատությունը դարձյալ Երևանի համալսարանն էր, որի ուսանողության զգալի տոկոսը կազմում էին ռեսպուբլիկայի սահմաններից դուրս ապրող հայ երիտասարդները, իսկ վերջերս էլ մեծացել է սփյուռքահայերի թիվը:

Համալսարանի ստեղծման համար, բացի նյութատեխնիկական հնարավորություններից, անհրաժեշտ էր ունենալ բարձրորակ դասախոսական կազմ, որից սկզբնական շրջանում զուրկ էր մեր երկիրը և առանց որի համալսարանը չէր կարող բանալ իր դռները:

Եվ ահա տեղի ունեցավ մի ուշագրավ երևույթ. Հայաստանի սովետական իշխանության կոչին՝ զորավիգ կանգնել Երևանի համալսարանի ստեղծմանն ու բարգավաճմանը, արձագանքեց Հայաստանում ու նրա սահմաններից դուրս գտնվող հայ գիտական հին մտավորականությունը:

Մի խումբ անխոնջ և հայրենանվեր դասախոսների ու պրոֆեսորների ջանքերով սովետական իշխանության առաջին տարիներին ո՛չ միայն նոր, որակյալ կադրեր պատրաստվեցին ժողովրդական տնտեսության ու կուլտուրական շինարարության համար, այլև աճեցին աշխատավորական զանգվածներից ելած նոր գիտնականներ: Արդարացի է մենագրության հեղինակը գրելով՝ «Ի պատիվ մեր անցյալի մտավորականության պիտի ասել, որ նրանք անկեղծորեն անցան սովետական իշխանության կողմը, կանգնելով ազատագրված հայ ժողովրդին աղնվորեն ծառայելու դիրքերում: ...Նրանք անգնահատելի ծառայություն մատուցեցին մեր ժողովրդին ոչ միայն գիտության զարգացման բնագավառում, այլև կրթեցին ու դաստիարակեցին համալսարանական ամբողջ սերունդներ, իրենց ուսերի վրա տարան սովետահայ մտավորականության նոր կադրեր ստեղծելու դժվարին, բայց պատվավոր գործը» (էջ 91—92):

Լ. Ղարիբջանյանի նշած սովետահայ մտավորականության այդ օրերի նոր կադրերն այսօր դարձել են հին: Ներկայումս Հայաստանի գիտական աշխատողների թիվը (առ 1-ը նոյեմբերի 1965 թ.) հասնում է 7455-ի:

Երևանի պետական համալսարանը եղել է ո՛չ միայն կադրերի պատրաստման դարբնոց, այլև գիտահետազոտական աշխատանքների կենտրոն: Գիտական հայկական տերմինների մշակման, գրականության մեջ դրանց արմատավորման զուգընթաց համալսարանի դասախոս-գիտնականները լույս են ընծայում գիտության տարբեր բնագավառներին նվիրված արժեքավոր աշխատություններ:

Մի առանձին եռանդով նրանք երևան էին հանում ժողովրդի հոգևոր հարստությունները,— գրում է Ղարիբջանյանը,— ուսումնասիրում նրա անցած ճանապարհի պատմությունը, նրա լեզուն, արվեստը, գիտությունը:

Հեղինակն ընդգծում է, որ մեր հայագետ դասախոսների շնորհիվ համալսարանը դարձավ սովետական հայագիտության ստեղծման ու զարգացման խոշոր կենտրոն:

Գրքում հիշարժան տեղեկություններ կան հեռուստատեսության և լուսահեռագրության բնագավառում արած հայտնագործությամբ ականավոր դարձած (աշխատել է 1925 թ. Երևանի պետական համալսարանում) Հովհաննես Ադամյանի մասին: Իր գյուտի համար նա ժամանակին ստացել է գերմանական առաջին պատենտ: Ադամյանն իր ապարատի մոդելը պատրաստել ու

* Լ. Պ. Ղարիբջանյան—Երևանի պետական համալսարանը, Միտք հրատ., Երևան, 1965 թ.:

նակը վեր է հանել «Արևելյան» ճգնաժամի հիմնական պատճառները, որոնք ի վերջո, հասցրին պատերազմի։

Օսմանյան Թուրքիայի դեմ ուղղված հայ ժողովրդի ընդվզումները նոր ուժով ծավալվեցին 1877—1878 թթ. ռուս-թուրքական պատերազմի ընթացքում։ Մեծ հույսեր կապելով ռուսական զենքի հաղթանակի հետ՝ արևմտահայությունը նորից ճիգեր էր գործադրում ռուսական զորքի օգնությամբ ազատագրվելու սուլթանական բռնապետությունից։ Ակնառու փաստերով ցույց է տրված Հայաստանի երկու հատվածների բնակչության նյութական և զինյալ օգնությունը Կովկասյան ճակատի ռուսական բանակին։ Արևմտահայությունը ռուսական զորքերին ամենուրեք դիմավորում էր որպես ազատարարների, բարեկամների։ Ռազմական պատմաբան Քիշմիշևի անկեղծ բնորոշմամբ, հայերը Փոքր Ասիայում Ռուսաստանի դաշնակիցներն էին։

Գրախոսվող աշխատության հեղինակն ամենից առաջ պարզաբանել է մեծ պետությունների դիրքորոշումը արևմտահայության ճակատագրի հանդեպ։ Հանգամանորեն բացահայտել է հատկապես անգլո-գերմանական դիվանագիտության դավերը, որոնք ուղղված էին ո՛չ միայն Ռուսաստանի, այլև բնաջնջման արհավիրքի տակ գտնվող արևմտահայության դեմ։ XIX դարի 70—80-ական թվականներին ավելի էր սաստկանում սուլթանական բռնապետության հայաջինջ քաղաքականությունը, ավելի հստակ էր դառնում եվրոպական մեծ պետությունների, հատկապես Անգլիայի թշնամական դերը։

Հայաստանի երկու հատվածների դեմոկրատական հոսանքը ուղիներ ու միջոցներ էր որոնում՝ ճիշտ հունի մեջ դնելու և կազմակերպված բնույթ տալու զինված ելույթներին։ Ազատագրական շարժումների օջախը գավառն էր, ուր ծնունդ էին առնում ապստամբական ելույթները։

Հայ ժողովրդի ազատագրական շարժման ընթացքում հսկայական նշանակություն էր տրվում բախտակից ժողովուրդների (հայ-քուրդ-ասորական) դաշինքի գաղափարին, որը հուզել ու հրապուրել էր հայ դեմոկրատ գործիչներին։ Սակայն նրանք չկարողացան հետևողական լինել ու գործնական հողի վրա դնել համագործակցելու որոնումները։ Օսմանյան Թուրքիայի կառավարող շրջանները քաջ գիտակցում էին նման համագործակցության՝ իրենց համար խիստ անցանկալի հետևանքները և բոլոր հնարավոր միջոցներով սրում էին ոչ թուրք ժողովուրդների հարաբերությունները, նրանց հանում միմյանց դեմ։

Հեղինակի ուշադրությունից չեն վրիպել նաև արևելահայ ժողովրդի տեղն ու դերը իրենց եղբայրների ազատագրական իղձերի իրականացման գործում։ Մոսկվայում, Պետերբուրգում, Թիֆլիսում, Բաքվում, Երևանում, Ալեքսանդրապոլում, Շուշիում, ինչպես նաև եվրոպական մի շարք քաղաքներում ստեղծվել էին գաղտնի կազմակերպություններ, որոնք ծառայագրվել էին Արևմտյան Հայաստանի ազատագրությանը։

Հեղինակը քննության է առել Ռուսաստանի նկատմամբ հայ ժողովրդի օրիենտացիայի հարցը։ Ռուսական օրիենտացիայի պաշտպանությամբ հանդես էր գալիս դեմոկրատական հոսանքը, որը, փաստորեն, արտահայտում էր հայ գյուղացիության փայփայած իղձերը, այն գյուղացիության, որը դեմ էր բուրժուական-պահպանողական հոսանքի կողմից առաջ քաշված «ռեֆորմների» ու «ավտոնոմիայի» ծրագրերին և ցանկանում էր միանալ Ռուսաստանին։

Հայ ժողովրդի ազգային-ազատագրական պայքարին կազմակերպված բնույթ տալու և այն ճիշտ հունով առաջ մղելու համար նշանակալից դեր են կատարել Արևմտյան Հայաստանում կազմակերպված գաղտնի ռևոլյուցիոն կազմակերպությունները, ընկերությունները, խմբերն ու խմբակները, որոնց մեջ իր ուրույն տեղն ունի Կարինի «Պաշտպան հայրենյաց» կազմակերպությունը։ Ճիշտ է, այդ կազմակերպության գործունեությանն անդրադարձել են որոշ պատմաբաններ, սակայն Ռ. Հովհաննիսյանը երկար տարիներ պրպտումներ է կատարել արխիվներում և, իր ձեռքի տակ ունենալով նորահայտ վավերագրեր, հետազոտել ու լուսաբանել է Կարինի գաղտնի կազմակերպության գործունեությունը։

1877—1878 թթ. ռուս-թուրքական պատերազմի ավարտի օրերին կովկասյան ճակատից ռուսական բանակի հաղթական մուտքը Կարին (Էրզրում), ոգևորություն ու նոր թափ հաղորդեց և այդ վիլայեթի հայ բնակչությանը։ Դեսպոտիզմի դարավոր լծից ազատագրվելու ոգին էր թևածում արևմտահայության երկնակամարում։

Մինչև «Պաշտպան հայրենյաց» գաղտնի կազմակերպության երևան գալը, Կարինում հայրենասիրական խմբերն ու խմբավորումներն ունեին Արևմտյան Հայաստանի ազատագրման սեփական ծրագիրը։ Կարինի գրեթե բոլոր քաղաքական կազմակերպությունները, որոնք թաքնված էին զանազան բարեգործական ընկերությունների անվան տակ, հետագայում վերամիավորվեցին «Բարձր Հայոց ընկերության» մեջ, որը շարունակում էր քաղաքական ու լուսավորական աշխատանք ծավալել Կարինում և նրա գավառներում։ Սակայն նրա գործունեությունը չվրիպեց տեղի իշխանությունների աչքից. ընկերությունը շուտով վերացվեց։ Բայց Կարինում, 1881 թվականի մայիսին, հիմնադրվեց մի նոր կազմակերպություն՝ «Պաշտպան հայրենյաց» անունով. Նախազգուշական նկատառումներով, այն կոչվել է «Երկրագործական ընկերություն»։ Որպես ռևոլյուցիոն գաղտնի կազմակերպություն, նրա խնդիրն էր՝ կազմակերպել ժողովրդի ինքնապաշտպանությունը և հաստատել Հայաստանի անկախությունը։

Իրականում ի՞նչ էր ներկայացնում «Պաշտպան հայրենյաց» կազմակերպությունը, ինչպիսի՞ն են նրա գործունեության մասշտաբները, կամ թե ի՞նչ ազդեցություն է թողել այն հայ հասարակական-քաղաքական մտքի վրա ընդհանրապես, իսկ ազգային-ազատագրական շարժումների վրա՝ մասնավորապես։ Գրախոսվող աշխատության մեջ, եթե ոչ սպառիչ, ապա հիմնականում տրված են վերը նշված հարցերի պատասխանները։

«Պաշտպան հայրենյաց»-ը լայն ճյուղավորություններ է ունեցել և նշանակալից աշխատանք է ծավալել Արևմտյան Հայաստանում, հատկապես Կարինի, Վանի, Բիթլիսի և Տիգրանակերտի վիլայեթներում։ Ավելի քան մեկ տարվա ընթացրում հազարների է հասել կազմակերպության անդամների թիվը. այնտեղ ընդգրկված էին արհեստավորներ, մանր առևտրականներ, գերազանգապես՝ հայ գյուղացիությունը։ «Պաշտպան հայրենյաց» գաղտնի կազմակերպության քաղաքական ու գործնական ղեկավարությունը գտնվում էր հայկական երկու հատվածների դեմոկրատական հայտնի մտավորականների ձեռքում։

Գրախոսվող աշխատության առավելություններից մեկն էլ այն է, որ նորահայտ արխիվային փաստաթղթերի և առկա աղբյուրների հիման վրա հեղինակը վեր է հանել «Պաշտպան հայրենյաց» գաղտնի կազմակերպության ղեկավարների ու նրան հարող ականավոր գործիչների տեղն ու դերը հայ ազատագրական շարժման մեջ։ Ավելի քան բնորոշ է ու ամբողջական Մկրտիչ Խրիմյանի գործունեության բնութագրությունը։ Ըստ ամենայնի գնահատված ու վերագնահատված են Մ. Խրիմյանի ո՛չ միայն քաղաքական դեմոկրատական հայացքները, այլև նրա ծավալած գործունեությունը, որի գերագույն նպատակն էր հայ և ստրկացված մյուս ժողովուրդներին ազատագրել թուրքական բռնակալության լծից։

Գրախոսվող աշխատության հեղինակը բնութագրել է նաև Բ. Նավասարդյանի, Կ. Նշիկյանի, Ար. Թոխմախյանի ծավալած գործունեությունը Կարինի «Պաշտպան հայրենյաց» գաղտնի կազմակերպությունում։ Ուշադրության է արժանի նաև այն փաստը, որ հայ մտավորականության մեծ մասը շարժման կողմն էր։ Կարինի գաղտնի կազմակերպության ամրապնդման գործում հատկապես նշանակալից է Բ. Նավասարդյանի դերը։

«Պաշտպան հայրենյաց» կազմակերպությունը կապ է ստեղծում կովկասահայ շրջանների հետ, գլխավորապես զենք ու դրամական օգնություն ստանալու համար, որն ապարդյուն է անցնում։

Կարինի գաղտնի կազմակերպության մասին ուշագրավ փաստեր կան նաև ռուսական հյուպատոս գեներալ «Դեննետի զեկուցագրերում»․ այդ նույնպես հաստատում է, թե դավադիրները «ոչ միայն կապեր են ունեցել գավառների», այլ Կոստանդնուպոլսի հայերի, ինչպես նաև Թիֆլիսի և ապա՝ «Ռուսաստանի նիհիլիստների հետ»։ Էրզրումի կազմակերպությունն իր առջև խնդիր էր դրել հայ բնակչությունից կազմակերպել զինվորական ստորաբաժանումներ, ապստամբություն բարձրացնել օսմանյան բռնակալության դեմ։

Հեղինակն ընդգծում է, որ «Պաշտպան հայրենյաց»-ը փորձում էր հանդես գալ որպես արևմտահայ աշխատավորության սոցիալական ու քաղաքական շահագործման դեմ ուղղված ժողովրդական ընդվզումների համահավաք կենտրոն։ Սակայն թուրքական ոստիկանության խուզարկու աչքից չվրիպեց նաև այդ գաղտնի կազմակերպությունը։ Նա դադարեցրեց իր գործունեությունը Կարինում, բայց «Պաշտպան հայրենյաց»-ի գոյությունը խաթարված ընթացքով հարատևում էր մինչև անցյալ դարի վերջերը։

«Պաշտպան հայրենյաց»-ի գործունեության ու Զեյթունի հերոսամարտերի միջև հավասար զուգահեռ է անցկացնում հեղինակը, շեշտելով, որ Արևմտյան Հայաստանում տեղի ունեցած այդ խոշոր իրադարձությունները դրական ազդեցություն ունեցան հայ ժողովրդի ազգային-քաղաքական ինքնագիտակցության առաջընթացի վրա։

Գրախոսվող աշխատության ակնհայտ առավելություններից է և այն, որ հեղինակն օգտագործել և շրջանառության մեջ է դրել ավելի քան 20 նորահայտ արխիվային փաստաթղթեր, որոնք, որպես հավելված, տպագրված են մենագրության վերջում։ Լեզվական բարձր կուլտուրայով գրված այս աշխատությունը կարդացվում է մեծ հետաքրքրությամբ և կարող է հարուստ նյութ ծառայել հայ ժողովրդի պատմության այս շրջանն ուսումնասիրողների համար։

Գրախոսվող աշխատությունը լինելով լուրջ ներդրում մեր ժողովրդի ազատագրական որոգումների պատմության մարքսիստական ուսումնասիրության անդաստանում, ունի և համոզիչ փաստարկման կարոտ թեզեր (ռուս-հայկական փոխհարաբերությունների նեղ ըմբռնումը, Մ. Խրիմյանի հոգևորական դիրքի միակողմանի մեկնությունը և այլն), որոնք, սակայն, ստվեր չեն նետում հեղինակի հաջողված հետազոտության վրա։

Ռ. Հովհաննիսյանի սույն մենագրության պատասխանատու խմբագրի դժվարին, բայց շնորհակալ աշխատանքը մեծ բարեխղճությամբ, մասնագետ պատմաբանի հմտությամբ է կատարել ակադեմիկոս Ա. Գ. Հովհաննիսյանը։

Վ. ՄԵԼԻՔՍԵԹՅԱՆ

թյան պայմանագիր. բացվեցին բանտերի դռները, ազատվեցին կոմունիստներն ու կոմերիտականները, և հնարավորություններ պետք է ընձեռվեին նրանց լեգալ գործունեության համար:

Այդ օրերին Անդրկովկասի ազատատենչ բանվորներին էր հասնում «Երիտասարդ պրոլետար» թերթի մարտաշունչ խոսքը: Հինգ համար լույս տեսնելուց հետո թերթը բռնագրավվեց, շատ ընկերներ արտաքսվեցին Վրաստանից, շատերը կրկին ձերբակալվեցին: Այս ամենը խիստ մտահոգում էր թերթի խմբագիր Ստ. Վարդանյանին, Ց. Մախարաձեին և Հ. Նազարեթյանին:

— Պետք է պաշտոնական հարցում անել կառավարությանը, թե մինչև ո՞ւր է հասնելու նրանց հալածանքը,— ետ ու առաջ քայլելով՝ ասում էր Նազարեթյանը:

— Ի՞նչ կասես, Ստյո՛պա, քո վայելուչ տեսքը շատ հարմար է պաշտոնական այցի համար,— դիմեց Մախարաձեն հուզված խմբագրին:

— Ես կերթամ, դուք սպասեք ինձ,— մեկեն ոտքի կանգնելով նա վերցրեց խոզանակը, մի անգամ ևս մաքրեց վերնաշապիկը, սանրեց մազերն ու իրեն մի լավ տնտղելով՝ դուրս եկավ:

— Ստյոպան միշտ ջահել կմնա. այսքան գործի մեջ էլ չի մոռանում իր արտաքինը: Ինչ էլ հագնի՝ կոկիկ է ու մաքուր. հաճելի է նրան այդպես տեսնելը,— հիացմունքով ասաց Ֆիլիպը:

Ստյոպան մտավ գեներալ նախագահի՝ Սուլակվելիձեի առանձնասենյակը:

— Ներեցեք, գեներա՛լ, չէ՞ որ պայմանագրի համաձայն արգելված է կոմունիստներին հալածելն ու արտաքսելը: Մինչդեռ տեսե՛ք, թե ի՞նչ է կատարվում Թիֆլիսում:

Առաջին պահի գեներալ նախագահեն այնպիսի զարմացական տեսք ընդունեց, որ կարելի էր կարծել, թե իսկապես նա անտեղյակ է այդ ամենին: Ապա ոտքի կանգնելով՝

— Վրաստանում ոչ մի կոմունիստ չի հալածվում և չի կարող հալածվել: Արտաքսվում են միայն քաղաքում չգրանցվածները, այն անձինք, ովքեր Վրաստանի հպատակը չեն,— և գոհ իր պատասխանից՝ ժպտաց:

— Իսկ ինչի՞ արդյունք է այն զուգադիպությունը, որ բոլոր չգրանցվածները կոմունիստական պարտիայի կամ Երիտասարդ կոմունիստների միության անդամ են:

Ժպիտը սառեց գեներալ նախագահի դեմքին, և հարցը մնաց անպատասխան:

Հազիվ էր Վարդանյանը հասել Կենտկոմ (կոմերիտմիության Կենտկոմը և «Երիտասարդ պրոլետար» թերթի խմբագրությունը գտնվում էին Վելյամինովսկի փողոցի վրա), երբ ներխուժեցին Կեդիայի «քաջերը»: Եվ Ստյոպա Վարդանյանը երեք օրից ավելի այլևս իրավունք չուներ Վրաստանում մնալու: Կոմերիտմիությունն անցավ կիսալեգալ վիճակի:

ԿՈՄԻՆՏԵՐՆԻ երկրորդ համաշխարհային կոնգրեսը տեղի էր ունենալու 1920 թվականի հուլիսի 15-ին: Բորիս Ձնելաձեն և Ստյոպա Վարդանյանը ընտրվեցին Վրաստանի և Հայաստանի պատվիրակության կազմում: Իր պարտիական գործունեությամբ երիտասարդության հետ կապված, նրանց սրտերն այնպես դյուրությամբ նվաճող հեղափոխական մարտիկը ինտերնացիոնալիստ էր, զերծ ազգային ամեն մի սահմանափակությունից, սնապարծությունից: Նրա մոտ ընկերներն ու բարեկամներն էին՝ թե՛ վրացին ու աբխազը, թե՛ ադրբեջանցին, ռուսն ու ուկրաինացին. շատ մտերիմ էր Ս. Օրջոնիկիձեի, Մ. Օրախելաշվիլու հետ, իր խոհերն ու մտածումներն անկեղծորեն նրանց էր վստահում անքուն գիշերների անկաշկանդ զրույցների պահին, լինեին դրանք բաց երկնքի տակ, թե ընդհատակյա թաքստոցում:

Նա նոր էր վերադարձել Կոմինտերնի երկրորդ կոնգրեսից և Վրաստանի՝ կրկին ընդհատակ անցած կոմերիտմիության համագումարում զեկուցեց կոնգրեսի աշխատանքների և երիտասարդության միջազգային շարժման մասին:

ԱՅՆ ժամանակ, երբ Երևանում տեղի ունեցավ դաշնակցական ավանտյուրան, Կասյանի գլխավորած հեղափոխական իշխանությանը փոխարինեց դաշնակցությունը, նոր պրեմիեր Վրացյանը ազդարարեց՝ հայկական դեմոկրատիան իր համերաշխությունն է հայտնում Վրաստանի դեմոկրատիային: Փետրվարի 22-ին Նոյ Ժորդանիան հայտարարեց՝ Թիֆլիսը մեր նոր Վերդենն է: Դրանից երեք օր անց Կարմիր բանակը մտավ Վրաստան, Թիֆլիսի վրա փողփողաց սովետական իշխանության կարմիր դրոշը: Անփառունակ ընկավ նոր Վերդենը:

Վրաստանի սովետականացումից հետո կարճ ժամանակ վարելով նորաստեղծ ռեսպուբլիկայի ներքին գործերի կոմիսարի, բանակի քաղբաժնի պետի պաշտոնը, որպես հեղափոխական կոմիտեի նախագահ Վարդանյանը գործուղվում է Ալեքսանդրապոլ, ապա դառնում Էջմիածնի, այնուհետև Նոր Բայազետի գավառային կոմիտեի նախագահը: Շատ կարճ ժամանակամիջոցում այդ խիստ մարդամոտ երիտասարդը վայելուչ վարվեցողությամբ, բացառիկ նրբանկատությամբ և ուղղամտությամբ գրավեց իր հետ աշխատողների, իր ղեկավարած գավառների բնակիչների, հատկապես երիտասարդության սերն ու համակրանքը: Շատ հաճախ կարելի էր նրան տեսնել երիտասարդներով, հոգաշատ գյուղացիներով ու ինտելիգենտներով շրջապատված: Համոզելու, աշխատանքային էնտուզիազմով վա-



րակելու զարմանալի ունակություն ուներ մտավոր բարձր կուլտուրայի տեր այս մարդը: Մեծ ուշադրություն էր նա նվիրում երիտասարդ կադրերի դաստիարակությանը, առաջքաշմանը, վստահում էր նրանց, ոգևորում. հետները զրուցելիս չէր մոռանում մեծ առաջնորդների օրինակով ինքնապահանջկոտություն, պատասխանատվություն սերմանել նրանց մեջ: Ինքն այդ հատկությունների մարմնացումն էր:

1922 թվականին նա ընտրվում է Անդրկովկասի բանվորների, գյուղացիների, զինվորների I համագումարի, Անդրկովկասյան կոմունիստական կազմակերպությունների I համագումարի պատգամավոր:

ՈՐՏԵՂ էլ աշխատել է Ստյոպա Վարդանյանը՝ պարտիական մամուլի խմբագրություններում, Հայաստանի թե ՍՍՌՄ Կենտրոնական գործադիր կոմիտեի անդամ, ապա՝ Հայաստանի կոմունիստական պարտիայի Կենտկոմի երկրորդ քարտուղար, ամենուրեք աչքի է ընկել իր իմացությամբ, գեղագիտական մեծ ճաշակով, կարդացածությամբ, պատմության ու գրականության հարցերի խորիմացությամբ: Այս հատկությունների և մամուլի գործերին լավատեղյակ լինելու համար էլ 1931 թ. նրան ընտրեցին Անդրկովկասի պարտիայի պատմության գիտահետազոտական ինստիտուտի գիտական խորհրդի անդամ և Անդրկովկասի Կենտրոնական գործադիր կոմիտեին կից՝ աշխարհի բոլոր ազգությունների մամուլի ցուցահանդեսի կոմիտեի անդամ:

Գեղարվեստական գրականության ընթերցանությամբ էր նա գտնում աշխատանքի հոգնությունը: Հաճախ կարելի էր տեսնել նրան Թումանյանի ստեղծագործություններից արտասանելիս.

—«Փարվանան» Թումանյանի մեծագույն գործն է. անկրկնելի, կատարյալ պոեզիա, ուր անզուգական են և՛ լեզուն, և՛ պատկերները, և՛ սիրո սպասումն ու սիրատենչ փարվանաները...

Սիրում էր Տերյանի Վերադարձի երգերն ու թախծանույշ Մթնշաղի անուրջները, համարում նրան հայ քնարերգության ամենաանաղարտ, նուրբ ու սիրազեղ լարը: Բարձր էր գնահատում ռուս հանճարեղ պոետներին: «Լերմոնտովը ռուսական հոգու մարմնավորումն է»,— ասում էր չափազանց նուրբ զգացմունքների տեր այդ մարդը և մինչև կյանքի վերջն էլ չբաժանվեց նրա բանաստեղծություններից: Պոեզիայի, գրականության երկրպագուն կարդում էր ժամանակակիցների ստեղծագործությունները, ուսումնասիրում փոթորկահույզ առօրյան արտացոլելու նրանց եղանակները: Նրան անսահման գրավում էր Եսենինի քնարը, իսկ Աննա Ախմատովային դասում էր ժամանակի ամենախելացի կանանց շարքը, նրա պոեզիան համարելով իմացության լուրջ աղբյուր:

Բեղուն է եղել Ստ. Վարդանյանի գրիչը. բացի ընդհատակյա, այնուհետև ազատ թերթերում լույս ընծայած հոդվածներից, առաջնորդողներից, նա գրել է մի շարք բրոշյուրներ և «Ընդհատակում» գիրքը՝ Մամիա Օրախելաշվիլու առաջաբանով: Անվանաթերթի վրա կարդում ենք. «Ալեքսանդր Մյասնիկյանի հիշատակին է նվիրում հեղինակը»: Մյասնիկյանի հանդեպ տածած սիրո այս առհավատչյան նա համարում է Անդրկովկասյան ընդհատակյա կազմակերպությունների պատմության ուրվագծեր. «...հուսով ենք, որ այս ոչ մեծ աշխատությունը, որպես պատմության համար նյութ ստեղծելու առաջին փորձը, կկատարի իր պարտականությունը», համեստորեն գրում է նա: Առաջաբանում Մամիա Օրախելաշվիլին տվել է հեղինակի խորիմաստ, դիպուկ բնութագիրը. «Ռոզինը այն երիտասարդ կոմունիստներից էր, որոնք պարտիայի ամեն առաջադրանքին ու կոչին պատասխանել են՝ «Մի՛շտ պատրաստ եմ»»:

«Ընդհատակի» լույս տեսնելուց որոշ ժամանակ անց հրատարակվում է Գայոզ Դևդարիանիի «Վրաստանի կոմերիտմիության ակունքներից» գրքույկը, որով կրակի տակ է առնվում Ռոզինի «Ընդհատակում»-ը: Որքա՞ն սրամիտ է գրված Վարդանյանի՝ հումորով, երբեմն էլ սպանիչ սարկազմով լի «Ի՞նչ ակունքներից» գրքույկը՝ Դևդարիանիի դեմ, որին նա համարում է իր ձայնին սիրահարված սոխակ: Բացահայտելով, որ անհիմն է իր և իր գրքի դեմ ուղղված հարձակումը, նա աշխատում է ապացուցել, որ անհաջող է քննադատությունը և խորհուրդ է տալիս հեղինակին. «Երբ դժվար է գրել, մի՛ գրեք, չէ՞ որ Ձեզ ոչ ոք չի ստիպում», մանավանդ՝ «Անհարմար է սափրվել սովորել ուրիշի դեմքի վրա»: Կետ առ կետ նշելով Դևդարիանիի գրքույկի սխալները և դրանց աղբյուրները, առաջարկում է դրա համար նոր վերնագիր՝ «Քաղաքական կիսագրագիտության ակունքներից»:

1932 թվական: Տագանրոգ. գավառական մի քաղաք՝ նեղլիկ փողոցներով, ցածլիկ տներով: Ոչ մի հիվանդանոց այնպիսի մարդասեր մի բժշկի ծննդավայրում, ինչպիսին Չեխովն է: Բոլոր բակերում ցեստեռններ, որոնց մեջ հավաքված անձրևաջուրն էին գործածում տեղացիները:

— Ջրմուղի միջոցով պետք է բնակիչներին հասցնել Միուս գետի ջուրը,— խնդիր դրեց Տագանրոգի պարտիայի քաղաքային կոմիտեի առաջին քարտուղար Ստ. Վարդանյանը:

Եվ բնակիչների համատեղ ջանքերով, նրա նախաձեռնությամբ ու անձնական մասնակցությամբ անցկացվեց 18 կիլոմետրանոց ջրմուղը: Դրան հաջորդեցին ճանապարհաշինությունը, քաղաքի կանաչապատման աշխատանքները, ձեռնարկեցին կոյուղիների անցկացմանը: Մաս-

Արևմուտքի ազդեցությունը։ Մինչև երկրորդ համաշխարհային պատերազմը արտահանվող կապիտալի մեջ գերակշռում էր մասնավորը։ Սակայն այս հարաբերակցությունը հետպատերազմյան ժամանակաշրջանում փոխվեց, և առաջին տեղն անցավ պետական կապիտալը։ Ի դեպ նշենք, որ արտահանվող կապիտալի մեջ տեղի ունեցող ստրուկտուրային այդ փոփոխությունը պայմանավորված էր պատերազմից հետո ստեղծված տնտեսա-քաղաքական նոր իրադրությամբ։ 1956—1959 թվականներին Եվրոպական տնտեսական համագործակցության կազմակերպության անդամ երկրներից և ասոցիացիաներից մասնավոր կապիտալի տարեկան միջին հոսքը կազմել է 3 մլրդ, իսկ պետականը՝ 4 մլրդ դոլար։ Սակայն, հարկ է նշել, որ մասնավոր կապիտալի հոսքը դեպի Ասիայի, Աֆրիկայի և Մերձավոր Արևելքի երկրները խիստ աննշան է եղել։ Բայց պետք է նկատել, որ մասնավոր կապիտալի արտասահմանյան հոսքի այս մակարդակը վերջին ժամանակներս արդեն չի գոհացնում արևմտյան պետություններին, և նրանք ամեն կերպ աշխատում են ուժեղացնել այն։

Սակայն թույլ զարգացած երկրների ժողովուրդների ազգային ինքնագիտակցության աճը, իսկ մյուս կողմից՝ Արևմուտքի տնտեսական «օգնության» բուն էության բացահայտումը առաջացրին այդ երկրների ժողովուրդների հուզմունքի հսկայական ալիք։ Այսօր արևմտյան կառավարությունների ամենալավատես շրջաններն անգամ ընդունում են, որ մշտապես վտանգ է սպառնում Արևմուտքի և թույլ զարգացած երկրների հարաբերությանը, մանավանդ, երբ բացահայտվում են տնտեսական «օգնության» շարժառիթները։ Նույնիսկ «օգնություն» ստացող երկրների կառավարությունները երբեմն պահանջում են հեռու պահել օտարերկրյա տնտեսական իմպերիալիզմը։ Եվ, պատահական չէ, որ այս հարցի կարգավորումը խիստ հրատապ է համարվում Արևմուտքում։ Իմպերիալիստական տերությունների արտաքին տնտեսական քաղաքականությամբ թելադրված միջամտությունը քողարկելու համար փորձ արվեց պետական կապիտալի հոսքի մեծ մասն իրագործել միջազգային ֆինանսական կազմակերպությունների միջոցով։ Ենթադրվում էր, որ նման քայլը «... օգնություն ստացող երկրներում վրդովմունքի ավելի քիչ առիթ կլիներ, այսպես կոչված, գաղութային ռեժիմի նկատմամբ» (W. Guth.— «Capital exports to less developed countries», Ամստերդամ, 1963, էջ 25)։ Այս քաղաքականության հետևանքը եղավ այն, որ առաջ եկան միջազգային ֆինանսական մի շարք նոր կազմակերպություններ։ Թեև այդ կազմակերպությունների կապիտալի մեջ առանձին երկրների բաժինը, ըստ օրենսդրությունների, սահմանափակված չէր, բայց, կարծես, ներքին պայմանավորվածություն կար՝ խուսափելու մենաշնորհային տենդենցներից, չգրգռելու համար «օգնություն» ստացող երկրներին։ Հակառակ այդ պայմանավորվածության, Ամերիկայի բաժինը, այնուամենայնիվ, կազմում էր կեսից ավելին, որը, սակայն, դեռևս հեռու էր ԱՄՆ-ի պահանջները բավարարելուց։

Իմպերիալիստական տերությունների՝ հսկայական չափերի հասնող «օգնությունը» վաղ թե ուշ ճեղքվածք էր առաջացնելու իրենց իսկ ֆինանսների մեջ։ Բանն այն է, որ նրանք այլևս ի վիճակի չեն հոգալու բոլոր «բարեկամ» երկրներում ներդրումների աճող պահանջը։ Իհարկե, այդ չի նշանակում, որ նրանք երբևէ կհրաժարվեն իրենց արտաքին տնտեսական քաղաքականությունից թեկուզ և այն նկատառումով, որպեսզի, ինչպես իրենք են հայտարարում, այդ «բարեկամ» երկրները թիկունք չդարձնեն Արևմուտքին՝ դիմելու կոմու-



նիստական բլոկի օգնությանը։ Պարզ է, որ նրանք այդ բացը կաշխատեն ծածկել «հասարակական կորպորացիաների», «վարչական գործակալությունների» և, մանավանդ, մասնավորի ներդրումներով։ ԱՄՆ-ի առևտրի մինիստրության միջազգային գործերի ասիստենտ Ջեկ Բերմանը, ֆինանսական մագնատների ուշադրությունը հրավիրելով այս հանգամանքի վրա, գրում է. «...սահմանափակ են կառավարության արտաքին նպատակների համար հատկացվող մարդկային և ֆինանսական աղբյուրները։ Դրանց արդյունավետությունը բարձրացնելու համար անհրաժեշտ է մասնավոր կապիտալի աշխուժացում» (I. R. Crowly «Foreign operations of American busiess enterprises» Յորտհեմ համալսարանի հրատարակություն, 1961, էջ 6)։

Մասնավոր կապիտալի աշխուժացման ուղղությամբ գործադրված ջանքերի մեկ այլ դրդապատճառը դոլարի և ստեռլինգի արժեզրկումն է։ ԱՄՆ-ից արտահանվող կապիտալի հսկայական չափերը չափազանց ծանր անդրադարձան նրա վճարումների հաշվեկշռի վրա։ Միայն տասը տարվա ընթացքում (1955—1964) նրա պասսիվը կազմեց 22,8 միլիարդ դոլար։ Արդյունքը եղավ այն, որ 1965 թվականի օգոստոսին նրա ոսկու պաշարները կազմեցին միայն 14 մլրդ դոլար, 1949 թվականի 24,6 մլրդ-ի դիմաց։ ԱՄՆ-ի ոսկու պաշարների նվազումը խիստ տագնապալից վիճակ է ստեղծել գործարար շրջաններում և, պատահական չէ, որ ամերիկյան սենատոր Վայնե Մորզեն, դեռևս 1963 թվականին պահանջեց օգնության սահմանափակում՝ սկսած 1965 թվականի հուլիսից։ Սակայն, այժմ արդեն այս հարցի քննարկումը դուրս է եկել ԱՄՆ-ի սահմաններից և ընդգրկել կապիտալիստական համաշխարհային սիստեմը՝ առաջացնելով վալյուտա-ֆինանսային հարաբերությունների խոր ճգնաժամ։ Այսպիսով, եթե ամբողջ հետպատերազմյան ժամանակաշրջանում Արևմուտքի «օգնությունը» թույլ զարգացած երկրներին հրամցվում էր որպես անհրաժեշտություն, ապա այժմ արդեն նրանց ուղղակի հասկացնել են տալիս, որ «օգնությունը» ինքնին ոչինչ տալ չի կարող, եթե այդ երկրները իրենց կողմից վճռական միջոցներ չձեռնարկեն, ըստ որում լավագույն միջոցառումը համարելով օտարերկրյա մասնավոր կապիտալի ներգրավումը։ Ներկա քաղաքականության հիմքում ընկած է վերջին ժամանակներս արևմտյան կառավարող շրջաններում հաճախակի արծարծվող «քիչ օգնությամբ ավելի շատ կապեր» ապահովելու ձգտումը։ Այս փոփոխությունն ինքնին վկայում է, որ Արևմուտքի «օգնությունը» ապրում է իր տնտեսա-քաղաքական ճգնաժամը։



Ի տարբերություն պետական կապիտալի, մասնավորի հոսքը տեղի է ունենում այն դեպքում, երբ կապիտալ ներմուծող երկրում առկա են ապահովության պայմաններ և որտեղ կայուն վիճակ գոյություն ունի ներդրման համար։ Նման պայմաններում, ինչպես տեսնում ենք, երկու հիմնական ազդակներ են որոշում օտարերկրյա մասնավոր կապիտալի հոսքը—կապիտալ ներմուծող երկրի տնտեսության բավարար հիմքը և քաղաքական ապահովության առկայությունը։ Այս երկու խմբի հարցերն էլ կենսականորեն զբաղեցնում են օտարերկրյա մասնավոր ներդրողներին։

Մասնավորելով մեր խոսքը Թուրքիայի մասին, նկատենք, որ Թուրքիան 1954 թվականին ընդունելով «օտարերկրյա մասնավոր ներդրումների խրա-

խուսման օրենքը», աշխարհում ճանաչվեց որպես օտարերկրյա մասնավոր կապիտալին մեծ արտոնություններ ընձեռող երկիր: Այդ, ինչպես նաև արևմտյան կառավարությունների քաղաքական նկատառումները Թուրքիայի առանձնահատուկ աշխարհագրական դիրքի և ռազմական նշանակության մասին, այնուամենայնիվ, չկարողացան աշխուժացնել մասնավոր կապիտալի հոսքը: 1951—53 թվականներին օտարերկրյա մասնավոր կապիտալի հոսքը Թուրքիա կազմել է 248,1 մլն թուրքական լիրա, մինչդեռ արտահանվող պետական կապիտալը եղել է 39,2 մլրդ թուրքական լիրա: Ինչպես տեսնում ենք, մասնավոր կապիտալի բաժինը արտահանվող ընդհանուր կապիտալի մեջ կազմել է 0,63 տոկոս: Օտարերկրյա մասնավոր կապիտալի հոսքի նվազման հիմնական պատճառներից մեկը Թուրքիայի տնտեսության անկայունությունն էր, որն, առաջին հերթին, արտահայտվում է վերջին տասը տարիների ընթացքում թուրքական վալյուտայի շեշտակի արժեզրկմամբ: Եթե 1954 թվականին 2,5 թուրքական լիրան էր հավասար մեկ դոլարի, ապա 1964-ին՝ 9 լիրան: Քանի որ ինֆլյացիոն երևույթը չի երաշխավորում բարձր եկամուտներ, ուստի այդ վանող տրամադրություն էր ստեղծում օտարերկրյա ներդրողների համար:

Բնակչության կենսամակարդակով Թուրքիան աշխարհի ամենահետամնաց երկրներից մեկն է, որով և պայմանավորված է նրա ներքին շուկայի սահմանափակվածությունը: Իսկ այդ ինքնին նշանակում է օտարերկրյա մասնավոր կապիտալի գործունեության ոլորտի սահմանափակում, ինչպես և մրցակցության ուժեղացում: Այս պատճառով էլ շուկաների տիրապետման ասպարեզում տեղական և օտարերկրյա ներդրողների շահերը խիստ հակադրվում են:

Ջափազանց նեղ է նաև Թուրքիայի արտաքին շուկան, որը նույնպես անդրադառնում է կապիտալի հոսքի վրա: Արտաքին շուկայի ընդլայնման կարևոր միջոց էր դիտվում Թուրքիայի՝ «Ընդհանուր շուկայի» մեջ ընդունվելը: Այդ առթիվ 50-ական թվականների վերջերից սկսած Թուրքիայի բազմաթիվ դիմումները մինչև 1964 թվականը ապարդյուն անցան: Առարկությունը հիմնականում Թուրքիայի տնտեսության անկայունության շուրջն էր: Սակայն արևմտյան պետությունների իրենց իսկ ցուցաբերած անվստահությամբ ավելի մեծ անվստահություն էին ներշնչում գործարար շրջաններին: Եվ, պատահական չէ, որ Թուրքիան այդ հարցի դրական լուծումը դիտում էր ավելի մեծ թվով օտարերկրյա ներդրողների ներգրավման միջոց:

Ինչպես թույլ զարգացած երկրներից շատերը, այնպես էլ Թուրքիան իր արտաքին առևտրի հաշվեկշռում ստեղծված ճեղքվածքը կարգավորելու և, ընդհանրապես, տնտեսությունը կայունացնելու նպատակով 1958 թվականին նոր օրենք ընդունեց, սահմանափակելով ներմուծումները: Թեև այդ օրենքը չէր նախատեսում արգելակել մասնավորի նախաձեռնությունը և ոտնահարել օտարերկրյա մասնավոր ներդրողների շահերը, բայց, քանի որ տեղական և օտարերկրյա ներդրողներին չէր հաջողվում ժամանակին ու բավարար չափով ներմուծել իրենց ձեռնարկություններին անհրաժեշտ նյութերն ու սարքավորումները, ինքնըստինքյան այդ օրենքը հակադրվում էր նրանց շահերին: Բնականաբար, այսպիսի իրադրության կողքով անտարբեր չէին կարող անցնել իմպերիալիստական տերությունները, մանավանդ, ներմուծման սահմանափակումներով նեղանում էր արտաքին շուկան:

Արևմուտքը իր տնտեսական «օգնության» բոլոր միջոցներով սկսեց ֆինանսավորել Թուրքիայի ներմուծումը, դրանով իսկ օգնեց նրան «դուրս գալու»



այդ դժվարությունից: Այդ ամենի հետևանքը եղավ այն, որ եթե 1960 թվականին ներմուծումը կազմում էր 470 մլն, ապա 1963 թվականին՝ 665 մլն դոլար, վճարումների հաշվեկշռի մեջ առաջացնելով 297 մլն դոլարի ճեղքվածք, որը ծածկվեց Արևմուտքում ստացված վարկերի հաշվին: Սակայն, պետք է նշել, որ օտարերկրյա մասնավոր ներդրողներին վանում են Թուրքիայի վճարումների բալանսի մեջ գոյացող հսկայական ճեղքվածքները, քանի որ դրանք վաղ թե ուշ, խանգարելու էին օտարերկրյա ներդրողներին ազատ արտահանելու իրենց ստացած օգուտները:

Օտարերկրյա ներդրողներին լրջորեն անհանգստացնում են նաև հսկայական չափերի հասնող պետական ներքին և արտաքին պարտքերը: Թուրքիան այսօր նորանոր վարկեր և փոխառություններ է վերցնում իր հին պարտքերի միայն տոկոսները վճարելու համար: Ինչ վերաբերում է բուն պարտքերին, ապա Թուրքիան խնդրում է Արևմուտքին՝ մարման ժամկետները երկարաձգել *:

Անհրաժեշտ է նշել, որ եթե չկա տնտեսության բավարար հիմք և օտարերկրյա մասնավոր կապիտալի հոսքը նվազում է, ապա քաղաքական ապահովության բացակայության դեպքում այն արտահայտվում է հոսքի սառեցմամբ: Այդ հանգամանքն ակնառու է հենց Թուրքիայում: Եթե 1954 թվականին օտարերկրյա մասնավոր կապիտալի հոսքը եղել էր 34,1 մլն թուրքական լիրա, իսկ 1957-ին (տնտեսական ճգնաժամի տարի)՝ 2,4 մլն, ապա 1960-ին (քաղաքական ճգնաժամի տարի)՝ 0,8 մլն:

1960 թվականի ռազմական հեղաշրջմանը հաջորդեցին քաղաքական հուզումներ և ճգնաժամեր, որոնք երկրի ներքաղաքական կյանքին տալիս էին անորոշություն: Տնտեսա-քաղաքական որոշակի ռեժիմի բացակայության պատճառով գործարար մարդիկ ետ էին քաշում իրենց ներդրումները, ներքին և օտարերկրյա մասնավոր ֆինանսական հաստատություններն ընդդիմանում էին ծավալելու իրենց վարկերը: Նույնիսկ թուրքական պետական բանկերը հրաժարվում էին ներդրումներից:

Օտարերկրյա ներդրողների համար քաղաքական անապահովությունն է՛լ ավելի սրվեց, երբ նոր ռեժիմի ղեկավարները խոստացան ձեռնարկել այնպիսի միջոցառումներ, որոնք տնտեսության զարգացումը պետք է դուրս բերեին փակուղուց: Նրանք նույնիսկ իրենց անվանեցին երկրի ինդուստրացման կողմնակիցներ, իսկ թույլ զարգացած երկրի համար այդ առնվազն նշանակում էր պետական սեկտորի ուժեղացում: Թեև այս տենդենցը անհետևանք չմնաց և հանդիպեց Արևմուտքի ուժեղ դիմադրությանը, բայց և այնպես հենց արևմտյան բուրժուական տնտեսագետների շրջանում օրավուր աճող այն համոզմունքը, թե թույլ զարգացած երկրների առաջընթացի ուղին հանգում է ինդուստրացման սկզբունքներին, է՛լ ավելի էր վանում օտարերկրյա մասնավոր ներդրողներին: Նրանք հաշվի էին առնում, որ թույլ զարգացած երկրներում ինդուստրացման քաղաքականությանը նախորդում է օտարերկրյա սեփականությունների ազգայնացումը:

Արևմուտքի ողջ «օգնության» ծրագրի առանցքը տվյալ երկրի մասնավոր սեկտորի ամեն կերպ ուժեղացումն է: Բայց արևմտյան երկրներն ավելի հեռուն գնացին, ընդունելով հատուկ որոշումներ «օգնության» պայմանների մա-

* Թուրք տնտեսագետների խոստովանությամբ նույնիսկ 100 տարուց հետո էլ Թուրքիան չի կարողանա վճարել իր ներկայիս պարտքերը:

սին։ 1961 թվականի սեպտեմբերի 3-ին ԱՄՆ-ի կոնգրեսում, միջազգային զարգացման կազմակերպության ստեղծման օրենսդրական ակտի 102 բաժնում, ի թիվս այլ պայմանների, նշված է. «ԱՄՆ-ի քաղաքականության նպատակն է զարկ տալ օգնություն ստացող երկրների տնտեսական ազատ հաստատություններին օտարերկրյա մասնավոր կապիտալի հոսքի արգելքների վերացման և նրա գործունեության խրախուսման միջոցով» (Publis Law, 87—195, 87 Congress 5—1983, 4—IX—1961)։ Ճիշտ նման պայմաններով սկսեցին իրենց վարկերը տրամադրել նաև արևմտյան բոլոր ֆինանսական կազմակերպությունները։ Այսպիսով, սկսած 1961 թվականից, Թուրքիան իր ստացած «օգնության» դիմաց պարտավոր էր «...համանման վերաբերմունք ցուցաբերել պետական և մասնավոր սեկտորներին և որ պետական ձեռնարկությունների կորուստը պետք է ընդգրկվեր բյուջեի մեջ» («Three Monthly Economic Reriew Turkey» № 42, հունվար, 1962, էջ 9)։

Իսկ թե ինչ էր նշանակում այդ, պարզաբանենք բազում փաստերից միայն մեկով։ 1964 թվականին Թուրքիայում ավարտվեց Էրեգլիի մետալուրգիական կոմբինատի շինարարությունը, որի կառուցման վրա ծախսվեց 250 մլն դոլար։ Չնայած որ այդ գումարի միայն 30 միլիոնն էր մասնավոր ներդրում, իսկ մնացածը պետական (ի հաշիվ (ԱՄՆ-ից ստացված վարկերի), սակայն գործարանի շահագործման ամբողջ տնօրինումն ու ղեկավարումը հանձնվեց ամերիկյան ու թուրքական մասնավոր ներդրողներին։ Վերջին ժամանակներս մասնավոր ներդրողներին խրախուսելու և նրանց նյութապես օգնելու նպատակով նորանոր բանկեր են հիմնադրվում Թուրքիայում։

Արևմտյան ուժերը տապալեցին Թուրքիայի ինդուստրացման գործը՝ հարվածելով նրան թիկունքից։ Այդ տեղի ունեցավ Թուրքիայի հնգամյա պլանի կապակցությամբ։ Նախ՝ նշենք, որ հնգամյա պլանի նախապատրաստման գլխավոր խորհրդատուն հոլանդացի հայտնի տնտեսագետ պրոֆ. Ժան Տինբերգենն էր, որի միակ մտահոգությունը մասնավորին հնարավորին չափ մեծ տեղ հատկացնելն էր։ Ինչ վերաբերում է արևմտյան տերություններին, ապա նրանք իրենց բազմաթիվ հանձնարարականներով ուղղակի միջամտեցին պլանի կազմակերպման աշխատանքներին։ Նույնիսկ ՆԱՏՕ-ն չզլացավ «աջակցություն» ցույց տալ։ Այս ամենի հետևանքը եղավ այն, որ պլանի նախագահի խոստովանությամբ՝ Թուրքիայի հնգամյա պլանն իրենից ներկայացնում է «...գալիք ոսկեդարը մասնավոր սեկտորի համար» («France Observateur», 30—VIII—1962)։

Վերոհիշյալից պարզ է, որ օտարերկրյա մասնավոր ներդրողներին քաղաքական ապահովություն ներշնչելու հարցում չափազանց մեծ են արևմտյան տերությունների ջանքերն ու երաշխիքները։ Այդ, առաջին հերթին, բացատրվում է նրանով, որ այս հողի վրա ավելի են միահյուսված պետությունների և մոնոպոլիաների շահերը։ Բացի այդ, իմպերիալիստական տերություններին և օտարերկրյա ֆինանսական մագնատներին քիչ մտահոգություն չեն պատճառում նաև սոցիալիստական լագերի հետ թույլ զարգացած երկրների հարաբերությունները։ Արևմտյան պետությունները, ունենալով թույլ զարգացած շատ երկրների քաղաքական կյանքին միջամտելու «հատուկ արտոնություններ», առայժմ կարողանում են այդ երկրների ներքին և արտաքին քաղաքականությունը իրենց ենթարկել։

Սակայն, այս բոլոր միջոցառումների նկատմամբ օտարերկրյա մասնավոր



ներդրողների շարունակվող անտարբերությունն ստիպում է արևմտյան կառավարություններին՝ որոնել ապահովության մթնոլորտ, ինչպես և նրանց շահագրգռվածության բարձրացման նորանոր միջոցներ։ ԱՄՆ-ի և Արևմտյան Գերմանիայի կառավարությունները, օրինակ, հասան այն բանին, որ Թուրքիան ճանաչեց ամերիկյան ու գերմանական մասնավոր կապիտալը՝ որպես պետական։ 1963 թվականին ԱՄՆ-ի արտաքին օգնության կոմիտեի նախագահ Դավիթ Բելը հայտարարեց, որ ԱՄՆ-ից օգնություն ստացող ամեն մի երկիր պետք է կենսագործի որոշ միջոցառումներ ու բարեփոխումներ։ Դրա արդյունքը եղավ այն, որ 1964 թվականին Թուրքիան ստիպված եղավ հրավիրել Տնտեսական զարգացման համագործակցության կազմակերպության էքսպերտների հանձնաժողով՝ 1954 թվականի օտարերկրյա ներդրումների օրենքը վերանայելու համար։ Հանձնաժողովի պատրաստած զեկուցագրում առաջին հերթին խոսվում էր պետական ձեռնարկությունների լիկվիդացման և մաքսային ու հարկային իջեցումների մասին։ Արևմտյան պետություններն էլ, իրենց հերթին, զանազան պետական և կառավարական օրենքներ են ընդունում իրենց մասնավոր կապիտալի արտահանումը խրախուսելու համար։ Այսպես, օրինակ, արևմտյան Գերմանիայում տեղական ձեռնարկատերն ազատվում է պետական հարկումից, եթե նա իր օգուտներն արտահանի և ներդնի թույլ զարգացած երկրներում։

Սակայն Մերձավոր Արևելքում օրավուր աճում են հակաիմպերիալիստական տրամադրությունները և իմպերիալիստները, ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարի ճնշման տակ, կորցնում են իրենց դիրքերը։ Այդ պատճառով էլ հենց օտարերկրյա մասնավոր կապիտալը Թուրքիա ներհոսելու շահագրգռվածությունն ավելի է նվազում։ Նրանց առանձնապես մտահոգում են Մերձավոր Արևելքում ծայր առած ազգայնացման տենդենցները։ Դրա պատճառներից մեկն էլ այն է, որ գնալով սրվում են թուրք-արաբական, թուրք-կիպրական, ինչպես և թուրք-հունական հարաբերությունները՝ իրենց մեջ պարփակելով բախումների վտանգ։ Արտաքուստ կարող է թվալ, թե Մերձավոր Արևելքում ստեղծված իրադրության պատճառով պետք է ավելի մեծանար օտարերկրյա մասնավոր կապիտալի հոսքը՝ քաղաքական ազդեցության ոլորտը պահպանելու նպատակով։ Սակայն, ինչպես տեսնում ենք, իրական վիճակը ամենևին էլ այդպիսին չէ։

Հ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

երկու կաթիլ ջուր, նման էին հիտլերյան ֆաշիզմին»։

1963 թվականին Բաասը սոցիալիստական պարտիայից վերածվեց կառավարող պարտիայի։ Նա իշխանության գլուխ անցավ արաբական երկու երկրներում՝ Իրաքում և Սիրիայում. հնարավորություն ստեղծվեց ցույց տալու, թե որքանով է նա նվիրված արաբական միասնության գաղափարին։ 1963 թվականի ապրիլի 17-ին ԱՄՌ-ի, Իրաքի և Սիրիայի ֆեդերացիա ստեղծելու մասին հռչակված դեկլարացիան շատ շուտով վերածվեց դատարկ փաստաթղթի։ Բաասականները կարճ ժամանակամիջոցում լիովին հիասթափեցրին իրենց այն երկրպագուներին, որոնք «արաբական միասնության» հույսերը կապում էին նրանց հետ։ Գամալ Աբդել Նասերի հետ բանավիճելով «Բաաս» պարտիայի գոյության նպատակահարմարության հարցի շուրջ՝ Իրաքի բաասականների պարագլուխ Ալի Սաադին հետևյալ բնորոշ հայտարարությունն արեց. «Մենք ավելի շուտ հարյուր տարով կհետաձգենք արաբական միասնությունը, քան կհամաձայնենք կազմալուծելու «Բաաս» պարտիան»։ Արաբական միասնության գաղափարն իր նեղ պարտիական նպատակներին ստորադասելը պարզորոշ ցույց էր տալիս, թե Բաասը որքանով է նվիրված իր ծրագրում հռչակած այդ խնդրին։ Այլ կերպ ասած, Բաասը ոչ թե ծառայում էր արաբական միասնությանը, այլ ընդհակառակը, վերջինս օգտագործում էր իր հակաժողովրդական նպատակների համար։

Իրաքի բաասական կառավարությունն ի վիճակի չեղավ սոցիալ-տնտեսական որևէ էական բարեփոխություն կատարել։ Բաասականների գործունեությունը նպաստավոր պայմաններ էր ստեղծում Իրաքում իմպերիալիստական տերությունների ազդեցության ուժեղացման համար։ Բացի այդ, Քուրդիստանում մղվող պատերազմում, չնայած ուժերի գերագույն լարման և արտաքին օգնության, բաասականներն ընկան ծանր կացության մեջ։ Քրդական դեմոկրատական ուժերը, Իրաքի մյուս ազգությունների առաջադեմ ուժերի՝ արաբների, ասորիների, հայերի և մյուսների օգնությամբ կարողացան դիմադրել կառավարության մեծաթիվ ու լավ զինված բանակին և հերոսաբար պաշտպանել իրենց դիրքերը։ Միջազգային ասպարեզում, ինչպես և արաբական երկրներում, բաասականների արյունոտ ռեժիմի հանդեպ մեծ հակակրանք առաջացավ։

Այսպիսի պայմաններում, 1963 թվականի նոյեմբերի 18-ին, տեղի ունեցավ «պետական հեղաշրջում»։ «Հեղաշրջումը» կատարվեց Իրաքի պրեզիդենտ Արեֆի եղբոր՝ Աբդել Ռահման Արեֆի միջոցով։ Պրեզիդենտ Արեֆի համաձայնությամբ կատարված այս քայլը դարձավ «դրության փրկելու» միջոց։

Իրաքի պրեզիդենտը և կառավարության ղեկավար Թահեր Յահյան հանդես եկան հայտարարություններով, որտեղ պատրաստակամություն էին հայտնում լուծելու երկրի առջև կանգնած սոցիալ-տնտեսական և քաղաքական հրատապ խնդիրները։ Սակայն, արժանահիշատակ է այն փաստը, որ երկրի ներքաղաքական դրության լարվածության հիմնական պատճառի՝ Քուրդիստանում մղվող պատերազմի մասին ոչինչ չէր ասվում։ Կառավարությունը փաստորեն մտադիր էր շարունակել «քրդական պրոբլեմը» զինված ուժով վերացնելու քաղաքականությունը։ Դրա ակնառու վկայությունն այն է, որ նոյեմբերյան հեղաշրջումից մոտ երեք ամիս անց միայն կառավարությունը հարկադրված եղավ ձեռնարկելու քրդական պրոբլեմը խաղաղ ճանապարհով լուծելու բանակցություններին։ 1964 թվականի փետրվարի 10-ին իրաքյան Քուրդիստանում ռազմական գործողությունները դադարեցվեցին։ Փետրվարյան զինադադարը քրդական ազատագրական և Իրաքի ամբողջ դեմոկրատական շարժման հաղթանակն էր։ Քրդական շարժման ղեկավարները պատրաստակամություն հայտնեցին նույնիսկ որոշ զիջումների գնով խաղաղ ճանապարհով լուծելու քրդական ինքնավարության հարցը և վերջ տալու արյունահեղությանը։ Բաասականների հեռացումը իշխանությունից և կառավարության կազմում քաղաքական նոր խմբավորումների երևան գալը քրդական շարժման ղեկավարների մեջ առաջացրին (ընդունելի պայմաններով) քրդական պրոբլեմը կարգավորելու հույսեր։

Սակայն զինադադար կնքելուց հետո ընկած ժամանակաշրջանը ցույց տվեց, որ Արեֆ—Յահյայի կառավարությունն ըստ էության, որևէ լուրջ մտադրություն չունի քրդական պրոբլեմի արդարացի կարգավորման ուղղությամբ։ Զինադադարի պայմանները մնացին անկատար։ Կառավարությունն իր զորքերը չհանեց Քուրդիստանից։ Փաստորեն թղթի վրա մնաց պատերազմի հետևանքով ավերված շրջանները վերականգնելու համար միջոցներ տրամադրելու, գյուղացիների ավերված ցանքատարածությունների, տների դիմաց փոխհատուցելու վերաբերյալ խոստումը։ Քրդական ռեակցիոն ուժերին՝ «Սալահ էդ դինի հեծելազորայիններին», որոնք կռվում էին ապստամբների դեմ, ո՛չ միայն չցրեցին, ինչպես նշված էր համաձայնագրում, այլ ընդհակառակը՝ ավելացվեց նրանց թիվը։

Կառավարության ուխտադրժությունը երևան եկավ զինադադարից անմիջապես հետո։ 1964 թվականի փետրվարի 24-ին Արեֆը հայտարարեց, որ «արաբների ու քրդերի միջև ոչ մի «համաձայնագրի» կարիք չկա։ Խոսք լինել չի կարող քրդերի ազգային իրավունքների վերաբերյալ բանակցությունների մասին, քանի որ քրդերը և արաբները եղբայրներ են»։

Քրդական պրոբլեմը խաղաղ ճանապարհով կարգավորելու մասին կառավարության հայտարարությունը անհիմն էր, քանի որ ինքը՝ պրեզիդենտ Արեֆը, ամեն պատեհ առիթ օգտագործում էր այդ հարցը «կոմունիստների քայքայիչ գործունեության հետևանքը» համարելու և, ընդհանրապես, մերժելու քրդերի իրավունքը՝ ազգային ինքնավարության հարցում։

Անհետևանք մնացին Մուստաֆա Բարզանու և քրդական շարժման մյուս ղեկավարների բազմաթիվ հուշագրերը՝ քրդական պրոբլեմի լուծման համար պայմաններ ստեղծելու մասին։ Ընդհակառակը, կառավարությունը, առանց քրդական ինքնավարության հետ կապված որևէ միջոցառում իրականացնելու, քրդական շարժման ղեկավարներից պահանջում էր ցրել ազգային պարտիզանական միավորումները։

Բանակցությունների անարդյունավետությունը և կառավարության ուխտադրժությունը քրդական դեմոկրատական պարտիայի ղեկավարությանը հարկադրեցին ապստամբների հսկողության տակ գտնվող քրդական շրջաններում իրականացնել որոշ նախնական միջոցառումներ։ 1964 թվականի հոկտեմբերի սկզբներին ստեղծվեց «քրդական ռևոլյուցիոն խորհրդի հրամանատարություն», որը կատարելու էր գործադիր իշխանության ֆունկցիան։ Ստեղծվեցին նաև հինգ այլ ժամանակավոր կոմիտեներ, որոնք պետք է զբաղվեին զինվորական և քաղաքացիական տարբեր հարցերով։

Քրդական դեմոկրատական ռևոլյուցիոն շարժման ղեկավարները միաժամանակ շարունակում էին ջանքեր գործադրել կառավարության հետ համաձայնության գալու և քրդական պրոբլեմը խաղաղ ճանապարհով լուծելու համար։ Այդպիսի քայլերից մեկը 1965 թվականի սկզբներին մեծ տերություններին ուղղված Քրդական դեմոկրատական պարտիայի դիմումն էր, որով նրանց ուշադրությունն էր հրավիրում «ստեղծված լարված դրության և քրդական պրոբլեմը ինքնավարության միջոցով լուծելու անհրաժեշտության վրա» («Humanité», 5 մարտի, 1965 թ.)։ Քրդական շարժման ղեկավարները համանման հուշագիր ուղարկեցին նաև Միավորված Ազգերի կազմակերպությանը։

Սակայն, Իրաքի իշխանությունների հրահրած մի շարք միջադեպեր ավելի սրեցին դրությունը։ 1964 թվականի նոյեմբերի վերջերին Կիրկուկի մոտակայքում գտնվող քրդական մի գյուղի բնակիչներին քշեցին իրենց հողերից։ Զմռանանք ասել, որ 1963 թվականին, բաասական ռեժիմի օրոք, նավթային հարստությունների կենտրոն Կիրկուկի գավառից արտաքսվեց 25 հազար քուրդ ազգաբնակչություն։ Քուրդիստանի նավթաբեր շրջաններից քուրդ ազգաբնակչության տեղահանումը պատահական չէ և հեռավոր նպատակներ է հետապնդում... 1964 թվականի դեկտեմբերին մոտավորապես 1500 քրդական ընտանիք տեղահան արվեցին Դերբենդի խանի ջրամբարի շրջակայքից. նրանք հարկադրված ապաստանեցին իրանական Քուրդիստանում։ Արտաքսված քրդերի փոխարեն այդ տերիտորիաներում բնակեցվել են արաբական այն ցեղերը, որոնց ցեղապետերը սերտորեն կապված են «Իրաք Պետրոլեում կոմպանիի» հետ։ Բազմաթիվ ապացույցներ կան, որ կառավարությունը պարտավորվել է նավթային ընկերությանը՝ շարունակել քրդերի մասսայական արտաքսումը նավթով հարուստ շրջանից։

Քրդերի դեմ նախապատրաստվող նոր պատերազմի պլանները պահվում էին խիստ գաղտնի։ Նույնիսկ ապրիլի 3-ից հետո, երբ կառավարությունը փաստորեն նորից պատերազմ սկսեց Քուրդիստանում, Իրաքի պաշտոնական շրջանները աշխատեցին լռության մատնել այն և հերքել պատերազմական գործողությունների մասին լուրերը։ Պատճառն այն էր, որ քրդերի դեմ մղվող եղբայրասպան պատերազմը խիստ դատապարտվում էր Իրաքի հասարակայնության ամենալայն խավերի կողմից։ Բնորոշ է, որ նույնիսկ կառավարության կազմում տեսակետների ընդհանրություն չկար այս հարցում։ Եթե Արեֆի և Յահյայի գլխավորած խումբը հանդես էր գալիս «քրդական պրոբլեմը զինված ուժով լիկվիդացնելու օգտին», ապա կառավարության մյուս թևը, որի մեջ մտնում էին ԱՄՌ-ի հետ ավելի սերտ հարաբերություններ հաստատելու կողմնակիցները, որոնց գլխավորում էր Ֆուադ Ռիքաբին, համաձայն չէին քրդերի դեմ զինված պայքար սկսելուն։ Հարավային Քուրդիստանի հարցը դարձավ Իրաք-ԱՄՌ բանակցությունների առարկա։ 1965 թվականի փետրվարի 22-ին ԱՄՌ-ի պրեզիդենտ Նասերը Արեֆին ուղղած նամակում կոչ էր անում գտնել քրդական պրոբլեմի խաղաղ կարգավորման ուղիներ։ Այդ նամակում, որը հետագայում հրապարակվեց մամուլում, ասված էր. «Ավելի քան մեկ ու կես տարի առաջ ես Ձեզ խորհուրդ տվեցի Քուրդիստանի համար ինքնավարության այնպիսի ձև ընտրել, որը չխախտի Իրաքի միասնությունը։ Կուզեի այդ կարգի միջոցառումն ընդունվեր որպես արաբների մեծահոգության արտահայտություն իրենց քուրդ եղբայրների նկատմամբ»։

Նասերի այս միջնորդությունն, ըստ երևույթին Արեֆի մեջ հարուցեց բացասական ռեակցիա։

վորն ու մարդը հեռանում էին ափից: Նամուն պառկում էր մեջքի վրա, իսկ Գրիֆինը բարձրանում էր նրա փորին. հետո այնտեղից ջուրն էր նետվում ու սկսում արագ դեպի ափ լողալ: Նամուն ընկնում էր նրա հետևից, բռնում էր, բարձրացնում մեջքին ու տանում նախկին տեղը: Կետը կարող էր երկար խաղալ, երբեք չէր հոգնում և միշտ ինքն էր հաղթում:

Սակայն Նամուի տրամադրությունը միշտ չէր բարձր լինում: Երբ նա սկսում էր գլուխը տարուբերել, վեր ու վար անել, կամ պոչի լողաթևերի թիաբերաններով խփել ջրին, նշանակում էր՝ «հանգիստ թող ինձ»:

Պոչավորների մարմինը պարմանալի կազմվածք ունի, ինչ-որ չափով հիշեցնում է վերերկրյա կենդանիների կառուցվածքը: Նրանք ունեն թերաճ ապրոսկրեր: Նրանց պոչի ու մեջքի լողաթևերը մկաններից ու փափուկ մսից են, բայց կրծքի յուրաքանչյուր կլոր լողաթև ամրացված է «դաստակի» հինգ ոսկրիկներով:

Պոչավորների, ինչպես և դելֆինների էգերը յուրօրինակ ձևով են կերակրում իրենց ձագերին: Երբ պոչավորի երկու մետրանոց ձագը աշխարհ է գալիս, ուտելու մեծ ցանկություն է ունենում: Նա սկսում է գլուխը տարուբերել, մոր փորի ներքևի մասում, պոչի մոտ: Էգը մկանային ուժեղ շարժումով ուղղակի նրա բերանն է թափում կաթի շիթերը:

Պոչավորները և դելֆինները իրենց կառուցվածքով, վարքով և, եթե կարելի է այսպես ասել, խելահասությամբ շատ ընդհանրություններ ունեն: Ինչպես դելֆինների, այնպես էլ սրանց գլխուղեղի տոկոսը, մարմնի համեմատությամբ չափազանց մեծ է: Մեկ տոննա քաշ ունեցող երկտասարդ կետ-պոչավորի գլխուղեղը կշռել է 14 ֆունտ ≈ (6,3 կգ):

«Ես համոզված եմ,— ասում է Գրիֆինը,— որ Նամուն և պոչավորների մյուս ներկայացուցիչները, մարդու հսկողությամբ, կկարողանան սովորել պանապան թռիչքներ կատարել ու տարբեր ձևերով լողալ դելֆիններից ոչ պակաս արագ ու հմուտ: Համենայն դեպս, պոչավորներով զբաղվելիս, չպետք է մոռանալ, որ նրանք վտանգավոր կենդանիներ են, որ նրանց գործողությունները երբեմն անհնար է կռահել»:

Նամուի բառապաշարը հատկապես ուսումնասիրել է Ստեֆենֆորդի գիտահետազոտական ինստիտուտի աշխատակից Թոմաս Պոուլտերը: Նա պարզել է, որ պոչավորի արտաբերած հընչյունների մեծ մասը կոկորդային է: Ջրի մակերեսին պոչավորը հնչյուններն արտաբերում է կոկորդով: Խորքում հնչյունները ջրին են հասնում կետի մարմնի թաղանթի միջով, որը լավ հաղորդիչ է: Հնչյուններն արտաբերելու և ընկալելու մեծ ձայնածավալ ունեն կետերը—վայրկյանում 50-ից ամենապակասը մինչև 40000 հաճախականությամբ և 100000 տատանումով: Մարդկային ականջը մեկ վայրկյանում կարող է ընկալել 50 հնչյունային հաճախականություն և մինչև 20 հազար տատանում:

Նամուի ուսումնասիրությունն ու այդ ուղղությամբ կատարված փորձերը, ըստ մի շարք գիտնականների, մեծ արժեք ունեն:

«Ինձ թվում է,— հայտարարել է ամերիկացի հայտնի բիոլոգ Ռեմինգտոն Կելոգը,— որ մենք պետք է որոշ չափով ապատվենք այդ կենդանիների մասին ունեցած մեր նախկին պատկերացումներից: Նամուի վարքը դուրս է մեր երևակայության սահմաններից: Այնուամենայնիվ ես կզգուշանայի ընդհանրացումներ անել մեկ կետ-պոչավորի վարքից ելնելով»:

«Неделя» № 13, 1966 г.


ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ս., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ., ԱՆԱՆԻԿՅԱՆ Բ. Հ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՀԱԿՈԲՅԱՆ Հ. Մ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս. Հ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.:

Թողարկիչ՝ Ա. ՅԱՎՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Ջ. ԱՎԱԳՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք, հեռ. 2—02—24

Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении, тел. 2-02-24

ՎՖ 06026 Պատվեր 1258 Տիրաժ 10.720 Գինը 25 կոպ.:

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 13/V 1966 թ.:

Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի Պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան, Թումանյան փ. № 51:




# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԿԱՐՊԻՆՍԿԻ Վ. Ա.—Վլադիմիր Իլյիչ Լենին. *Առաջնորդ. ընկեր. մարդ. 64 էջ, տպաքանակ՝ 95 հազար:*

*Վյաչեսլավ Ալեքսեևիչ Կարպինսկին (1880—1965) կոմունիստական պարտիայի հնագույն անդամ է, պարտիական գրականության գիտակ, պրոպագանդիստ: Այս գրքում նա խոսում և իր հուշերն է պատմում Լենինի՝ որպես կոմունիստական պարտիայի և սովետական պետության ղեկավարի, բանվոր դասակարգի, աշխատավորական մասսաների առաջնորդի և մարդու, ընկերոջ մասին:*

ՕՆՈՒՖՐԻԵՎ Ե.—Հանդիպումներ Լենինի հետ: *Պրագայի պարտիական կոնֆերանսի հիշողությունները. 40 էջ, տպաքանակ՝ 60 հազար:*

*1912 թվականի Պրագայի համվարյան կոնֆերանսը մեր պարտիայի պատմության մեջ նշանակալի դեր ունի: Գրքույկում այդ կոնֆերանսի, Վ. Ի. Լենինի հետ ունեցած հանդիպումների մասին է պատմում հին բոլշևիկ, կոնֆերանսի մասնակից Ե. Պ. Օնուֆրիևը:*

ԷՅՆՇՏԵՅՆ Լ. Յ.—Հետքեր գետնի վրա: *Պատմվածքներ պարտիայի գործերի ու մարդկանց մասին» սերիայից: 80 էջ, տպաքանակ՝ 100 հազար:*

*Կոմունիստ, տաղանդավոր ղեկավար, մեր արդյունաբերության ակտիվ կառուցող, ՍՍՌՄ Կենտգործկոմի և Ուկրաինայի Կենտկոմի անդամ, շինարարության պետ, Խարկովի տրակտորի գործարանի առաջին դիրեկտոր Պանտելեյմոն Իվանովիչ Սվիստունի կյանքն է պատմում այս գրքույկը, որը գրված է արխիվային փաստաթղթերի և Սվիստունի բոլշևիկյան ընդհատակի ընկերների, բարեկամների և հարազատների հիշողությունների հիման վրա: Այնտեղ մեծ տեղ է տրված Գ. Կ. Օրջոնիկիձեի, Գ. Ի. Պետրովսկու, Ս. Վ. Կոսիորի, Ի. Ն. Դուբովի և պարտիայի ու կառավարության այլ նշանավոր գործիչների, որոնց հետ նա աշխատել է, շփվել, բարեկամություն արել:*

ՊՈԼՅԱՆՍԿԻ Մ.— Պատմվածք պատանի ենտախույզի մասին: *112 էջ, տպաքանակ 100 հազար: Գիրքը կոմերիտական Տատյանա Բաուերի մասին է:*

ՏՈԴՈՐՍԿԻ Ա. Ի. Մարշալ Տուխաչևսկի: *90 էջ, տպաքանակ՝ 100 հազար:*

Մեր ժողովրդական պառլամենտը: *Տեղեկագիրք, 184 էջ, տպաքանակ՝ 200 հազար:*

*ՍՍՌՄ Գերագույն սովետի տեղեկագիրքը լույս է տեսնում առաջին անգամ: Այստեղ մանրամասն լուսաբանվում է ՍՍՌՄ Գերագույն սովետի, նրա Նախագահության, հանձնաժողովի բազմակողմանի ողջ գործունեությունը:*

*Գիրքը բովանդակում է ՍՍՌՄ Գերագույն սովետի, ինչպես և սովետական ընտրական կարգի դեմոկրատական սկզբունքները:*

*Այն հատկապես կօգնի ագիտատորներին, պրոպագանդիստներին, դասախոսներին:*

ԳԻՆԸ 25 Կ.



# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

### ԱՐՏԱՍՈՎՈՐ ԲՆԱԿԵԼԻ ՏՈՒՆ

*Բուդապեշտում կառուցված է 10 հարկանի 50 բնակարանոց էքսպերիմենտալ բնակելի շենք։ Այդ տան բնակարաններում սենյակները դասավորված են խոհանոցի և վաննայի շուրջը։ Շարժական միջնապատերի միջոցով ապահովվում է բնակարանների ազատ նախագծումը։*

### ԷԼԵԿՏՐԱՔԱՐՇ ՊԼԱՍՏՄԱՍՍԱՅԻՑ

*Չեխոսլովակիայի Պլզեն քաղաքում վերջերս կառուցել են առաջին էլեկտրաքարշը, որի կորպուսը պատրաստված է ապակյա թելից հյուսված պլաստմասսայից։ Մեքենավարի խցիկի ներքին սարքավորումը նույնպես պլաստմասսայից է։ Էլեկտրաքարշը պիտանի է ինչպես մարդատար, այնպես էլ բեռնատար գնացքների համար։ Նրա առավելագույն արագությունը ժամում 200 կիլոմետր է։*

### ԿՈՒՅՐԵՐԸ ՏԵՍՆՈՒՄ ԵՆ ՁԱՅՆՈՎ

*Ամերիկայի 16-ամյա դպրոցական Ռալֆ Խոչկիսը պատրաստել է հատուկ ակնոց կույրերի համար։ Ակնոցի ապակիները լույսն ուղղում են երկու ֆոտոէլեմենտի վրա, որոնք լուսային պատկերը փոխակերպում են ձայնային ազդանշանի։ Ականջների մոտ տեղադրված ոչ մեծ բարձրախոսները ընդունում են ազդանշանները։ Որոշ հմտություն ձեռք բերելով այդ ազդանշանները կարելի է վերծանել որպես տեսողական պատկեր։*

### ՆԱՎԹԸ ԵՎ ԼԻՄՈՆԸ

*Լիմոնը և այլ ցիտրուսազգիներ նույնիսկ կարճատև ցրտահարությունից խիստ տուժում են։ Երբեմն ստիպված են լինում տաքացնել օդը և դրա համար ստեղծելով ջեռուցման մի ամբողջ սիստեմ։*

*Վերջերս գիտնականներն առաջարկել են այդ պրոբլեմի լուծման բավական պարզ եղանակ, որը բացառում է հատուկ ջեռուցիչների, բալոնների անհրաժեշտությունը։ Նավթային կոքսից պատրաստում են ոչ մեծ բրիկետներ, որոնք վառվում են առանց բոցի ու ծխի։ Դրանք դասավորում են պլանտացիաներում և անհրաժեշտության դեպքում՝ վառում։ Ամեն մի բրիկետ վառվում է չորս ժամ։*

### ՈՍԿՈՐՆԵՐԻ ՓՈԽԱՐԵՆ՝ ԿԵՐԱՄԻԿԱ

*Ամերիկյան երկու ֆիրմաներ վերջերս մշակել են կերամիկ նյութ՝ ցերոզիում, որը պարունակում է զգալի քանակությամբ ալյումինի օքսիդ։ Ցերոզիումը բավական պլաստիկ է, շրջապատող միջավայրի ազդեցության տակ չի փոխվում և, որ շատ կարևոր է, հեշտությամբ նրան են միանում կենդանի հյուսվածքները։ Հաջողությամբ են պսակվել կենդանիների վրա կատարված փորձերը (մասնավորապես կովի ոսկորները պրոտեզելու ժամանակ)։*

### ՕՁԸ ՔԱՂՑԿԵՂԻ ԴԵՄ

*Հնդկական և անգլիական գիտնականները քաղցկեղային հիվանդությունները բուժելու համար կիրառել են կոբրայի թույնը։ Ենթադրում են, որ նրա պարունակած նյութերը, տոքսիկ ֆրակցիայի անջատումից հետո, երբեմն կարող են ոչնչացնել չարորակ ուռուցքների բջիջները։*

### ՊԼԱՍՏՄԱՍՍԱՆԵՐԻ ՎՐԱ ՏՊԱԳՐԵԼՈՒ ԷԼԵԿՏՐԱՍՏԱՏԻԿ ԵՂԱՆԱԿ

*Ճապոնական «Դայ Նիպոն Ինկ Էնկ Կեմիկլզ» ֆիրման մշակել է պլաստմասսաների վրա տպագրելու նոր եղանակ։ Տրաֆարետների միջով մատուցվում է բացասականորեն լիցքավորված գունավոր փոշի։ Փոշին ձգվում է դեպի գործվածքը, որի վրա կատարվում է տպագրությունը՝ շնորհիվ գործվածքի տակ դրված, դրականորեն լիցքավորված պլաստինի։ Հետևապես, այդ եղանակով հարմար է տպագրել անհարթ մակերեսների վրա։*